

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**7**

ՀՈՒԼԻՍ, 1983
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

**ИЗДАЕТСЯ С 1922 г.**
**Выходит один раз в месяц на армянском языке**

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении**

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումի մասին* . 3

*ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՈՐՈՇՈՒՄԸ ընկեր ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻՆ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընտրելու մասին* . . . . . . . . . . . . 4

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար ընկեր ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻ ճառը ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում 1983 թվականի հունիսի 15-ին* . . . . . . . . . . . . 6

*ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ, ՄԱՍՍԱՅԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀՐԱՏԱՊ ՀԱՐՑԵՐԸ։ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկեր Կ. ՈՒ. ՉԵՌՆԵՆԿՈՅԻ զեկուցումը ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում* . . . . . . 20

*ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ։ Կուսակցության գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի հրատապ հարցերը* 46

*ՀԱՄԱՏԵՂ ՀԱՅՏԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ* . . . . . . . . . 55

### ՌՍԴԲԿ II ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

*Ա. Մ. ԲԱՂՄԱՆՅԱՆ— Սովետական ժողովրդի ավանգարդը* . . . 61

### ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹՅԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

*ՅԱՆ ԿՎԱՍՆԻՉԿԱ— Չեխոսլովակիայի կոմունիստների պայքարը բուրժուական գաղափարախոսության դեմ* . . . . . . . 70

### ՊՐՈԲԼԵՄՆԵՐ ԵՎ ՄՏՈՐՈՒՄՆԵՐ

*Սոֆյա ՊԵՏՐՈՍՅԱՆ— Ռացիոնալ օգտագործել Սևանի ավազանի հողային ռեսուրսները* . . . . . . . . . . 78

### ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

*Նատալյա ԳՈՆՉԱՐ-ԽԱՆՋՅԱՆ— Սովետական գրականության հսկան* . . 84

### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

*Ջ. Ս. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ— Ընդդեմ իմպերիալիստական դավերի* . . . 92
*Վ. Ա. ՊԵՏՐՈՍՅԱՆ— Աշխատություն պահանջմունքների վերաբերյալ* . 94

ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ


ИНФОРМАЦИОННОЕ СООБЩЕНИЕ о Пленуме Центрального Комитета Коммунистической партии Советского Союза . . . 3

ПОСТАНОВЛЕНИЕ ВЕРХОВНОГО СОВЕТА СССР об избрании товарища АНДРОПОВА Ю. В. Председателем Президиума Верховного Совета СССР . . . . . . . 4

Речь Генерального секретаря Центрального Комитета КПСС товарища Ю. В. АНДРОПОВА на Пленуме ЦК КПСС 15 июня 1983 года . . . . . . . . . . . . . 6

АКТУАЛЬНЫЕ ВОПРОСЫ ИДЕОЛОГИЧЕСКОЙ, МАССОВО-ПОЛИТИЧЕСКОЙ РАБОТЫ ПАРТИИ. Доклад члена Политбюро ЦК КПСС, секретаря ЦК КПСС товарища К. У. ЧЕРНЕНКО на Пленуме ЦК КПСС . . . . . . 20

ПОСТАНОВЛЕНИЕ ПЛЕНУМА ЦК КПСС. Актуальные вопросы идеологической, массово-политической работы партии 46

СОВМЕСТНОЕ ЗАЯВЛЕНИЕ . . . . . . . . . . . . 55

**К 80-ЛЕТИЮ II СЪЕЗДА РСДРП**

А. М. БАГМАНЯН — Авангард советского народа . . . . 61

**В СТРАНАХ СОЦИАЛИСТИЧЕСКОГО СОДРУЖЕСТВА**

ЯН КВАСНИЧКА — Борьба коммунистов Чехословакии против буржуазной идеологии . . . . . . . . . . . 70

**ПРОБЛЕМЫ И СУЖДЕНИЯ**

Софья ПЕТРОСЯН — Рационально использовать земельные ресурсы Севанского бассейна . . . . . . . . . . 78

**ЗНАМЕНАТЕЛЬНЫЕ ДАТЫ**

Наталья ГОНЧАР-ХАНДЖЯН — Гигант советской литературы 84

**КРИТИКА И БИБЛИОГРАФИЯ**

Дж. С. КИРАКОСЯН — Против империалистических происков 92

В. А. ПЕТРОСЯН — Труд о потребностях . . . . . . . 94






# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1983 թվականի հունիսի 14-ին իր աշխատանքն սկսեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը։

Նիստը բացեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովը։

«Կուսակցության գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի հրատապ հարցերը» զեկուցումով պլենումում հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Կ. Ու. Չեռնենկոն։

Զեկուցման առթիվ ծավալված մտքերի փոխանակության ժամանակ հանդես եկան ՍՄԿԿ Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. Գրիշինը, Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Դ. Ա. Կունաևը, Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. Շչերբիցկին, Վրաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Է. Ա. Շևարդնաձեն, ՍՍՀՄ կուլտուրայի մինիստր ընկ. Պ. Ն. Դեմիչևը, «Լենինգրադի մետաղագործարան» տուրբինաշինության արտադրական միավորման հավաքող փականագործների բրիգադավար ընկ. Վ. Ս. Չիչերովը, ՍՄԿԿ Բաշկիրական մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Մ. Զ. Շաքիրովը, ՍՄԿԿ Նովոսիբիրսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Պ. Ֆիլատովը, ՍՍՀՄ գրողների միության վարչության առաջին քարտուղար ընկ. Գ. Մ. Մարկովը, սովետական բանակի և ռազմածովային նավատորմի գլխավոր քաղաքական վարչության պետ ընկ. Ա. Ա. Եպիշևը, Լատվիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Է. Վոսը։

Հունիսի 15-ին ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում շարունակվում էր ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Կ. Ու. Չեռնենկոյի «Կուսակցության գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի հրատապ հարցերը» զեկուցման քննարկումը։

Կենտկոմի պլենումում մեծ ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովը։

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակության ժամանակ հանդես եկան Ուզբեկստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Շ. Ռ. Ռաշիդովը, Էստոնիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Գ. Վայնոն, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ ընկ. Պ. Ն. Ֆեդոսեևը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, ՍՍՀՄ հեռուստատեսության և ռադիոհաղորդումների պետական կոմիտեի նախագահ ընկ. Ս. Գ. Լապինը, ՍՍՀՄ լուսավորության մինիստր ընկ. Մ. Ա. Պրոկոֆևը, ՍՍՀՄ կինեմատոգրաֆիստների միության վարչության առաջին քարտուղար ընկ. Լ. Ա. Կուլիջանովը,

ՀԱՄԿԽ-ի նախագահ ընկ. Ս. Ա. Ծալաևը, ՀամԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Մ. Միշինը:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը քննարկված հարցի առթիվ միաձայն ընդունեց որոշում, որը հրապարակվում է մամուլում:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը քննարկեց կազմակերպական հարցեր:

Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ ընկ. Գ. Վ. Ռոմանովին ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար:

Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու ընկ. Մ. Ս. Սոլոմենցևին հաստատեց ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեի նախագահ:

Կենտկոմի պլենումը ընկ. Վ. Ի. Վորոտնիկովին ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու:

Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածուից անդամ փոխադրեց ՍՍՀՄ զինված ուժերի գլխավոր շտաբի պետի առաջին տեղակալ ընկ. Ս. Ֆ. Ախրոմեևին, հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերության մինիստր ընկ. Բ. Վ. Բալմոնտին, ԳԴՀ-ում ՍՍՀՄ-ի արտակարգ ու լիազոր դեսպան ընկ. Վ. Ի. Կոչեմասովին, Օրենբուրգի մարզի «Ռասսվետ» կոլտնտեսության կոմբայնավար ընկ. Վ. Մ. Չերդինցևին, ՍՍՀՄ պաշտպանության մինիստրի տեղակալ ընկ. Վ. Մ. Ծաբանովին:

Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի կազմից հանեց Ն. Ա. Շչոլոկովին և Ս. Ֆ. Մեդունովին՝ աշխատանքում թույլ տված սխալների համար:

Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը ավարտեց աշխատանքը:

## ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ

## ՈՐՈՇՈՒՄԸ

### ԸՆԿԵՐ ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻՆ ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ ԸՆՏՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

**Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն սովետը ՈՐՈՇՈՒՄ Է.**

**Ընկեր Յուրի Վլադիմիրովիչ ԱՆԴՐՈՊՈՎԻՆ ընտրել ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ:**

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահի առաջին տեղակալ՝ Վ. ԿՈՒԶՆԵՑՈՎ

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության քարտուղար՝ Թ. ՄԵՆԹԵՇԱՇՎԻԼԻ

Մոսկվա, Կրեմլ, 16 հունիսի 1983 թ.



**ՅՈՒՐԻ ՎԼԱԴԻՄԻՐՈՎԻՉ ԱՆԴՐՈՊՈՎ**
**ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ**

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿԵՐ ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻ ՃԱՌԸ

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ 1983 ԹՎԱԿԱՆԻ ՀՈՒՆԻՍԻ 15-ԻՆ

Ընկերնե՛ր։

Մեր պլենումը քննարկում է կուսակցության գործունեության արմատական հարցերից մեկը, կոմունիստական շինարարության կարևորագույն բաղկացուցիչ մասերից մեկը։ Ինչի՞ն են հանգում կուսակցության գլխավոր խնդիրները արդի պայմաններում կատարվող գաղափարախոսական աշխատանքում։

**Առաջին:** Անհրաժեշտ է մեր գաղափարախոսական, դաստիարակչական, պրոպագանդիստական ողջ աշխատանքը վճռականորեն բարձրացնել այն մեծ ու բարդ խնդիրների մակարդակին, որ կուսակցությունը լուծում է զարգացած սոցիալիզմի կատարելագործման պրոցեսում։ Բոլոր աստիճանների կուսակցական կոմիտեները, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն, պետք է հասկանան, որ բոլոր այլ հարցերի ողջ կարևորությամբ հանդերձ, որոնցով նրանց հարկ է լինում զբաղվել (տնտեսական, կազմակերպական և այլ), գաղափարախոսական աշխատանքը է՛լ ավելի է մղվում առաջին պլան։

Մենք պարզորոշ տեսնում ենք, թե ինչպիսի լուրջ վնաս են հասցնում այդ աշխատանքում տեղ գտած թերությունները, մարդկանց գիտակցության ոչ բավարար հասունությունը, երբ այն ի հայտ է գալիս։ Եվ, ընդհակառակն, մենք արդեն այսօր լավ զգում ենք, թե որքան են արագանում առաջընթացի տեմպերը, երբ գաղափարախոսական աշխատանքը դառնում է ավելի արդյունավետ, երբ մասսաներն ավելի լավ են հասկանում կուսակցության քաղաքականությունը, այն ընկալելով որպես իրենց սեփական, ժողովրդի կենսական շահերին համապատասխանող քաղաքականություն։

**Երկրորդ:** Մեր տրամադրության տակ է լուսավորության ու դաստիարակության միջոցների մեծահարուստ զինանոցը։ Այդ և՛ մամուլն է, և՛ ռադիոն, և՛ հեռուստատեսությունը, և՛ բանավոր պրոպագանդան և թե տարբեր տեսակի ուսումնական հաստատությունների հսկայական ցանցը։ Այս ամենի մասին քիչ բան չասվեց թե՛ ընկ. Կ. Ու. Չեռնենկոյի զեկուցման մեջ և թե մտքերի փոխանակության ժամանակ։ Այժմ հարկավոր է ավելի ճիշտ օգտագործել այդ բոլոր միջոցները, դրանք գործադրել ավելի ակտիվորեն, ստեղծագործաբար, մասնավորապես հաշվի առնելով սովետական մարդկանց կրթվածության ու պահանջմունքների զգալիորեն բարձրացած մակարդակը։

Այստեղ մենք դեռ շատ բան ունենք սովորելու, և այդ ճանապարհին մեր գլխավոր հակառակորդներն են ձևամոլությունը, շաբլոնը, երկչոտությունը, իսկ երբեմն էլ՝ մտքի ծուլությունը։ Մենք նաև պետք է ելնենք այն բանից, որ կոմունիստների և մեր սոցիալիստական հասարակության բոլոր քաղաքացիների գիտակցության կազմավորումը միայն պրոֆեսիոնալների՝ գաղափարախոսների, պրոպագանդիստների, մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատողների գործը չէ։ Դա ողջ կուսակցության գործն է։

**Երրորդ:** Կադրերի հարցը։ Բոլոր կուսակցական կոմիտեները՝ հանրապետություններում, երկրամասերում, մարզերում, քաղաքներում ու շրջաններում, պետք է ունենան հատկապես պատրաստված այնպիսի կադրեր,



որոնք ունակ լինեն հմտորեն կազմակերպելու գաղափարախոսական աշխատանքը բնակչության տարբեր խմբերի՝ բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության, երիտասարդության հետ և պատասխանատու լինեն այդ աշխատանքի համար։ Նրանք պետք է լինեն հեղինակավոր, կրթված մարդիկ։ Հարկավոր է նրանց համար ստեղծել անհրաժեշտ պայմաններ, հոգալ նրանց որակավորումը սիստեմատիկաբար բարձրացնելու մասին, իսկ նրանց գործունեության գնահատման չափանիշը պետք է լինի մեկը՝ մասսաների քաղաքական գիտակցության և աշխատանքային ակտիվության մակարդակը։

**Չորրորդ:** Պետք է ապահովվի հասարակական և ամենից առաջ տնտեսական գիտությունների բնագավառում կատարվող գաղափարատեսական աշխատանքի, մեր գիտական հիմնարկությունների և առանձին վերցրած յուրաքանչյուր գիտնականի աշխատանքի նոր, զգալիորեն ավելի բարձր մակարդակ։ Անհրաժեշտ է վճռական շրջադարձ կատարել դեպի այն ռեալ, պրակտիկ խնդիրները, որ կյանքը դնում է մեր հասարակության առջև։ Հասարակական գիտությունները նույն չափով, ինչ և բնական գիտությունները, պետք է դառնան կուսակցության և ողջ ժողովրդի արդյունավետ օգնականները այդ խնդիրների լուծման գործում։

**Հինգերորդ:** Պետք է մեծ դեր խաղա մեր քաղաքական լուսավորության, մասսայական-քաղաքական ուսուցման ցանցի աշխատանքի ոճի փոփոխությունը։

Ամենից առաջ հարկավոր է վերջ տալ ձևամոլությանը, այս կամ այն ընդհանուր դրույթների մեխանիկական, կյանքից կտրված սերտմանը (կամ բարձրաձայն ընթերցմանը)։ Քաղաքական ուսուցման իմաստն այն է, որ յուրաքանչյուր ոք ավելի խոր ըմբռնի կուսակցության քաղաքականությունը արդի պայմաններում, կարողանա պրակտիկայում կիրառել ստացած գիտելիքները, ավելի պարզորոշ պատկերացնի և գործնականում կատարի իր սեփական պարտքը։

**Վեցերորդ:** Դաստիարակչական ու պրոպագանդիստական ամբողջ աշխատանքում պետք է մշտապես հաշվի առնել մարդկության ապրած պատմական տվյալ ժամանակաշրջանի առանձնահատկությունը։ Իսկ այդ ժամանակաշրջանը նշանավորված է բևեռայնորեն հակադիր երկու աշխարհայացքների, երկու քաղաքական կուրսերի՝ սոցիալիզմի ու իմպերիալիզմի, այնպիսի հակամարտությամբ, որն իր ինտենսիվությամբ ու սրությամբ աննախադեպ է ողջ հետպատերազմյան ժամանակաշրջանում։ Պայքար է ընթանում մոլորակի միլիարդավոր մարդկանց մտքերի ու սրտերի համար։ Եվ մարդկության ապագան մեծ չափով պայմանավորված է այդ գաղափարախոսական պայքարի ելքով։ Այստեղից հասկանալի է, թե ինչպիսի բացառիկ կարևորություն ունի սոցիալիստական հասարակության, նրա առավելությունների, նրա խաղաղասիրական քաղաքականության մասին ճշմարտությունը մատչելի ու համոզիչ ձևով ամբողջ աշխարհի ամենալայն ժողովրդական մասսաներին հասցնել կարողանալը։ Նվազ կարևոր չէ ստահոդ, քայքայիչ իմպերիալիստական պրոպագանդայի հմուտ մերկացումը։ Մեզ հարկավոր է կոնտրպրոպագանդայի լավ մտածված միասնական համակարգ, որը լինի դինամիկ և արդյունավետ։

Մի խոսքով, գաղափարախոսական տեղամասում մենք շատ գործեր ունենք և հարկավոր է դրանց ձեռնամուխ լինել անհապաղ։

Բայց նույնիսկ ամենահրապուրիչ ու հետաքրքրական պրոպագանդան, ամենահմուտ և խելացի դասավանդումը, ամենատաղանդավոր արվեստը նպատակին չեն հասնի, եթե դրանք տոգորված չեն այնպիսի խոր գաղափարներով, որոնք սերտորեն կապված են այսօրվա կյանքի իրողությունների հետ և ցույց են տալիս հետագա առաջընթացի ուղին։ Այս առումով կուսակցության գաղափարախոսական և առհասարակ ողջ աշխատանքում պետք է բացառիկ կարևոր դեր խաղա ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունը, որը պատրաստվում է ՍՄԿԿ XXVI համագումարի որոշմամբ։

Ներկայումս գործող կուսակցական ծրագիրը, ինչպես ասված է համա-

գումարի որոշման մեջ, ամբողջությամբ վերցրած ճիշտ է բնութագրում հա-
մաշխարհային հասարակական զարգացման օրինաչափությունները, կոմու-
նիզմի համար կուսակցության ու սովետական ժողովրդի կողմից մղվող պայ-
քարի նպատակներն ու հիմնական խնդիրները: Ծրագրի սկզբունքային
դրույթները հաստատվել են կյանքում: Ծրագրում գրված շատ բաներ արդեն
կատարված են: Դրա հետ միասին ծրագրի որոշ դրույթներ, և սա հարկա-
վոր է ուղղակի ասել, լիովին չէ, որ դիմացել են ժամանակի ստուգմանը,
քանի որ դրանց մեջ կային իրականությունից կտրվածության, ժամանակից
առաջ վազելու, չարդարացված մանրամասնացման տարրեր: Եվ, իհարկե,
երկու տասնամյակների ընթացքում թե՛ սովետական հասարակության կյան-
քում, սոցիալիզմի մյուս երկրների կյանքում և թե ամբողջ համաշխարհային
զարգացման մեջ երևան են եկել կարևոր շատ փոփոխություններ: Այս ամենը
պահանջում է տեսական խոր իմաստավորում և պետք է հաշվի առնվի ներ-
քին ու արտաքին քաղաքականության բնագավառում կուսակցության երկա-
րաժամկետ ստրատեգիան մշակելիս:

Առկա դրության ռեալիստական վերլուծություն և ապագայի այնպիսի
պարզորոշ ուղենիշներ, որոնք կյանքի փորձը շաղկապում են մեր կոմունիս-
տական կուսակցության վերջնական նպատակների հետ. ահա թե ինչ կցան-
կանայինք տեսնել ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մեջ: Կուսակցության
երկրորդ ծրագրի մշակման կապակցությամբ Վ. Ի. Լենինը ասել է. «Ամենևին
չչափազանցնելով, բոլորովին օբյեկտիվորեն, չհեռանալով փաստերից, մենք
պետք է ծրագրում ասենք այն, ինչ որ կա, և այն, ինչ որ մենք պատրաստ-
վում ենք անել» (**ԵԼԺ**, հ. 36, էջ 68): Այդպես պետք է գործենք նաև մենք,
ընկերնե՛ր:

**Թե՛** էկոնոմիկայի, թե՛ քաղաքականության և թե գաղափարախոսության
մեջ հեռանկարները ճիշտ ըմբռնելու համար նախ և առաջ հարկավոր է
պարզորոշ պատկերացնել հասարակական զարգացման այն փուլի բնույթը,
որում մենք այժմ գտնվում ենք: Կուսակցությունը այն բնութագրել է որպես
զարգացած սոցիալիզմի փուլ: Դա մի հասարակություն է, որտեղ արդեն
լիովին ստեղծված են սոցիալիստական սկզբունքներին համապատասխանող
տնտեսական բազա, սոցիալական կառուցվածք, քաղաքական սիստեմ, որ-
տեղ սոցիալիզմը զարգանում է, ինչպես ընդունված է ասել, իր սեփական,
կոլեկտիվիստական հիմքի վրա:

Բայց այս ամենը, իհարկե, չի նշանակում, թե մեզ մոտ ստեղծված հա-
սարակությունը կարելի է կատարյալ համարել: Նրանում դեռևս կան օբյեկ-
տիվորեն պայմանավորված շատ դժվարություններ, որոնք բնականոն են
զարգացման ներկայիս մակարդակի համար: Քիչ չեն նաև այնպիսի թերու-
թյունները, որոնք առաջացել են սուբյեկտիվ պատճառներով, մարդկանց ոչ
միշտ հմուտ և կազմակերպված աշխատանքի հետևանքով: **Եվ կուսակցու-
թյան ծրագիրը արդի պայմաններում նախ և առաջ պետք է լինի զարգացած
սոցիալիզմի պլանաչափ ու համակողմանի կատարելագործման, հետևաբար
նաև դեպի կոմունիզմ հետագա առաջընթացի ծրագիր:** Ծրագրի տեքստը ըստ
երևույթին պետք է բովանդակի զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանի
հանգամանալից բնութագրումը:

Քաջ հայտնի է, որ յուրաքանչյուր հասարակության դեմքը վերջին հաշ-
վով որոշվում է նրա արտադրաուժերի զարգացման մակարդակով, արտա-
դրահարաբերությունների բնույթով և վիճակով: Մենք մեր հասարակական
զարգացմամբ այժմ հասել ենք մի այնպիսի պատմական բնագծի, երբ՝ ո՛չ
միայն հասունացել, այլև անխուսափելի են դարձել որակական խոր փոփո-
խությունները, արտադրաուժերի մեջ և դրան համապատասխան՝ արտադրա-
հարաբերությունների կատարելագործումը: Սա սոսկ մեր ցանկությունը չէ,
ընկերնե՛ր, սա օբյեկտիվ անհրաժեշտություն է, և մենք, ինչպես ասում են,
չենք կարող այն ոչ շրջանցել, ոչ էլ զանց առնել: Սրա հետ փոխադարձ սերտ
կապով պետք է տեղի ունենան նաև փոփոխություններ մարդկանց գիտակ-
ցության մեջ, հասարակական կյանքի այն բոլոր ձևերում, որոնք ընդունված
է անվանել վերնաշենք:



Տնտեսական ոլորտում հանգուցային խնդիրն է **աշխատանքի արտադրո-
ղականության արմատական բարձրացումը:** Մենք պետք է այս առումով
ձգտենք հասնել բարձրագույն համաշխարհային մակարդակին: Զուր չէ, որ
Լենինը դա համարում էր վերջին հաշվով ամենակարևորը, ամենագլխավորը
նոր հասարակարգի հաղթանակի համար (տե՛ս **ԵԼԺ**, հ. 39, էջ 25): Այժմ,
գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում այս խնդիրը հատուկ
նշանակություն է ձեռք բերել ինչպես մեր ներքին շինարարության համար,
այնպես էլ միջազգային առումով:

Տեսանելի ապագայում ինչպիսի՞ ուղիով կընթանա մեր երկրի արտա-
դրաուժերի զարգացումը:

Մոտակա նպատակը պարզ է. ամենից առաջ հարկավոր է կարգուկա-
նոն հաստատել այն բանում, ինչ մենք ունենք, ապահովել երկրի արտադրա-
նաև և գիտատեխնիկական պոտենցիալի առավել խելացի օգտագործումը,
այդ թվում՝ հաղթահարել այնպիսի ճյուղերի ետ մնալը, ինչպիսին են գյու-
ղատնտեսությունը, տրանսպորտը, սպասարկման ոլորտը: Զեկուցման մեջ
և մտքերի փոխանակության ժամանակ խոսվեց կարգապահության և կարգու-
կանոնի ամրապնդման, կազմակերպվածության ու պատասխանատվության
բարձրացման համար կուսակցության նախաձեռնությամբ երկրում ծավալված
պայքարի մասին: Ուզում եմ շեշտել, ընկերնե՛ր. ողջ տնտեսական մեխա-
նիզմի լավ կարգավորված անխափան աշխատանքի ապահովումը թե՛ այսօր-
վա պահանջմունքն է և թե ապագայի ծրագրային խնդիրը: Դա մեր հասա-
րակարգի կատարելագործման ընդհանուր պրոցեսի բաղկացուցիչ մասն է:

Արտադրաուժերում որակական տեղաշարժ ապահովող գլխավոր ուղին,
իհարկե, անցումն է դեպի ինտենսիվ զարգացում, մեր սոցիալիստական կար-
գերի առավելությունների գործնական միացում գիտատեխնիկական հեղա-
փոխության նվաճումների հետ: Ընդ որում, դրա ամենավերջին փուլի հա-
սումների հետ, որն անշուշտ, տեխնիկական հեղաշրջում է խոստանում ար-
տադրության շատ ոլորտներում: Կարծում եմ, բոլորը կհամաձայնեն, որ կու-
սակցության ու ժողովրդի գործունեության այս ուղղությունը պետք է ըստ
արժանվույն արտացոլվի կուսակցության ծրագրի նոր խմբագրության մեջ:

Այժմ վճռական նշանակություն է ստանում միասնական գիտատեխնի-
կական քաղաքականությունը: Մեզ սպասում է ինչպես այսօրվա, այնպես էլ
վաղվա մեքենաների, մեխանիզմների ու տեխնոլոգիաների ստեղծման հսկա-
յական աշխատանք: Պետք է ավտոմատացվի արտադրությունը, ապահովվի
կոմպյուտերների ու ռոբոտների ամենալայն կիրառումը, այնպիսի ճկուն
տեխնոլոգիայի ներդրումը, որը հնարավորություն ընձեռի արտադրությունը
արագ և արդյունավետորեն վերակառուցելու նոր արտադրանքի պատրաստ-
ման համար: Մեր էներգետիկայի ապագան ամենից առաջ նորագույն ատո-
մային ռեակտորների օգտագործումն է, իսկ հեռանկարում՝ նաև կառավարվող
ջերմամիջուկային սինթեզի պրոբլեմի գործնական լուծումը: Օրակարգում
դրված են նաև այնպիսի խնդիրներ, ինչպիսին են նախապես առաջադրված
հատկություններով նյութերի ստացումը, կենսատեխնոլոգիայի զարգացումը,
արդյունաբերության մեջ անթափոն և էներգախնայողական տեխնոլոգիաների
լայն կիրառումը: Այս ամենը իսկական հեղաշրջում կառաջացնի մեր ժողո-
վրդական տնտեսության մեջ:

Ցավոք, ընկերնե՛ր, մեզ մոտ, ինչպես գիտեք, հենց գիտության ու տեխ-
նիկայի նվաճումները պրակտիկայում ներդնելու գործն է, որ տակավին վատ
վիճակում է: Տնտեսական այն աշխատողը, որը «համարձակվել» է և ձեռնար-
կությունում մտցրել է նոր տեխնոլոգիա, կիրառել է կամ արտադրել նոր սար-
քավորում, հաճախ հայտնվում է տանուլ տվածի վիճակում, իսկ նա, ով երես
է թեքում նորույթներից, ոչինչ չի կորցնում: Մշակել կազմակերպական, տըն-
տեսական և բարոյական միջոցների մի այնպիսի համակարգ, որը տեխնի-
կայի նորացման գործում շահագրգռի թե՛ ղեկավարներին, թե՛ բանվորներին
և թե, իհարկե, գիտնականներին ու կոնստրուկտորներին, անշահավետ դարձ-
նի հին ձևով աշխատելը: Ահա թե որն է խնդիրը: Այժմ դրանով զբաղվում են
պետպլանը, գիտությունների ակադեմիան, գիտության ու տեխնիկայի պե-

տական կոմիտեն: Միայն թե հարկավոր է այդ անել որքան կարելի է արագ, որովհետև ժամանակի կորուստը թանկ է նստում երկրին:

Եվ արտադրության արդյունավետության բարձրացման համար, իհարկե, անհրաժեշտ է խիստ կրճատել ձեռքի աշխատանքի օգտագործումը, ամենից առաջ կոմպլեքսային մեքենայացման միջոցով: Աշխատանքի արտադրողականության բնագավառում դրությունն արմատապես կփոխի ռոբոտների լայն կիրառումը, հատկապես արտադրության այն տեղամասերում, որտեղ այժմ տակավին օգտագործվում են ձեռքի, ֆիզիկական ծանր, քիչ որակավորված միապաղաղ աշխատանքը: Դա հարյուր հազարավոր մարդկանց հնարավորություն կընձեռի աշխատելու այլ, ավելի բարենպաստ պայմաններում, ավելի մեծ բավականություն ստանալու իրենց աշխատանքից: Իսկ դա սկզբունքորեն կարևոր է, ընկերնե՛ր: Դա կմոտեցնի կոմունիստական շինարարության հիմնական խնդիրներից մեկի՝ ֆիզիկական ու մտավոր աշխատանքի միջև եղած էական տարբերությունների հաղթահարման խնդրի լուծումը:

Առհասարակ գլխավոր արտադրաուժը, իհարկե, մարդն է, նրա աշխատանքային գործունեությունը: Այստեղ ևս ի նկատի ունեմ ո՛չ միայն գիտակցական կարգապահությունը, աշխատանքի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքը, այլև մարդկանց աշխատանքի ու դրա վարձատրության հստակ, հմուտ կազմակերպումը:

Այսպիսով, այստեղ մենք մոտենում ենք արտադրահարաբերությունների կատարելագործման հարցին: Դրանց հիմքը արտադրության միջոցների հանրային սեփականությունն է: Մեզ մոտ այդ սեփականությունը, ինչպես հայտնի է, ունի երկու ձև՝ պետական և կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականություն: Հեռանկարը մենք համարում ենք այդ երկու ձևերի միավորումը մեկ, համաժողովրդական սեփականության մեջ: Անշուշտ, ոչ թե կոլտնտեսություններն մեխանիկորեն սովխոզների վերածելու միջոցով: Պրակտիկան ցույց է տալիս, որ կան այլ ուղիներ, օրինակ՝ ագրոարդյունաբերական ինտեգրացումը, միջկոլտնտեսային և կոլտնտեսային-սովխոզային միավորումների զարգացումը: Ծրագիրը պետք է խորությամբ և հստակ լուսաբանի այդ ամբողջ պրոբլեմը:

Մի կարևոր մոմենտ ևս: Մենք չենք կարող մոռանալ, որ ապրում ենք **սոցիալիստական** հասարակության մեջ, որի զարգացումը պետք է կարգավորվի սոցիալիզմի արմատական սկզբունքներով, այդ թվում, իհարկե, **ըստ աշխատանքի բաշխման** սկզբունքով: Մեզ մոտ բոլորն ունեն հավասար իրավունքներ և հավասար պարտականություններ հասարակության հանդեպ: Իսկ նյութական բարիքներից միատեսակ օգտվելու առումով լիակատար հավասարությունը հնարավոր կլինի միայն կոմունիզմի օրոք: Բայց մինչ այդ հարկ կլինի անցնել երկար ճանապարհ: Այստեղ պահանջվում է թե՛ էկոնոմիկայի և թե մարդկանց գիտակցության ավելի բարձր մակարդակ: Իսկ այսօր, եթե հաշվի չառնենք սպառման հանրային ֆոնդերի մի որոշակի մասը, ապա մեզ մոտ յուրաքանչյուր քաղաքացի իրավունք ունի միայն այն նյութական բարիքների նկատմամբ, որ համապատասխանում են նրա հանրօգուտ աշխատանքի քանակին ու որակին: Միայն այդքանի նկատմամբ: Եվ այստեղ կարևոր են խիստ հաշվառումը և այդ սկզբունքի խստիվ պահպանումը:

Արտադրահարաբերությունների կատարելագործումը նաև պահանջում է արմատապես բարելավել պլանավորումն ու կառավարումը: Մեզանում կազմավորված է երկրի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքս, կուտակվել է ըստ ռեգիոնների և ըստ էկոնոմիկայի հանգուցային պրոբլեմների կոմպլեքսային պլանավորման որոշակի փորձ: Դրա վերջին օրինակներն են պարենային ծրագիրը և էներգետիկ ծրագիրը, առաջնահերթ նշանակություն ունեցող խոշորագույն փաստաթուղթը՝ յուրօրինակ ԳՈԷԼՌՈ-ն ժամանակակից պայմաններում: Այդ ծրագրի իրականացումը կպահանջի կուսակցության, պետության և ամբողջ ժողովրդի հսկայական աշխատանքը: Բայց լավ հայտնի են նաև մեր պլանավորման մեջ եղած թերությունները՝ ռեսուրսների չարդարացված փոշեցրումը, պլանների անհավասարակշռվածությունը, ապրան-



քային զանգվածի և բնակչության եկամուտների միջև եղած խզումը: Այս երևույթների վերացումը թե՛ տնտեսական և թե քաղաքական խնդիր է:

Արտադրահարաբերությունների զարգացումն այսօր նոր պահանջներ է ներկայացնում նաև սոցիալիստական մրցության կազմակերպմանը: Դրա հիմնական ձևերից մեկն այժմ մրցությունն է արտադրական պլանների գերակատարման համար, ընդ որում, գլխավորապես ըստ քանակական ցուցանիշների: Շատ դեպքերում դա առաջվա պես արդարացված է, հատկապես արդյունահանող արդյունաբերության մեջ: Սակայն, կարծում ենք, որ արժեր այժմ գլխավոր ուշադրությունը կենտրոնացնել մրցության այնպիսի նպատակների վրա, ինչպիսին են արտադրանքի որակի բարձրացումը, արտադրական կարողությունների, հումքի, էներգիայի, աշխատաժամանակի օգտագործման բարելավումը: Եվ, իհարկե, խելացի խնայողությունը, խնայողություն ամեն ինչում, սկսած մետաղի տոննայից մինչև հացի կիլոգրամը:

Առհասարակ հարկավոր է ասել, որ սոցմրցության, ինչպես և հասարակական մյուս նախաձեռնությունների ու մասսայական շարժումների ձևերը ինչ-որ քարացած, մեկընդմիշտ տրված բաներ չեն, դրանք փոխվում են՝ նայած հասարակության նյութական ու հոգևոր հասունության մակարդակին: Եվ կուսակցության պարտականությունն է ժամանակին նկատել, պաշտպանել և տարածել օգտակար, կենարար բոլոր նախաձեռնությունները:

Ընկերնե՛ր: XXVI համագումարում մենք պարզորոշ հայտարարեցինք, որ անհրաժեշտ է ապահովել տնտեսական ու սոցիալական քաղաքականության սերտ կապը: Եվ դա հասկանալի է. չէ որ տնտեսական ոլորտում մեր ջանքերի վերջնական նպատակն է բարելավել մարդկանց կենսապայմանները:

Մենք պետք է սովորենք մեր տնտեսական պլանները մշակելիս ավելի համակողմանի հաշվի առնել և դրանցում արտացոլել հասարակության զարգացման կարևորագույն գործոնները՝ սոցիալական, ազգային, ժողովրդագրական: Դա պետք է լինի կուսակցության միասնական քաղաքականությունը, հասարակական զարգացման միասնական ստրատեգիան:

Մեզ մոտ հաճախ է օգտագործվում «կենսամակարդակի բարձրացում» արտահայտությունը: Բայց այն երբեմն պարզունակ ձևով են մեկնաբանում, յոկ ի նկատի ունենալով բնակչության եկամուտների աճը և սպառման առարկաների արտադրությունը: Կենսամակարդակ հասկացությունը իրականում անհամեմատ լայն է ու հարուստ: Դա և՛ մարդկանց գիտակցականության ու կուլտուրայի, ներառյալ նաև կենցաղի ու վարքի կուլտուրայի աճն է, և՛ այն, ինչը ես կանվանեի խելամիտ սպառման կուլտուրա: Դա և՛ օրինակելի հասարակական կարգն է, և՛ առողջ, ռացիոնալ սնունդը, և՛ բնակչության սպասարկման բարձր որակը (որը մեզ մոտ, ինչպես հայտնի է, բնավ էլ ամեն ինչում բարվոք չէ): Դա նաև ազատ ժամանակի բարոյագեղագիտական առումով լիարժեք օգտագործումն է: Մի խոսքով՝ այն ամենը, որի հանրագումարն արժանի է կոչվելու սոցիալիստական քաղաքակրթվածություն:

Մեզ մոտ հսկայական տեղաշարժ է կատարվել բնակչության բնակարանային պայմանների բարելավման գործում: Եվ, այնուամենայնիվ, բնակարանային պրոբլեմը շատերի համար մնում է որպես սուր պրոբլեմ: Այդ պրոբլեմը մենք մոտ ապագայում հիմնականում կլուծենք, յուրաքանչյուր ընտանիք կունենա առանձին բնակարան: Բայց պետք է ամեն ինչ անել, որ բնակարանների, ինչպես և մյուս բարիքների, բաշխումը լինի արդարացի, մասնավորապես հաշվի առնվի, թե մարդ ինչպես է աշխատում: Թերևս իմաստ ունի նաև նախատեսել կոոպերատիվ հիմունքների ավելի լայն զարգացում և ձեռնարկությունների միջոցների ներգրավում շինարարության մեջ, ընդ որում, ո՛չ միայն բնակելի տների, այլև, ասենք՝ պանսիոնատների, զառամյալների տների կառուցման մեջ, որտեղ դա կարելի է և հարկավոր է: Դա ո՛չ միայն օգտակար կլինի տնտեսական առումով, այլև կօգնի մարդկանց համակելու կոլեկտիվիզմի, հասարակական գործերի լուծմանը իրենց ուղղակի մասնակցության զգացումով:

Բավական չէ կատարելագործել աշխատանքի համար դրամական վարձատրության համակարգը, հարկավոր է նաև արտադրել պահանջարկ ունե-

գիտակցության ու կուլտուրայի մակարդակով: Շատ կարևոր է հասկանալ ու հիշել այդ: Ոչ թե վերացականորեն հորինել դեմոկրատիայի ծավալման հետագա ուղիներ ու ձևեր, այլ ելնել կյանքից: Սա է մեր ծրագրային հիմնադրույթների ռեալության երաշխիքը:

Հասկանալի է, ընկերնե՛ր, որ ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մեջ համապատասխան տեղ կգրավեն կուսակցության ազգային քաղաքականության հարցերը: Ես արդեն առիթ եմ ունեցել նշելու, որ զարգացած սոցիալիզմի կատարելագործումը պարտադիր կարգով պետք է ներառնի կշռադատված, գիտականորեն հիմնավորված ազգային քաղաքականություն: Դրա հիմքում ընկած են Լենինի՝ մեզ ավանդած սկզբունքները. երկրի բոլոր ազգերի ու ազգությունների լիակատար հավասարություն, նրանց ազատ զարգացում եղբայրական դաշինքի շրջանակներում և նրանց մերձեցման անշեղ գիծ: Այդ քաղաքականության իրագործումը պահանջում է, այսուհետ ևս կպահանջի սովետական բոլոր մարդկանց հետևողականորեն դաստիարակել սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, Սովետական Միության բոլոր ժողովուրդների շահերի ընդհանրության խոր գիտակցման ոգով:

Ընկերնե՛ր: Զարգացած սոցիալիզմի կատարելագործումն անհնար է առանց մարդկանց հոգևոր զարգացման նպատակով տարվող մեծ աշխատանքի:

Ինչպես այստեղ ճիշտ կերպով ասվեց, մարդու կերպավորումն սկսվում է նրա կյանքի առաջին տարիներից: Մեր դպրոցի և մյուս ուսումնական հաստատությունների աշխատանքի մասին քիչ չասվեց պլենումի ընթացքում: Ես կկամենայի շեշտել մի բան. կուսակցությունը ձգտում է հասնել նրան, որ մարդը մեզ մոտ դաստիարակվի ոչ թե որպես պարզապես գիտելիքների որոշակի պաշար կրող, այլ նախ և առաջ որպես սոցիալիստական հասարակության քաղաքացի, կոմունիզմի ակտիվ կառուցող, իրեն հատուկ գաղափարական հիմնադրույթներով, բարոյականությամբ ու շահերով, աշխատանքի ու վարվելակերպի բարձր կուլտուրայով:

Դաստիարակության լավ միջոց է ուսուցումը արտադրական աշխատանքի հետ միահյուսելը: Պետք է հաստատակամորեն այն գիծը վարել, որ դպրոցականին պատվաստվեն օգտակար աշխատանք կատարելու սովորույթ և սեր դրա հանդեպ: Դա կարող է լինել ֆիզիկական կամ մտավոր աշխատանք, բայց անպայման իսկական՝ արտադրողական, հասարակությանը անհրաժեշտ աշխատանք:

Աշխատանքը նպաստում է նաև ֆիզիկական զարգացմանը: Իսկ այս առումով մեզ մոտ ամեն ինչ չէ, որ բարեհաջող է: Ես նկատի ունեմ ո՛չ միայն ֆիզկուլտուրայի դասերը և սպորտով պարապելը, այլև առողջապահության և բուժօգնության բնագավառի գեթ նվազագույն գիտելիքների ձեռքբերումը: Հարկավոր է, որ մարդը պատանեկան հասակից ճանաչի իր օրգանիզմը և կարողանա այն պահպանել ինչպես հարկն է:

Իսկ մարդը որտե՞ղ, եթե ոչ դպրոցում, կարող է ստանալ գեղագիտական դաստիարակության հիմունքներ, ամբողջ կյանքի համար ձեռք բերել գեղեցկի զգացում, արվեստի ստեղծագործությունները հասկանալու և գնահատելու հմտություն, հաղորդակցվել գեղարվեստական ստեղծագործության հետ:

Իհարկե, այս բոլոր խնդիրների լուծումը քիչ ջանք ու ժամանակ չի պահանջի: Հարկ կլինի, ամեն ինչից բացի, բարելավել մանկավարժական կադրերի ընտրությունն ու պատրաստումը, հաշվի առնելով արդի պահանջները:

Մենք այստեղ, նախագահությունում կարծիքներ փոխանակեցինք ահա թե ինչի շուրջը: Ըստ երևույթին, անհրաժեշտ է արդեն լրջորեն մտածել մեր դպրոցի ռեֆորմի մասին, ներառյալ նաև պրոֆեսիոնալ տեխնիկական ուսուցման սիստեմը:

Ընկերնե՛ր: Զարգացած սոցիալիզմը կատարելագործելու կուսակցության ստրատեգիան պետք է խարսխվի մարքս-լենինյան տեսական ամրակուռ հիմքի վրա: Մինչդեռ, եթե խոսենք անկեղծորեն, մենք դեռ մինչև օրս պատշաճ կերպով չենք ուսումնասիրել այն հասարակությունը, որի մեջ ապրում ենք ու աշխատում, լիովին չենք բացահայտել նրան բնորոշ, հատկապես տնտեսական օրինաչափությունները: Այդ պատճառով էլ երբեմն ստիպված ենք գործել այսպես ասած էմպիրիկորեն, փորձերի ու սխալների ամենևին ոչ ռացիոնալ եղանակով:

Գիտությունը, ցավոք, դեռևս պրակտիկային չի հուշել մի շարք կարևոր պրոբլեմների անհրաժեշտ և զարգացած սոցիալիզմի սկզբունքներին ու պայմաններին համապատասխանող լուծումներ: Ի՞նչ նկատի ունեմ ես: Դե, նախ և առաջ արտադրության արդյունավետության, արտադրանքի որակի բարձրացման առավել հուսալի ուղիների ընտրությունը, գիտականորեն հիմնավորված գնագոյացման սկզբունքները: Եվ ո՛չ միայն դա: Կյանքը մշտապես առաջադրում է նորանոր պրոբլեմներ, որոնց հետ կապված է մեր հասարակության առաջընթացը: Առավել ևս, որ այժմ կա նաև մի շարք այլ երկրների սոցիալիստական զարգացման փորձը, որը պահանջում է ուշադիր ուսումնասիրում, գնահատում ու ընդհանրացում: Մի խոսքով, ժամանակակից պայմաններում հասարակական գիտությունների դերին հատուկ ուշադրություն պետք է նվիրել ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մեջ:

Գործող ծրագրում վատ չի ասված մեր սոցիալիստական հասարակության մեջ գրականության և արվեստի նշանակության մասին: Դրա հետ մեկտեղ, այդ հարցին վերաբերող որոշ դրույթներ թերևս կարիք ունեն լրացուցիչ զարգացման:

Կուսակցությունը պաշտպանում է այն ամենը, ինչ հարստացնում է գիտությունը, կուլտուրան, օգնում աշխատավորներին դաստիարակելու զարգացած սոցիալիզմի նորմերի ու սկզբունքների ոգով: Նա հոգածությամբ, հարգալից է վերաբերվում տաղանդներին, արվեստագետի ստեղծագործական պրպտումներին, չմիջամտելով նրա աշխատանքի ձևին ու ոճին: Բայց կուսակցությունը չի կարող անտարբեր լինել արվեստի գաղափարական բովանդակության նկատմամբ: Նա միշտ այնպիսի ուղղություն կտա արվեստի զարգացմանը, որ վերջինս ծառայի ժողովրդի շահերին: Խոսքը, իհարկե, վարչարարության մասին չէ: Գեղարվեստական ստեղծագործության վրա ներգործելու գլխավոր մեթոդը պետք է լինի մարքս-լենինյան քննադատությունը՝ ակտիվ, զգայուն, ուշադիր և դրա հետ մեկտեղ անհաշտ՝ գաղափարապես խորթ և պրոֆեսիոնալ առումով թույլ ստեղծագործությունների նկատմամբ:

Բոլորս տեսնում ենք, թե ժողովրդի կուլտուրական մակարդակի աճի համեմատ ինչպես է ուժեղանում արվեստի ներգործությունը մարդկանց մտքերի վրա: Դրանով իսկ աճում են նաև հասարակական կյանքին նրա ակտիվ միջամտության հնարավորությունները: Ուրեմն նշանակում է, հսկայական չափով մեծանում է արվեստի գործիչների պատասխանատվությունն այն բանի համար, որ նրանց ձեռքին եղած հզոր զենքը ծառայի ժողովրդի գործին, կոմունիզմի գործին:

Ընկերնե՛ր: Վերջին քառորդ դարում համաշխարհային զարգացման փորձը թելադրում է ծրագրի շատ դրույթների լրացուցիչ մշակման անհրաժեշտություն, որոնք վերաբերում են միջազգային պրոբլեմներին:

Էապես փոխվել է ուժերի հարաբերակցությունը համաշխարհային ասպարեզում: Անչափ սրվել է երկու համաշխարհային հասարակական սիստեմների պայքարը: Մինչդեռ այդ սիստեմների պատմական վեճը ռազմական ընդհարման միջոցով լուծելու փորձը կործանարար կլիներ մարդկության համար: Նրանց փոխհարաբերությունների հետագա զարգացման բնույթը, այսինքն, ըստ էության, երկրագնդի վրա խաղաղության պահպանման հարցը մեր կուսակցության արտաքին քաղաքականության առանցքային պրոբլեմն է թե՛ այսօր և թե տեսանելի ապագայում:

Եվ ո՛չ միայն մեր կուսակցության: Աշխարհի վրա կախված միջուկային պատերազմի սպառնալիքն ստիպում է նորովի գնահատել ամբողջ կոմունիստական շարժման գործունեության հիմնական իմաստը: Կոմունիստները միշտ էլ եղել են մարդու կողմից մարդու ճնշման ու շահագործման դեմ պայ-

քարող մարտիկներ, իսկ այսօր նրանք պայքարում են նաև մարդկային քաղաքակրթության պահպանման համար, մարդու ապրելու իրավունքի համար: Սա չի կարելի չարտացոլել նաև ծրագրում:

Աշխարհում կայուն խաղաղությունն ապահովելու գործում մեր ժամանակներում հսկայական նշանակություն ունեցող ազդակ են սոցիալիզմի երկրները, նրանց քաղաքականությունը: Այդ երկրների համագործակցության ու համախմբվածության ամրապնդումը, ես կասեի, ՍՄԿԿ-ի և սովետական պետության միջազգային գործունեության ամենաառաջնային ուղղությունն է:

ՍՄԿԿ-ի ծրագրում ասված է սոցիալիստական երկրների միջև առաջացած նոր տիպի հարաբերությունների մասին: Բայց վերջին երկու տասնամյակները հարստացրին մեր պատկերացումները սոցիալիզմի աշխարհի վերաբերյալ, ավելի ակնբախորեն ցույց տվեցին, թե նա ինչքան բազմազան է ու բարդ: Առանձին սոցիալիստական երկրների միջև մեծ տարբերություններ կան էկոնոմիկայի, կուլտուրայի, սոցիալիստական զարգացման խնդիրների լուծման ուղիների և մեթոդների բնագավառում: Դա բնական է, եթե նույնիսկ մեզ ինչ-որ ժամանակ թվացել է, թե այն ավելի միօրինակ կլինի:

Համաշխարհային սոցիալիզմի պատմությունը հաստատում է, որ սոցիալիստական կարգերը բոլոր հնարավորություններն ստեղծում են հասարակության վստահ առաջընթացի և երկրների ներդաշնակ փոխհարաբերությունների համար: Մենք քիչ օրինակներ չենք տեսնում այն բանի, թե այդ հնարավորություններն ինչպես են իրականացվում սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա, որոնք ներառնում են ինչպես յուրաքանչյուր երկրի սուվերեն իրավունքների պարտադիր հարգելը, այնպես էլ ընկերական փոխադարձ աջակցությունը, փոխօգնությունը: Բայց, ինչպես ցույց է տալիս փորձը, այդ ամենը ինքնըստինքյան ձեռք չի բերվում: Որպեսզի հնարավորությունները կենսագործվեն, անհրաժեշտ է քաղաքական ճիշտ գիծ:

Քաղաքականության մեջ կատարվող սխալների համար հարկ է լինում հատուցել: Երբ թուլանում է կոմկուսի ղեկավար դերը, վտանգ է առաջանում սահելու դեպի զարգացման բուրժուառեֆորմիստական ուղին: Կորչում է ժողովրդի հետ կուսակցության կապը, և ստեղծված վակուումում երևան են գալիս աշխատավորների շահերի արտահայտիչների դերի ինքնակոչ հավակնորդներ: Հակահարված չի տրվում նացիոնալիստական տրամադրություններին, և առաջանում են միջպետական կոնֆլիկտներ, որոնց համար, թվում է, հիմք էլ չկա սոցիալիստական աշխարհում:

Եվ, իհարկե, հատկապես կարևոր է, որ առկա տարբերությունները չխանգարեն համագործակցության զարգացմանը: Այդ բանի ապահովումը կոմունիստների, կառավարող կոմունիստական կուսակցությունների սրբազան պարտականությունն է: Վերջիվերջո, այն, ինչ կարող է մեզ բաժանել, անհամեմատ ավելի քիչ է այն ընդհանուրից, ինչ մենք ունենք որպես նոր հասարակության կառուցողներ:

Մենք հանդես ենք գալիս սոցիալիզմի բոլոր երկրների հետ բարեկամության օգտին: Ինչ վերաբերում է մեր ամենամոտիկ բարեկամներին ու դաշնակիցներին՝ սոցիալիստական ընկերակցության երկրներին, ապա մենք հետնյալ ընդհանուր կարծիքին ենք. կյանքը պահանջում է ոչ թե սոսկ ընդլայնել համագործակցությունը, այլ բարձրացնել դրա որակը, արդյունավետությունը:

Դա նշանակում է, նախ, քաղաքական փոխգործողության հետագա կատարելագործում, որի կարևորագույն միջոցը Վարշավայի պայմանագրի կազմակերպությունն է: Մենք բանն այնպես ենք պատկերացնում, որ այդ ոլորտում մեր համագործակցությունն առավել սերտ կլինի: Այդ համագործակցությունը, իհարկե, այսուհետ ևս կզարգանա՝ հաշվի առնելով առանձին պետությունների դրության առանձնահատկությունները, ինչպես նաև նրանց յուրահատուկ շահերը: Դրա հետ մեկտեղ համատեղ սահմանվող ընդհանուր կուրսը եղբայրական երկրների կարծիքների ու դիրքերի առավել ամուր համաձուլվածք կլինի:



Երկրորդ, մենք ձգտում ենք տնտեսական ինտեգրացման որակապես նոր մակարդակի: Առանց դրա այսօր արդեն անհնար է պատկերացնել սոցիալիստական ընկերակցության երկրների կյանքը: Իսկ հեռանկարային առումով ինտեգրացումը կդառնա է՛լ ավելի խոր, համընդգրկուն և արդյունավետ, հուսալիորեն ապահովելով մասնակից երկրների ազգային էկոնոմիկաների ամրապնդումը: Դրան են նպատակամղված մեր համատեղ ջանքերը:

Վերջապես, հոգևոր կյանքի ոլորտում մենք կանխատեսում ենք եղբայր ժողովուրդների հետագա գաղափարական մերձեցում, միասնության զգացման, պատմական բախտի ընդհանրության ամրապնդում, կուլտուրայի արժույթների փոխանակման ընդլայնում:

Իհարկե, սրանք բոլորը տևական բնույթի պրոցեսներ են: Դրանք տեղի են ունենում արդեն այսօր, բայց է՛լ ավելի մեծ չափով կզգացվեն վաղը, գալիք տասնամյակներում: Եվ մենք համոզված ենք, որ որքան ավելի բարձր և որքան ավելի իրար մոտիկ լինեն սոցիալիզմի երկրների հասարակական զարգացման մակարդակները, այնքան ավելի մեծ կլինի նրանց փոխըմբռնումը, այնքան ավելի օրգանական, հարուստ ու խոր կլինի նրանց համագործակցությունը:

Տարաձայնությունների էության օբյեկտիվ գիտական վերլուծությունը, երբ դրանք այս կամ այն հարցի առթիվ առաջանում են սոցիալիզմի առանձին երկրների միջև, ինչպես նաև համաշխարհային կոմունիստական շարժման մեջ մի քանի եղբայրական կուսակցությունների միջև և մարքս-լենինյան հիմքերի վրա դրանց հաղթահարման ուղիների, կոմունիստների համախմբվածության ամրապնդման ուղիների որոնումը, անկասկած, կուսակցության կարևոր խնդիրներից մեկն է միջազգային առումով: Ծրագիրը չի կարող շրջանցել դա, եթե մենք ուզում ենք մնալ ռեալության հողի վրա:

Արդի աշխարհի արմատական հատկանիշներից մեկը, որը պետք է իր արտահայտությունը գտնի ծրագրի նոր խմբագրության մեջ, Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի գաղութային կամ կիսագաղութային կախումից ազատագրված երկրների հարաճուն դերն է: Այդ երկրներում տեղի ունեցող պրոցեսները բարդ են ու ոչ միակերպ, և կարևոր է դրանք ճիշտ ըմբռնել:

Այդ երկրներից մի քանիսում հաստատվել են կապիտալիստական կարգեր: Բայց նրանց օբյեկտիվ շահերին էլ է հակասում տիրապետության ու թելադրանքի այն ագրեսիվ քաղաքականությունը, որ վարում են իմպերիալիստական տերությունները: Ձգտելով տնտեսական հետամնացության հաղթահարման, այդ երկրները միջազգային իրավահավասար համագործակցության, կայուն խաղաղության կարիք ունեն: Նրանցից շատերը սոցիալիզմի երկրների հետ կապերը համարում են իրենց անկախության ամրապնդման միջոց: Բնական է, որ մենք այսուհետ ևս կվարենք այդ պետությունների հետ փոխշահավետ համագործակցության կուրս՝ նրանց սուվերենությունը լրիվ հարգելով և նրանց գործերին չմիջամտելով հանդերձ:

Նախկին գաղութային աշխարհում մեզ առավել մոտիկ են սոցիալիստական կողմնորոշում ընտրած երկրները: Նրանց հետ մեզ միավորում են ո՛չ միայն արտաքին քաղաքականության բնագավառում հակաիմպերիալիստական, խաղաղասիրական ընդհանուր նպատակները, այլև սոցիալական արդարության և պրոգրեսի ընդհանուր իդեալները:

Իհարկե, մենք տեսնում ենք նաև նրանց վիճակի բարդությունը, նրանց հեղափոխական զարգացման դժվարությունները: Չէ որ մի բան է սոցիալիզմը որպես նպատակ հռչակելը և մի ուրիշ բան՝ այն կառուցելը: Դրա համար հարկավոր է արտադրաուժերի, կուլտուրայի և հասարակական գիտակցության որոշակի մակարդակ: Սոցիալիստական երկրները համերաշխ են այդ առաջադեմ պետությունների հետ, նրանց օգնություն են ցույց տալիս քաղաքականության, կուլտուրայի ոլորտում, նպաստում են նրանց պաշտպանության ամրապնդմանը: Մենք մեր հնարավորությունների չափ օգնում ենք նաև նրանց տնտեսական զարգացմանը: Բայց հիմնականում այդ զարգացումը, ինչպես և այդ երկրների հասարակական առաջընթացը, իհարկե,





կարող է լինել միայն նրանց ժողովուրդների աշխատանքի, նրանց ղեկավարության ճիշտ քաղաքականության արդյունքը:

Ինչ վերաբերում է կապիտալիզմի աշխարհին, ապա մենք այդ հասարակական սիստեմի ընդհանուր ճգնաժամի զգալի խորացման վկաներն ենք: Առավել մեծ չափով են կորցնում իրենց արդյունավետությունը այն մեթոդները, որոնց օգնությամբ կապիտալիզմին հաջողվում էր հետպատերազմյան ժամանակաշրջանում պահպանել իր զարգացման հարաբերական կայունությունը: Առավել պարզ է դառնում. իմպերիալիզմն ընդունակ չէ հաղթահարելու իր խորությամբ ու մասշտաբներով աննախադեպ գիտատեխնիկական հեղափոխության սոցիալական հետևանքները, երբ միլիոնավոր ու միլիոնավոր աշխատավորներ դատապարտվում են գործազրկության, աղքատության:

Իմպերիալիզմը խճճվել է ներքին ու միջպետական հակամարտությունների, ցնցումների, բախումների մեջ: Դա խորապես, բայց տարբեր կերպ է անդրադառնում կապիտալիստական երկրների քաղաքականության վրա:

Մի կողմից, ինչպես արդեն ասվեց, խիստ մեծացել է ԱՄՆ-ի իմպերիալիզմի գլխավորությամբ ծայրահեղ հետադիմական ուժերի ագրեսիվությունը: Փորձեր են արվում՝ ինչ գնով էլ լինի ետ շրջելու զարգացումը: Իհարկե, նման քաղաքականությունը իմպերիալիստներին հաջողություն չի բերում, բայց իր արկածախնդրությամբ այն չափազանց վտանգավոր է մարդկության համար: Ուստի այդ քաղաքականությունը հանդիպում է ժողովուրդների հզոր հակազդեցությանը, որն, անկասկած, կմեծանա:

Սակայն այսօրվա կապիտալիստական աշխարհում կան նաև այլ միտումներ, այլ քաղաքագետներ, որոնք ավելի ռեալիստորեն են հաշվի առնում միջազգային ասպարեզում տիրող դրությունը: Նրանք հասկանում են, որ աշխարհում արդեն տեղի են ունեցել անշրջելի պրոցեսներ, հասկանում են տարբեր հասարակական կարգեր ունեցող պետությունների տևական խաղաղ գոյակցության անհրաժեշտությունն ու փոխշահավետությունը: Մենք մեր կողմից բազմիցս ասել ենք ու կրկնում ենք, որ պատրաստ ենք դրան: Մենք համոզված ենք, որ դա համապատասխանում է աշխարհը բաժանող սոցիալական բարիկադի երկու կողմերում գտնվող ժողովուրդների շահերին:

Չէ՞ որ կան ոչ քիչ խոշոր պրոբլեմներ, որոնք վերաբերում են աշխարհի բոլոր երկրներին, և որոնց նշանակությունը հետզհետե մեծանում է: Օրինակ, մեր մոլորակի վրա բնության պահպանությունը, էներգիայի նոր աղբյուրների տիրապետելը, տիեզերքի, համաշխարհային օվկիանոսի ռեսուրսների յուրացումը:

Կոմունիստները համոզված են, որ ապագան պատկանում է սոցիալիզմին: Այդպիսին է պատմության ընթացքը: Բայց դա ամենևին չի նշանակում, թե մենք մտադրվում ենք զբաղվել «հեղափոխության արտահանությամբ», ուրիշ երկրների գործերին միջամտությամբ: «Հեղափոխության արտահանությունը» ընդհանրապես անհնար է: Սոցիալիզմը աճում է միայն յուրաքանչյուր տվյալ երկրի հասարակական զարգացման օբյեկտիվ պահանջմունքների հողի վրա: Մենք հաստատ հավատում ենք, որ սոցիալիզմը վերջին հաշվով կապացուցի իր առավելությունները հենց կապիտալիզմի հետ խաղաղ մրցության պայմաններում: Եվ մենք ամենևին էլ ռազմական բնագավառում մրցության կողմնակիցներ չենք, մրցություն, որը մեզ պարտադրում է իմպերիալիզմը:

Խաղաղ գոյակցությանը օբյեկտիվորեն նպաստում է սոցիալիզմի և իմպերիալիզմի միջև եղած ռազմաստրատեգիական հավասարակշռությունը: Այդ հավասարակշռության ձեռքբերումը վերջին տասնամյակների կարևորագույն արդյունքներից մեկն է: Դա մեր ժողովրդից և սոցիալիստական ընկերակցության մյուս երկրների ժողովուրդներից քիչ ուժ ու միջոցներ չպահանջեց, և մենք թույլ չենք տա խախտել այն: Մենք այսուհետ ևս անհրաժեշտ ամեն ինչ կանենք մեր երկրի, մեր բարեկամների ու դաշնակիցների անվտանգության ապահովման համար, կբարձրացնենք սովետական զինված ուժերի մարտական հզորությունը՝ իմպերիալիստական հետադեմ ուժերի ագրեսիվ նկրտումների զսպման հզոր գործոնը: Բայց եթե հաջողվեր իջեցնել



երկու կողմերի սպառազինությունների ու ռազմական ծախսերի մակարդակը, ձեռնամուխ լինել զինաթափման, ինչի մենք ակտիվորեն ձգտում ենք, ապա դա մեծ բարիք կլիներ բոլոր երկրների և ժողովուրդների համար:

Մեր նպատակը սոսկ պատերազմների կանխումը չէ: Մենք ձգտում ենք միջազգային հարաբերությունների արմատական բարվոքման, այդ հարաբերություններում բոլոր բարի հիմունքների ամրապնդման ու զարգացման: Մենք կձգտենք հասնել պետությունների և ժողովուրդների սուվերեն իրավունքների հարգման, միջազգային իրավունքի սկզբունքների խստիվ կիրառման, որոնք իմպերիալիզմն առավել հաճախ է փորձում մի կողմ նետել, ոտնահարել:

Կարճ ասած, մեր դարաշրջանում հենց սոցիալիզմն է հանդես գալիս որպես միջազգային հարաբերություններում առողջ հիմունքների ամենահետևողական պաշտպան, լարվածության թուլացման և խաղաղության շահերի, յուրաքանչյուր ժողովրդի, ամբողջ մարդկության շահերի պաշտպան: Այս ամենի մասին, ըստ երևույթին, հարկավոր է պարզորոշ ասել ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մեջ:

Ընկերնե՛ր: Երկրի առջև կանգնած վիթխարի խնդիրների լուծումը կպահանջի կուսակցության ղեկավար դերի հետագա բարձրացում: Ուստի կուսակցությունը պետք է մշտապես կատարելագործի իր սեփական աշխատանքի ձևերն ու մեթոդները: Այդ առթիվ ՍՄԿԿ ծրագրում կան մի շարք դրույթներ, որոնք դեռ կենսագործման կարիք ունեն: Ծագում են նաև նոր հարցեր:

Օրինակ, շատ կարևոր է իրականում ապահովել կուսակցության և պետության մարմինների ֆունկցիաների ճիշտ բաշխումը: Բազմիցս ասվել է, որ կուսակցական մարմինները չպիտի կրկնորդեն պետական մարմիններին, բայց միշտ չէ, որ հաջողվում է դրանից խուսափել: Հետևանքը լինում է այն, որ դա հաճախ հանգեցնում է պետական մարմինների ղեկավարների պատասխանատվության նվազեցման, այդ պատասխանատվությունը կուսակցական մարմինների վրա դնելու ձգտման, իսկ վերջիններիս մոտ ակամա առաջացնում է գործի նկատմամբ գերատեսչական մոտեցման տարրեր:

Կուսակցության մեծ ռեզերվ են ներկուսակցական դեմոկրատիայի հետագա զարգացումը, կոմունիստների ստեղծագործական ակտիվության, նախաձեռնության և պատասխանատվության բարձրացումը: Կոմունիստները որքան ավելի համարձակ ու կոնկրետ հանդես գան՝ քննարկելով կուսակցության ու երկրի կյանքի կենսական հարցերը, այնքան ակտիվորեն կմասնակցեն ընդունված որոշումների կատարմանը, այնքան մեր կուսակցությունն ավելի հաջող կարող է կատարել իր պատմական առաքելությունը:

Կուսակցական ծրագրի նոր խմբագրությունը կոչված է մեզ բոլորիս օգնելու ուժերը կենտրոնացնելու կուսակցության ու ժողովրդի առջև ծառացած հանգուցային խնդիրների լուծման վրա: Եթե մենք լավ լուծենք այդ խնդիրները, ապա դա մի նոր հսկայական քայլ կլինի երկրի զարգացման, ժողովրդի կյանքի բարելավման ասպարեզում: Եվ այն ժամանակ մեր սոցիալիստական կարգերը ամբողջ աշխարհին ավելի համոզիչ կցուցադրեն իրենց առավելությունները, իրենց ձգողական ուժը:

Կարևոր է ո՛չ միայն նախատեսել ապագայի պարզորոշ, կշռադատված կողմնորոշիչներ, այլև դրանք դարձնել միլիոնավոր կոմունիստների և անկուսակցականների սեփականությունը, որպեսզի նրանք ակտիվորեն ներգրավվեն առաջիկա աշխատանքում: Սա է հենց գաղափարախոսական ճակատի մարտիկների գլխավոր խնդիրներից մեկը: Գաղափարախոսական, դաստիարակչական աշխատանքը նախ և առաջ մասսաների հետ կուսակցության կապի հարցն է: Սա է դրա նշանակությունը: Եվ ներկա պլենումը, վստահ եմ, կուսակցությանն զգալի օգնություն ցույց կտա նրա բոլոր գործերում:

**(Ճառը լսվեց մեծ ուշադրությամբ և բազմիցս ընդհատվում էր երկարատև ծափահարություններով):**

---

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՄԱՍՍԱՅԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀՐԱՏԱՊ ՀԱՐՑԵՐԸ

## ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկեր Կ. ՈՒ. ՉԵՌՆԵՆԿՈՅԻ զեկուցումը ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում

*Ընկերնե՛ր:*

*Հասարակության հեղափոխական վերափոխումն անհնար է առանց իր՝ մարդու փոխվելու: Եվ մեր կուսակցությունը ելնում է այն բանից, որ նոր մարդու ձևավորումը կոմունիստական շինարարության ո՛չ միայն կարևորագույն նպատակն է, այլև անհրաժեշտ պայմանը:*

*Մեծ Հոկտեմբերը խորտակեց սոցիալական ու հոգևոր շղթաները, որոնք հարյուրամյակներ շարունակ խեղդում էին աշխատավոր մարդկանց ստեղծագործական ուժերը: Հեղափոխությունը բանվոր դասակարգին կանգնեցրեց ժամանակակից կյանքի կենտրոնում, ազատություն տվեց աշխատավոր ժողովրդի ստեղծարար վիթխարի եռանդին: Հենց այստեղից են իրենց սկիզբն առնում սովետական բնավորության լավագույն հատկանիշները:*

*Հեղափոխական պայքարի և հեղափոխական ստեղծարար աշխատանքի ընթացքում առնականանում, կոփվում և աճում էր սովետական մարդը՝ բոցաշունչ հայրենասերն ու ինտերնացիոնալիստը՝ համոզված կոմունիզմի իդեալների ճշմարտացիությանը: Նրան բնորոշ են քաղաքացիական ակտիվ դիրքորոշումը, կենսական շահագրգռվածությունը պետական ու հասարակական բոլոր գործերում, նախաձեռնողական, ստեղծագործական վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ: Մի խոսքով, ընկերնե՛ր, մենք բոլոր հիմքերն ունենք ասելու, որ նոր մարդը ոչ թե միայն հեռավոր իդեալ է, այլև մեր օրերի իրողությունը:*

*Դրանում մենք տեսնում ենք սոցիալ-տնտեսական և քաղաքական այն խորագույն վերափոխումների արդյունքը, որ իրականացվել են լենինյան կուսակցության ղեկավարությամբ, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման նկատմամբ, աշխատավորների գիտակցականության, բարեկեցության ու կուլտուրայի աճի նկատմամբ նրա մշտական հոգատարության արդյունքը:*

*Դրանում մենք տեսնում ենք մասսաների շրջանում կուսակցության մշտապես աճող ազդեցության, բանվոր դասակարգի, գյուղացիության, մտավորականության հետ նրա ամրապնդվող կապերի, կուսակցության ու ժողովրդի անխախտ միասնության վառ վկայությունը:*

*Համաժողովրդական պաշտպանության արժանացան ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1982 թվականի նոյեմբերյան պլենումի որոշումները, որոնք*



*շարունակեցին կուսակցության XXVI համագումարի գիծը, հաստատելով կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության հաջորդայնությունը: Սովետական Միության աշխատավորները ջերմորեն հավանություն են տալիս ՍՄԿԿ Կենտկոմի, նրա քաղբյուրոյի գործունեությանը՝ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովի գլխավորությամբ: Այն նպատակամղված է պետական ու տնտեսական ողջ մեխանիզմի աշխատանքի հետևողական բարելավմանը, կադրերի պատասխանատվության, կազմակերպվածության ու կարգապահության բարձրացմանը, մեր հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա աճին, սովետական ժողովրդի բարեկեցության վերելքին:*

*Կուսակցությունը ունի գաղափարական ազդեցության միջոցների հզոր, բազմահարուստ զինանոց, մեծաթիվ, լավ պատրաստված կադրեր, պրոպագանդայի ու դաստիարակության բարձր ներգործունության և որակի ապահովման համար անհրաժեշտ ամեն ինչ: Սակայն չի կարելի մոռանալ, որ նոր մարդու ձևավորման պրոցեսը նույնքան անընդհատ ու բարդ է, որքան անընդհատ ու բարդ է կյանքն ինքը:*

*Փոխվում են աշխատանքի ու կենցաղի սոցիալ-տնտեսական պայմանները, հասունացման շրջանն են թևակոխում նորանոր սերունդներ: Եվ դա առաջադրում է բազմաթիվ նոր խնդիրներ, որոնք կուսակցությունը պահում է ուշադրության կենտրոնում: Կենտկոմի 1979 թվականի ապրիլի 26-ի որոշման մեջ, ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերում, կուսակցական մյուս փաստաթղթերում սահմանված են արդի պայմաններում գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի բարելավման գլխավոր ուղղությունները: Մեր պլենումի նպատակն է քննարկել այդ խնդիրների կատարման ընթացքը, խորհրդակցել, թե ինչպես շարունակել գործն այսուհետև:*

*Սոցիալիստական պետությունը, շեշտել է Լենինը, ուժեղ է զանգվածների գիտակցականությամբ: Եվ կուսակցությունն անդուլ հոգում է սովետական մարդկանց գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակությունը կատարելագործելու համար: Նա այդ աշխատանքը մշտապես շաղկապում է կոնկրետ պատմական իրադրության հետ, ներքին ու արտաքին այն պայմանների հետ, որոնցում ընթանում է մեր զարգացումը:*

*Այսօր կուսակցությունն ու ժողովուրդը լուծում են չտեսնված մասշտաբների խնդիրներ: Մենք իրականացնում ենք սոցիալ-տնտեսական խոշորագույն կոմպլեքսային ծրագրեր, այդ թվում՝ պարենային ու էներգետիկ ծրագրերը, ձգտում ենք ինտենսիվացնել արտադրությունը, արագացնել գիտատեխնիկական առաջընթացը, կերպարանափոխում ենք հսկայական ռեգիոններ: Մենք հաստատակամորեն պայքարում ենք այն բանի համար, որ մեր էկոնոմիկայի, գիտության, մշակույթի վիթխարի հնարավորությունները, մեր բնական ռեսուրսներն օգտագործվեն որքան կարելի է առավել լրիվ ու արդյունավետ: Եվ հասկանալի է, որ գաղափարախոսական աշխատանքը պետք է համապատասխանի այդ բոլոր խնդիրներին: Այն բանով, թե մենք ինչպես կկարողանանք մոբիլիզացնել ժողովրդի հոգևոր եռանդը, բարձրացնել նրա աշխատանքային ու սոցիալական ակտիվությունը, մեծապես պայմանավորված են հնգամյա պլանի կատարումը, մեր առաջընթացի տեմպերը և իհարկե՝ երկրի պաշտպանունակության ամրապնդումը:*

*Դուք լավ եք հասկանում, ընկերնե՛ր, որ արդի պայմաններում պրոպագանդիստական ու դաստիարակչական աշխատանքի բնույթի վրա նկատելի ազդեցություն է գործում միջազգային իրադրությունը:*

*Վերջին ժամանակներս այն լրջորեն սրվել է: Ամերիկայի Միացյալ Նահանգները և ՆԱՏՕ-ի՝ նրանց դաշնակիցներն ընթանում են ծայրահեղորեն վտանգավոր կուրսով: Դրա դասակարգային իմաստն ակնբախ է. փորձել դանդաղեցնել մարդկության կյանքում կատարվող պրոգրեսիվ փոփոխությունները, վերադարձնել կորցրած դիրքերը: 60—70-ական թվականներին մի շարք խոշոր պարտություններ կրելով համաշխարհային ասպարեզում, իմպերիալիզմը, ամենից առաջ ամերիկյանը, ավելի ու ավելի զանգվածային, իր ծավալով աննախադեպ գրոհներ է ձեռնարկում մեր հասարակարգի, մարքս-լենինյան*

գաղափարախոսության դեմ, ձգտում է թունավորել սովետական մարդկանց գիտակցությունը, խեղաթյուրել մեր արտաքին քաղաքականության նպատակները, շրջափակել ռեալ սոցիալիզմի՝ խաղաղության և ժողովուրդների ազատության գործի գլխավոր հենարանի, ազդեցության աճին: Տեղի է ունենում գաղափարախոսությունների լարված, հիրավի գլոբալ պայքար:

Այս ամենը պահանջում է նորացնել, հարստացնել, այժմեականացնել գաղափարադաստիարակչական աշխատանքի բովանդակությունը, դրա ձևերն ու մեթոդները, ուժեղացնել մեր ողջ պրոպագանդայի հարձակողականությունը:

Անհրաժեշտ է վճռականորեն հաղթահարել այնպիսի երևույթներ, ինչպիսին են կյանքի սուր պրոբլեմներից խուսափելը, ձևամոլությունն ու պարապայնությունը: Ռեալիզմ, ճշմարտացիություն ու գործարարություն, մեր նվաճումների հմուտ ցուցադրում և մարդկանց հուզող հարցերի խորազնին վերլուծություն, մտքի թարմություն և շարադրանքի պարզություն. ահա թե գաղափարախոսական աշխատողներին դեպի ինչն է կողմնորոշում Կենտրոնական կոմիտեն:

Ամբողջ գաղափարախոսական գործունեությունը պետք է նպաստի ամենուրեք աշխատանքի լենինյան ոճի՝ գործարար, ստեղծագործական, նորարական ոճի հաստատմանը, որը տոգորված է բարձր գաղափարայնությամբ, սոցիալիստական բարոյականության նորմերին, կոլեկտիվիստական կացութաձևին հակասող ամեն տեսակ քարացածության նկատմամբ անհանդուրժողականությամբ:

Մեր պլենումին առանձնահատուկ երանգ է տալիս այն, որ դա տեղի է ունենում այնպիսի տարում, որն իրավամբ անվանվել է գիտական կոմունիզմի, պրոլետարական գաղափարախոսության հիմնադիր Կարլ Մարքսի տարի: Այդ գաղափարախոսության գիտականությունն ու դեմոկրատիզմը, հեղափոխականությունն ու հումանիզմը նրան արմատապես տարբերում են բուրժուական գաղափարախոսությունից, որն արդարացնում և օրհներգում է շահագործողական կարգերն ու իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությունը, քարոզում է նացիոնալիզմ և շովինիզմ:

Ի հակադրություն բուրժուական գաղափարախոսության, կոմունիստական գաղափարախոսությունը միլիոնավոր մարդկանց մտքերն ու սրտերը հրապուրում է իր ճշմարտացիությամբ ու ազնվությամբ, ամբողջականությամբ ու լավատեսությամբ: Դա վեր ընթացող դասակարգի գաղափարախոսությունն է, նոր հասարակության գաղափարախոսությունը, խաղաղության ու ժողովուրդների բարեկամության գաղափարախոսությունը:

## I.

Ընկերնե՛ր: Գաղափարախոսական աշխատանքի արդյունավետությունն անմիջականորեն պայմանավորված է նրանով, թե որքան ճշգրիտ են հաշվի առնվում տվյալ ժամանակաշրջանում երկրի առանձնահատկությունները: Այս հարցն ընդհանրապես պարզ է: Սովետական հասարակությունը թևակոխել է զարգացած սոցիալիզմի պատմականորեն տևական փուլը. նրա համակողմանի կատարելագործումը մեր ստրատեգիական խնդիրն է:

Արդեն այս դրույթներում ակնբախորեն արտահայտված է մեր զարգացման արդի փուլի դիալեկտիկան: Դա հասուն սոցիալիզմի փուլն է: Բայց սա փուլի միայն սկիզբն է: Մի կողմից՝ մեր առջև ծառացած են այսօրվա և վաղվա խոշոր խնդիրները, իսկ մյուս կողմից՝ գոյություն ունեն անցյալից մնացած պրոբլեմներ:

Մեծ հաջողություններ են ձեռք բերված կոմունիզմի առաջին փուլի տնտեսական, սոցիալ-քաղաքական ու մշակութային շատ խնդիրների լուծման գործում: Ակներևորեն ամրապնդվում են կոմունիստական ապագայի ծիլերը: Դրա հետ միասին մեր առաջընթացը դանդաղեցնում են տնտեսական մեխանիզմում եղած թերությունները, մեզ չբավարարող աշխատանքի արտադրողականությունը, հատկապես գյուղատնտեսության ասպարեզում, մարդկանց



մի մասի քաղաքացիական ոչ բավարար հասունությունն ու կարգապահությունը:

Հասկանալի է, որ աշխատավորների հայացքները, տրամադրությունները կազմավորվում են ո՛չ միայն մեր նվաճումների, այլև թերությունների, դժվարությունների ազդեցության ներքո: Այս բանը չի կարելի հաշվի չառնել: Պետք է խստորեն ելնել լենինյան այն ցուցումից, որ կուսակցության կարևորագույն պարտականությունն է «զգաստությամբ հետևել հենց ամբողջ դասակարգի (և ոչ թե միայն նրա կոմունիստական ավանգարդի), հենց ամբողջ աշխատավոր զանգվածի (և ոչ թե միայն նրա առաջավոր մարդկանց) գիտակցականության իրական վիճակին»: Միայն այդ պայմանով կարելի է հաջողություն ակնկալել մասսայական-քաղաքական աշխատանքում, կոմունիստական ստեղծարարության գործում:

Այս ամենը մեզ առաջադրում է մի շարք տեսական ու գործնական խնդիրներ: Վերցնենք տեսական խնդիրները:

Մենք իրավամբ մարքս-լենինյան մտքի վերջին ժամանակների իսկական հասումներ ենք համարում ՍՄԿԿ XXIV—XXVI համագումարների, Կենտկոմի պլենումների նյութերի, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովի ելույթների բովանդակած դրույթներն ու հետևությունները: Զարգացած սոցիալիզմի կոնցեպցիայի, գիտատեխնիկական հեղաշրջման պայմաններում արտադրության արդյունավետության բարձրացման ուղիների մշակումը, կոմունիզմի առաջին փուլի պատմական շրջանակներում հասարակության անդասակարգ կառուցվածքի կազմավորման հարցի դրվածքը, ներկա փուլում ազգային հարցի բովանդակության վերաբերյալ, միջազգային կյանքի կարևորագույն միտումների վերաբերյալ մեր պատկերացումների խորացումը, պատերազմի և խաղաղության վերաբերյալ, սոցիալիստական հայրենիքի պաշտպանության վերաբերյալ լենինյան ուսմունքի զարգացումը՝ այս և մյուս տեսական ընդհանրացումները կուսակցությանը զինում են նոր գաղափարներով, արդիականության հրատապ պրոբլեմների նկատմամբ գիտականորեն հիմնավորված, կշռադատված մոտեցումով:

Անշուշտ, ՍՄԿԿ-ն իր տեսական գործունեության մեջ հենվում է սովետական փիլիսոփաների, տնտեսագետների, պատմաբանների, սոցիոլոգների, իրավաբանների, հոգեբանների լավագույն աշխատությունների վրա: Բայց, այնուամենայնիվ, կուսակցությանը գիտական հիմնարկությունների ցույց տված օգնությունը կարող էր ավելի հիմնավոր լինել:

Բերեմ մի կոնկրետ օրինակ: Մենք շատ բան էինք ակնկալում տակավին 60-ական թվականներին ստեղծված սոցիոլոգիական հետազոտությունների ինստիտուտից և ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի կենտրոնական տնտեսագիտական մաթեմատիկական ինստիտուտից: Բայց մինչև օրս էլ մենք դեռ սպասում ենք սոցիալական երևույթների և տնտեսական հրատապ պրոբլեմների նրանց հանգամանալից, կոնկրետ հետազոտություններին: Այդ ինստիտուտների գործունեության մեջ ակնբախորեն դրսևորվեցին այնպիսի թերություններ, որոնք այս կամ այն չափով հատուկ են նաև որոշ այլ գիտական հիմնարկությունների՝ սեփական «դիսերտացիոն» և խմբային շահերի մեջ ներփակվելը, մանրաթեմայնությունը, դրանցում կուսակցական ազդեցության թուլությունը: Կենտկոմի գիտության և ուսումնական հաստատությունների բաժինը, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի նախագահությունը և հասարակական գիտությունների սեկցիաները, կուսակցական կազմակերպությունները պետք է մեծ ուշադրություն նվիրեն գիտական կոլեկտիվների հետազոտությունների պլանավորման ու կազմակերպման, նրանց աշխատանքի ոճի ու մեթոդների հարցերին:

Հասարակական գիտությունների զարգացման մայրուղում պետք է գտնվի հասուն սոցիալիզմի պրոբլեմատիկան: Խոսքն այն մասին է, որ ելակետ ունենալով արդեն ձեռք բերված ճշմարտությունները, շարժվենք առաջ, ընդլայնելով մեր տեսական հորիզոնը, խորացնելով մեր պատկերացումները երկրի տնտեսական, սոցիալ-քաղաքական ու հոգևոր պրոգրեսի կարևորագույն օրինաչափությունների վերաբերյալ: Խոսքը նաև այն մասին է, որ սովետական

բարեկեցությունը պետք է որոշվեն նախ և առաջ նրանով, թե նա ինչպես է աշխատում։ Այստեղ նշանակություն ունի ո՛չ միայն տնտեսական հանգամանքը։ Պակաս նշանակալի չէ գաղափարաբարոյական կողմը։ Չէ որ աշխատանքում մարդ ստեղծում է ո՛չ միայն նյութական արժեքներ, այլև կռում է իր անձնական ընդունակությունները, կոփում է կամքը, զարգացնում ստեղծագործական ուժերը, իրեն հաստատում որպես քաղաքացի, կոմունիզմի ակտիվ կառուցող։

Աշխատանքի նկատմամբ ազնիվ, գիտակցական վերաբերմունքը սոցիալիստական ապրելակերպի նախահիմքն է։ Բայց դա արդյոք բոլորի՞ն է բնորոշ։ Ցավոք, ոչ։

Աշխատանքի կազմակերպման բարելավում և աշխատանքի կարգապահության ամրապնդում բոլոր օղակներում և բոլոր մակարդակներում՝ սկսած բանվորից ու կոլտնտեսականից մինչև մինիստր, արտադրանքի մատակարարումների պայմանագրային պարտավորությունների խստիվ կատարում, ինչպես պահանջում է Կենտկոմը՝ սա էկոնոմիկայի բարձրացման ռեալ ռեզերվ է։ Դրա օգտագործումը կարող է առանց հատուկ ծախսեր կատարելու նյութական ծանրակշիռ արդյունք տալ և, ինչպես տեսնում ենք, տալիս է։ Աշխատանքային կարգապահության և կարգուկանոնի ամրապնդման նպատակով կուսակցության ձեռնարկած քայլերը ցույց տվեցին, որ համեմատաբար կարճ ժամանակամիջոցում հաջողվեց նկատելի տեղաշարժի հասնել թափթփվածության, աշխատանքային պարտականությունների նկատմամբ մարդկանց մի մասի անպատասխանատու վերաբերմունքի փաստերի հաղթահարման ճանապարհին։ Այդ ջանքերը գոհունակությամբ ընկալեց ժողովուրդը։

Ահա թե ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի հասցեով, օրինակ, ինչ է գրում Սերգո Օրջոնիկիձեի անվան հաստոցաշինական գործարանի բանվոր, սոցիալիստական աշխատանքի հերոս Վլադիմիր Գրիգորևիչ Կոմարովը։ «Ո՛չ մեկեն, ոչ էլ հանկարծ ես նստեցի գրելու այս նամակը։ Դրա համար առիթ ծառայեց Ձեր ջերմ հանդիպումը մեր գործարանի բանվորների հետ։ Ինձ՝ կադրային բանվորիս, պատերազմի վետերանիս, քիչ բան չի վիճակվել տեսնելու իմ կյանքի ընթացքում։ Եվ, ազնիվ խոսք, հոգիս փառավորվում է՝ տեսնելով, թե մենք ինչքան շատ բան ենք արել։ Լավ փոփոխությունները, իրոք, հսկայական են։ Բայց դրանք կարող էին ավելի նշանակալից լինել։

Մեծ մասն աշխատում է ազնվորեն, ինչպես թելադրում է բանվորական խիղճը։ Բայց այնպիսիներն էլ կան, որ աշխատում են ինչպես պատահի, կարող են պարապ-սարապ էլ ման գալ, բայց աշխատավարձի օրը դրամարկղի մոտ առաջինն են կանգնում և դեռ դժգոհում էլ են, թե քիչ են վարձատրվել։

Մարդը կորցրել է խիղճը։ Ուզում է քիչ տալ, բայց շատ պոկել։ Իսկ ո՞ւմից է պոկելու։ Պետությունից, ուրեմն՝ մեզնից։

Աշխատանքի կարգապահության ու կազմակերպման ամրապնդման մեր կուսակցության Կենտկոմի գիծը, պատկերավոր ասած՝ հենց այն հենոցն է, որի վրա մոնտաժվում է ամբողջ հաստոցը. թե՛ աշխատանքի արտադրողականությունը, թե՛ արտադրանքի որակը, իսկ վերջին հաշվով՝ մեր կյանքի ողջ մակարդակը։ Սրտանց կասեմ. կուսակցության գիծը ամբողջովին ու լրիվ համահունչ է մեր խոհերին ու զգացմունքներին։ Դա մեր բանվորական գիծն է»։

Համոզված եմ, ընկերնե՛ր, այս նամակի տակ կստորագրի ամեն մի ազնիվ աշխատավոր։

Կարգապահության ամրապնդումը ոչ թե կարճատև կամպանիա է, այլ ամենօրյա քրտնաջան աշխատանք, և հաջողությունն ապահովվում է այն ժամանակ, երբ այդ աշխատանքի անմիջական մասնակիցներն են դառնում ո՛չ միայն ադմինիստրացիան, այլև բոլոր աշխատավորները, երբ այդ աշխատանքը հենվում է մասսաների փորձի, գիտակցականության և քաղաքացիական ակտիվության վրա։

Կարգապահությունը և կարգուկանոնը պետության ու հասարակության կառավարման համար մեր ժողովրդին լայն հնարավորություններ ընձեռող սոցիալիստական դեմոկրատիայի անկապտելի կողմերն են։ Դեմոկրատիայի



հետագա զարգացումն ու խորացումը կուսակցությունը համարում է աշխատավորների կոմունիստական դաստիարակության, նոր մարդու կազմավորման հզոր, ներգործուն միջոցը։

ՍՄԿԿ Կենտկոմը ուշի-ուշով ուսումնասիրում է այն ամենը, ինչ ծնում է ժողովրդի ստեղծագործությունը, համակողմանիորեն խրախուսում է դեմոկրատիայի զարգացումը հասարակական կյանքի ամենատարբեր ոլորտներում, այդ թվում՝ անմիջականորեն արտադրության մեջ։ Իսկական սոցիալիստական ինքնակառավարման ձև է դարձել, օրինակ, բրիգադի աշխատանքի այնպիսի կազմակերպումը, ինչպիսին է միասնական կարգագրով աշխատանքը։ Մոսկվայի, Կալուգայի, Դնեպրոպետրովսկի, Սվերդլովսկի, այլ քաղաքների և մի շարք գյուղական շրջանների ձեռնարկությունների փորձը ցույց է տալիս, որ աշխատանքի այդ ձևին անցած կոլեկտիվներում, որպես կանոն, ավելի բարձր են աշխատանքի արտադրողականությունն ու կարգապահությունը։ Այստեղ յուրաքանչյուր աշխատող ավելի լավ է տեսնում իր աշխատանքային ավանդի և վաստակի միջև եղած կապը։ Այստեղ ակնբախորեն են դրսևորվում ընկերական փոխօգնության ոգին, բարձր կազմակերպված սոցիալիստական աշխատանքի դաստիարակչական ներգործությունը։

Կուսակցական կոմիտեների պարտքն է մշտապես ուղիներ որոնել աշխատավոր մարդու նախաձեռնությունը զարգացնելու, արտադրության կառավարման մեջ նրա դերը բարձրացնելու, յուրաքանչյուր սովետական քաղաքացու մեջ երկրի լիիրավ տիրոջ զգացում դաստիարակելու գործում։ Այստեղ նոր հնարավորություններ կբացի աշխատավորական կոլեկտիվի մասին օրենքը։

Կուտակված փորձը հաստատում է, որ այնտեղ, ուր աշխատավորական կոլեկտիվների իրավունքներն ու հնարավորություններն օգտագործվում են լրիվ, ո՛չ միայն ավելի բարձր են արտադրական ցուցանիշները, այլև ավելի մաքուր է բարոյական մթնոլորտը, ավելի քիչ են օրինականության և կարգուկանոնի խախտումները։

Ընկերնե՛ր։ Նոր մարդու դաստիարակումը անխզելի է հարբեցողության, խուլիգանության ու պորտաբուծության դեմ, սպեկուլյացիայի ու սոցիալիստական սեփականության հափշտակումների, կաշառակերության ու ընչաքաղցության դեմ մղվող ամենաեռանդագին պայքարից։ Ճիշտ չէր լինի աշխատավորության անհանդուրժությունը և արդարացի վրդովմունքը հարուցող այս բոլոր այլանդակ երևույթներում տեսնել միայն «անցյալի մնացուկներ» մարդկանց գիտակցության և վարքի մեջ։ Այս «հիվանդությունների» շատերի պատճառները պետք է փնտրել նաև այսօրվա պրակտիկայում, այս կամ այն աշխատողի սխալներում, մեր զարգացման իրական պրոբլեմներում ու դժվարություններում, դաստիարակչական գործունեության թերություններում։ Ուստի բացասական երևույթների վերացման համար անհրաժեշտ են ո՛չ միայն մըշտական պրոպագանդիստական ջանքեր, այլև տնտեսական, կազմակերպական և իրավական կարգի միջոցառումներ։

Մենք պետք է անհանդուրժողության մթնոլորտ ստեղծենք սոցիալիստական համակեցության նորմերի բոլոր խախտողների նկատմամբ, չնայելով դեմքին, նրանց դեմ մոբիլիզացնելով հասարակական կարծիքը։ Եվ, անշուշտ, հարկավոր է ավելի ակտիվ ու նպատակասլաց աշխատանք տանել անհատի խելամիտ պահանջմունքների, շահերի կազմավորման նպատակով։

Պրակտիկան կրկին ու կրկին համոզում է, որ դաստիարակության հաջողությունն ապահովվում է միայն այն ժամանակ, երբ դա խարսխվում է սոցիալ-տնտեսական քաղաքականության ամուր հիմքի վրա։ XXVI համագումարի այս դրույթը սկզբունքային նշանակություն ունի։

Եվ կուսակցական կադրերը պետք է լավ իմանան մարդկանց տրամադրության ու վարքի վրա ազդող սոցիալ-տնտեսական գործոնները, գաղափարախոսական աշխատանքն ավելի սերտորեն շաղկապեն ժողովրդատնտեսական ու սոցիալ-քաղաքական հանգուցային խնդիրների կատարման համար մղվող պայքարի հետ։

Իրկուտսկի, Տուլայի, Խմելնիցկու և մի շարք այլ կուսակցական մարզկոմների գործունեության վերջերս ՍՄԿԿ Կենտկոմում կատարված քննադա-

տական լուրջ վերլուծությունը ցույց տվեց, որ էկոնոմիկայի զարգացման բնագավառում այդ մարզերի ետ մնալու հիմնական պատճառներից մեկը աշխատավորական կոլեկտիվներում գաղափարադաստիարակչական աշխատանքի թերագնահատումն է, վրիպումները կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության գործում։ Անվիճելի է, որ գաղափարախոսական գործունեությունն ինքնըստինքյան չի կարող լուծել տնտեսական ու սոցիալական պրոբլեմները։ Ձեռք բերած հաջողությունները ոչ պետք է վերագրել միայն այդ գործունեությանը, ոչ էլ բացառապես դրան կշտամբել առկա թերությունների համար։ Գաղափարադաստիարակչական աշխատանքի հետ քաղաքական, կազմակերպչական ու տնտեսական աշխատանքի միաձուլումն է միայն պետք եղած արդյունքը տալիս։ Այս բանը միշտ պետք է հիշեն և՛ կուսակցական, և՛ տնտեսական ղեկավարները։

Ասվածը վերաբերում է մեր գործունեության յուրաքանչյուր տեղամասի, ժողովրդական տնտեսության յուրաքանչյուր ճյուղի։ Կոմպլեքսային մոտեցման անհրաժեշտությունը հատկապես ակնբախ է գյուղում ծագող պրոբլեմները լուծելիս, որտեղ աշխատանքի ու կենցաղի պայմանները, որպես կանոն, ավելի բարդ են։ Հարկավոր է աշխատանքն ավելի եռանդագին փոխադրել արդյունաբերական հիմքի վրա, հարստացնել այդ աշխատանքի բովանդակությունը, բարձրացնել դրա վարկը։ Անհրաժեշտ է ամենուրեք վերակառուցել գյուղը, այնտեղ բարելավել բնակարանային, կենցաղային և կուլտուրական պայմանները։ Կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը հենց դրա վրա են կենտրոնացնում ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումը, գյուղատնտեսության հարցերի ու պարենային ծրագրի իրականացման հարցերի վերաբերյալ Կենտրոնական կոմիտեում ապրիլին կայացած խորհրդակցությունը։ Առանց այդ պրոբլեմի լուծման՝ դժվար է հասնել կոլտնտեսությունների ու սովխոզների ամրապնդմանը որակյալ կադրերով, յուրաքանչյուր տնտեսությունում ստեղծել կայուն կոլեկտիվներ։

Ընկերնե՛ր։ Մեր աշխատանքի կարևորագույն օղակն է արտադրության արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացումը: Այդ խնդրի կատարմանը պետք է նպատակամղվեն սոցիալիստական մրցությունը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը, յուրաքանչյուր կոլեկտիվի, գիտնականների և մասնագետների ջանքերը։

Այստեղ ինչպիսի՞ ավանդ կարող է ներդնել պրոպագանդայի և դաստիարակության սիստեմը։ Հույժ էական։ Եվ ամենից առաջ ակտիվորեն ձևավորել տնտեսագիտական նոր մտածելակերպ, որը նպատակամղված լինի նախաձեռնության ու սոցիալիստական ձեռներեցության, պատասխանատվության բարձրացմանը, դեպի նվազագույն ծախսումներով ժողովրդատնտեսական լավագույն վերջնական արդյունքներ տանող ուղիների ստեղծագործական որոնումը։

Մենք այդ խնդիրների ճիշտ լուծման քիչ օրինակներ չգիտենք։ Վերցնենք Մոսկվայի Լիխաչովի անվան ավտոգործարանի կոլեկտիվը։ Նրան բնորոշ են թե՛ աշխատանքի արտադրողականության անշեղ աճը, թե՛ արտադրանքի որակի բարձրացումը։ Ինչպե՞ս է ձեռք բերվում այդ։

Առաջին հերթին նրանով, որ կուսակցական կազմակերպությունը գործալսնում հետևողականորեն հաստատում է ստեղծագործության ու նորարարության ոգին, նպաստում է ամենայն առաջավորի արմատավորմանը պրակտիկայում։ Դրան է ծառայում կադրերի պատրաստման կուռ և արդյունավետ համակարգը, որը, ի դեպ, սկիզբ է առնում դեռ ձեռնարկության պատերից դուրս, ենթաշեֆ դպրոցներում կատարվող աշխատանքից։ Մեծ ուշադրություն է նվիրվում երիտասարդ բանվորների դաստիարակությանը, վարպետ-դաստիարակների շարժման զարգացմանը։ Հաջողությունների ու թերացումների հրապարակայնությունը, դրանց բաց քննարկումը, քաղաքական-դաստիարակչական աշխատանքին բոլոր աստիճանների ղեկավարների մասնակցությունն ստեղծում են այն հասարակական մթնոլորտը, որի պայմաններում մարդիկ լավ են աշխատում։

Բայց ամեն տեղ չէ, որ գործն այդպես է կազմակերպված։



Մենք դեռ շատ անելիքներ ունենք աշխատանքի օրինակելի մեթոդների, ինտենսիվ տնտեսավարման պրոպագանդումը բարելավելու համար։ Չէ որ առաջավոր փորձի տարածման գործում ուշացումը, քաշքշուկը նույնպես տնտեսական կորուստներ են և երկրի մասշտաբով դրանք բավականին շոշափելի են։

Այդ փորձի ուսումնասիրմանն ու օգտագործմանը ամբողջությամբ վերցված թույլ է օգնում տնտեսական պրոպագանդան։ Կուսակցական կոմիտեները պարտավոր են հասնել այն բանին, որ այդ պրոպագանդայի կենտրոնում գտնվեն այնպիսի պրոբլեմներ, որոնց լուծմամբ են առաջին հերթին պայմանավորված կուսակցության տնտեսական քաղաքականության իրականացումը, աշխատավորական կոլեկտիվների աշխատանքը։ Նպատակահարմար կլիներ տնտեսագիտական կրթության սիստեմի ուսումնական ծրագրում զետեղել հատուկ հարցեր, թերևս նաև դասընթացներ, որոնց նպատակը լիներ բարձրացնել բանվորների, մասնագետների, տնտեսական կադրերի գիտատեխնիկական գիտելիքների մակարդակը, էականորեն ընդլայնել առաջավոր փորձի ուսումնասիրումը։

Արդի տնտեսագիտական մտածողության անկապտելի հատկանիշն են գործարարությունը, հոգատար վերաբերմունքը ժողովրդական բարիքի նկատմամբ, նյութական, աշխատանքային ու ֆինանսական ռեսուրսների օգտագործման նկատմամբ։

Տնտեսման ու խնայողության հարցերին նվիրված ագիտացիոն-պրոպագանդիստական միջոցառումներ քիչ չեն կատարվում, բայց ամենուրեք չէ, որ դրանք ամրապնդվում են ներգործուն պրակտիկ միջոցառումներով։

Եվ ահա արդյունքը։ Էլեկտրաէներգիայի և մի քանի այլ նյութական ռեսուրսների խնայողության 1982 թվականի համար սահմանված առաջադրանքներն ամբողջ երկրի մասշտաբով կատարվեցին ընդամենը կիսով չափ և նույնիսկ՝ դրանից էլ պակաս։ Վառելիքի ու էլեկտրաէներգիայի խնայողության առաջադրանքները հատկապես թերակատարվել են, օրինակ, ՍՍՀՄ էներգետիկայի մինիստրության, ծանր մեքենաշինության մինիստրության և հանքային պարարտանյութերի արտադրության մինիստրության ձեռնարկությունները։ Հարկավոր է, որ տնտեսման ու խնայողության համար մղվող պայքարը խարսխվի նյութական ու բարոյական խթանների լավ կշռադատված համակարգի վրա, որ այն դառնա իրոք համապետական, համաժողովրդական գործ։

Ընկերնե՛ր։ Կյանքի ընթացքը քիչ խնդիրներ չի առաջադրում գաղափարախոսական աշխատողներին։ Բայց դրանցից անփոփոխ եղել և մնում է գիտական, մարքս-լենինյան աշխարհայացքի՝ մարդկանց կոմունիստական դաստիարակության հիմքի կազմավորումը: Հենց դա է կոմունիստներին, աշխատավորներին դարձնում քաղաքական գիտակից մարտիկներ, որոնք ունակ են ինքնուրույն գնահատելու սոցիալական երևույթները, տեսնելու ընթացիկ խնդիրների կապը մեր վերջնական նպատակների հետ, փաստարկված բանավեճ մղելու ամեն մի գաղափարական հակառակորդի հետ։ Եվ կուսակցությունը չթուլացող ուշադրություն է նվիրում կոմունիստների մեջ տեսությանը տիրապետելու պահանջի, տեսության նկատմամբ հետաքրքրության ու ճաշակի դաստիարակմանը։ Դրան է կոչված ծառայելու նաև կուսակցական ուսուցման մեր սիստեմը։ Այն իր դերն այնքան ավելի լավ կկատարի, որքան ավելի համարձակորեն ազատվենք ձևականությունից, տիրացուականությունից և քարացածությունից, իրենց դարն ապրած ուսման սակավարդյունավետ ձևերից, որքան ավելի ճիշտ հաշվի առնենք կոմունիստների յուրաքանչյուր կատեգորիայի առանձնահատկությունները։ Այստեղ պետք է հետևողականորեն և հաստատակամորեն վերակառուցենք մեր աշխատանքը, ղեկավարվելով կուսակցության XXVI համագումարից հետո ՍՄԿԿ Կենտկոմի ընդունած հայտնի որոշմամբ։

ՍՄԿԿ-ն առաջնահերթ նշանակություն է տալիս Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի գաղափարական ժառանգության ուսումնասիրմանը։ Հսկայական աշխատանք է կատարված նրանց աշխատությունները ժողովելու և հրապարակելու ասպարեզում։ Ավարտված է Լենինի երկերի ժողովածուի հինգերորդ

հրատարակությունը։ Լույս է ընծայված Մարքսի և Էնգելսի երկերի երկրորդ հրատարակությունը, որն ընդգրկում է առաջին անգամ հրապարակվող մոտ մեկուկես հազար նյութ։ Մարքսիզմ-լենինիզմի դասականների աշխատությունների ընդհանուր տպաքանակը սովետական իշխանության տարիներին կազմել է ավելի քան 700 միլիոն օրինակ։

Կցանկանայի, ընկերնե՛ր, ձեզ հետ խորհրդակցել մի այսպիսի հարցի շուրջը։ Մենք ձգտում ենք, որ գիտական աշխարհայացքը դառնա բոլոր սովետական մարդկանց, յուրաքանչյուր նոր սերնդի սեփականությունը։ Բայց մասսայական ընթերցողի համար նախատեսված հեղափոխական տեսության հիմունքների վերաբերյալ մեր բոլոր գրքերը, ուսումնական ձեռնարկներն արդյոք մի՞շտ են համապատասխանում մարքսիզմի պրոպագանդման լենինյան հանրահայտ պահանջին՝ առավելագույն գիտականություն և առավելագույն հանրամատչելիություն։ Ըստ երևույթին, հասունացել է այնպիսի գիրք նախապատրաստելու անհրաժեշտությունը, որտեղ մարքսիզմ-լենինիզմի արմատական սկզբունքների մատչելի շարադրումը ներդաշնակորեն միահյուսվեր մեր կուսակցության և ժողովրդի անցած հերոսական ուղու մասին վառ պատումի հետ։

Հավանաբար դուք կհամաձայնեք նաև այն բանի հետ, որ մարքս-լենինյան աշխարհայացքի կերպավորումը այսօր. ավելի, քան երբևէ, սերտորեն կապված է մեր պատմական նվաճումների, նոր կարգերի առավելությունների համոզիչ ու հմուտ պրոպագանդման հետ։ Պետք է ավելի խոր բացահայտել սոցիալիզմի այնպիսի հիմնարար արժեքների նշանակությունը, ինչպիսին են կոլեկտիվիստական ոգին և ընկերական փոխօգնությունը, իսկական ժողովրդապետությունն ու մարդասիրությունը, ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, հասարակության բարոյական առողջությունը և յուրաքանչյուր մարդու վստահությունը ապագայի հանդեպ։ «Իր ամբողջության մեջ այդ ամենը,— շեշտել է Յու. Վ. Անդրոպովը «Կարլ Մարքսի ուսմունքը և ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության մի քանի հարցեր» հոդվածում,— նշանակում է աշխատավոր զանգվածների կյանքի սկզբունքորեն նոր որակ, որը բնավ չի հանգում՝ նյութական հարմարավետության, այլ ներառնում է մարդկային լիարյուն կեցության ամբողջ տարրապատկերը»։

Կարևոր է, որ մարդկանց գիտակցության մեջ չհարթվի սովետական հասարակության պատմական նվաճումների իսկական արժեքի ըմբռնումը, որ նոր աշխարհի քաղաքացու հպարտ զգացումը չկլանի, ինչպես ասում էր Վլադիմիր Մայակովսկին, ամորտիզացիաներից ամենաահավորը՝ սրտի և հոգու ամորտիզացիան։ Պետք է մեր դաստիարակչական նպատակներին ավելի ակտիվորեն ի սպաս դնել կոմունիստական իդեալների ձգողական մեծ ուժը։

## II.

Ընկերնե՛ր։ Լենինը գաղափարական ազդեցության, հասարակության քաղաքական ղեկավարման հզորագույն զենք էր համարում մամուլը։ Այդ դրույթի ճշմարտացիությունը հաստատվում է սոցիալիստական շինարարության ողջ փորձով։ Մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի միջոցները աշխատավորների կոմունիստական դաստիարակության ու կազմակերպման, կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության գաղափարախոսական ապահովման ներգործուն միջոց են, իսկական համաժողովրդական ամբիոն։ Հենց նրանց գործունեությունն է մեր օրերում զգալիորեն կանխորոշում կուսակցական պրոպագանդայի արդյունավետությունը, գործերի վիճակը գաղափարախոսական ճակատի մյուս տեղամասերում։

ՍՄԿԿ XXVI համագումարից հետո ուժեղացել է մեր մամուլի ուշադրությունը կոմունիստական շինարարության հրատապ խնդիրների նկատմամբ։ Նրա ելույթների աճած գործնականության և հասունության մասին է վկայում այն փաստը, որ դրանցում արտահայտված շատ գաղափարներ ու առաջարկություններ հաշվի են առնվել ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի կարևոր փաստաղթեր նախապատրաստելիս։ Նշեմ, օրինակ, «Պրավդայի» հրապարակումները ագրոարդյունաբերական կոմպլեքսի շրջանային օղակի կառավարումը կատարելագործելու հարցերի վերաբերյալ, «Իզվեստիայինը»՝ ժողովրդական սպառման ապրանքների արտադրության մասին, «Տրուդի» հրապարակումները՝ արտադրության կառավարմանը բանվորների մասնակցության վերաբերյալ։ Մասսայական ինֆորմացիայի միջոցները ոչ թե որպես անաչառ տարեգիրներ, այլ գործուն պրոպագանդիստներ ու կազմակերպիչներ են դրսևորում իրենց մեր օրերի այնպիսի վիթխարի մեծագործություններում, ինչպիսին են ԲԱՄ-ի շինարարությունը, Սիբիրի և Հեռավոր Արևելքի զարգացումը, Ուրենգոյ—Պոմարի—Ուժգորոդ գազամուղի կառուցումը, հսկայական հողազանգվածների մելիորացումը, ոչ սևահողային գոտու հերկումը։

Մեր մամուլի հարուստ պրակտիկան համոզում է, որ նրա աշխատանքը արդյունավետ է միայն այն դեպքում, երբ ուշադրությունը կենտրոնացվում է ժողովրդի ստեղծարար գործունեության գլխավոր ուղղությունների վրա, երբ արծարծվում են հրատապ հարցեր, և դրանց քննարկմանը լայնորեն ներգրավվում են իրենք՝ աշխատավորները։

Ընթերցողների, հեռուստադիտողների, ռադիոունկնդիրների նամակները, բանթղթակիցների և գյուղթղթակիցների թղթակցությունները հասարակական կարծիքի զգայուն ծանրաչափ են, մասսաների խոհերի, փորձի, նախաձեռնության հորդառատ աղբյուր։ Եվ խմբագրությունները պետք է լիովին օգտագործեն դրանք։ Իրենց հերթին կուսակցական կոմիտեները պարտավոր են հոգալ, որ ամեն մի լուրջ ելույթ աշխույժ արձագանք գտնի, խթանիչ ազդակ դառնա գործի բարելավման, նոր բնագծերի նվաճման համար։

Սովետական մարդկանց կրթական ու կուլտուրական մակարդակի աճը նոր պահանջներ է ներկայացնում մեր մամուլին, հեռուստատեսությանն ու ռադիոյին։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեում, խմբագրություններում նամակներ են ստացվում աշխատավորներից, որոնք դժգոհում են որոշ հրապարակումների ու հաղորդումների բովանդակությունից, լեզվից ու ոճից։ Քննադատվում են կաղապարված թղթակցություններն ու մեկնաբանությունները, այնպիսի առաջնորդող հոդվածները, որոնցում չես գտնի ոչ խոր ընդհանրացումներ, ոչ էլ թարմ միտք։ Արդարացի կշտամբանքներ են հայտնվում հեռուստառադիոհաղորդումների անբավարար օպերատիվության, ինֆորմացիոն թույլ հագեցվածության համար։

Խմբագրական կոլեկտիվները պարտավոր են մեկընդմիշտ ազատվել այդ թերություններից։ Յուրաքանչյուր հրապարակում, յուրաքանչյուր ելույթ պետք է մարդկանց հրապուրի, նրանց համոզի կյանքի մեջ ներթափանցելու իր խորությամբ ու սկզբունքայնությամբ, մտքի սրությամբ և փայլուն ոճով։

Կատարելագործման կարիք ունի լրագրահանդեսային պարբերական մամուլի կառուցվածքը։ Ինչպես հարկն է չի բավարարվում երեխաների, պատանեկության, հասարակության այլ խմբերի համար նախատեսված մի շարք հրատարակությունների պահանջարկը։ Միևնույն ժամանակ լույս են տեսնում զուտ գերատեսչական բազմաթիվ հրատարակություններ, հատկապես ամսագրեր, չնայած դրանցից մի քանիսի արժույթը, ուղղակի ասենք, մեծ չէ։

Կկամենայինք ձեզ հետ քննարկել նաև շրջանային ու քաղաքային մամուլի հասունացած պրոբլեմները։ Դրանք բոլոր թերթերի գրեթե կեսն են, և մեծ աշխատանք են կատարում։ Բայց դրանցից շատերը հաճախ փորձում են սոսկ պատճենել կենտրոնական, մարզային թերթերը և ամեն բանում չէ, որ բավարարում են ընթերցողներին։

Երբեմն մարդիկ ավելի լավ գիտեն, թե ինչ է կատարվում աշխարհի մյուս ծայրում գտնվող որևէ պետության մեջ, քան իրենց քաղաքի կամ շրջանի գործերի մասին։ Ուշադրության է արժանի նրանց փորձը, ովքեր, հաշվի առնելով ընթերցողների աշխատապայմաններն ու պահանջմունքները, փոխում են համարների ծավալն ու պարբերականությունը, հասկանալի է՝ թղթի նախատեսված տարեկան ֆոնդի սահմաններում։ Խմբագրությունները պետք է իրենց գլխավոր ջանքերը գործադրեն լուսաբանելու տեղական կյանքը, և դա անեն հիմնավորապես, պրոֆեսիոնալ լավ մակարդակով։ Ժուռնալիստիկայի այդ և մյուս հարցերի լուծմանը, անտարակույս, կնպաստի մամուլի աշխատողների

որակավորման բարձրացման մեզ մոտ ստեղծվող համամիութենական ինստիտուտը:

Այստեղ շատ բան պայմանավորված է նաև կուսակցական կոմիտեների՝ տեղական մամուլի նկատմամբ ցուցաբերած ղեկավարությամբ: Ցավոք, երբեմն նկատվում է երկու ծայրահեղություն. մերթ քաղկոմներն ու շրջկոմներն ասես մոռանում են իրենց թերթերը, և մերթ՝ ընդհակառակը, մանր խնամակալությամբ կաշկանդում նրանց նախաձեռնությունը: Իսկ երբեմն էլ խմբագիրներին երկար ժամանակով կտրում են իրենց ուղղակի պարտականություններից, նրանց տալով զանազան տնտեսական հանձնարարություններ: Շրջանային ու քաղաքային թերթերն ունեն նաև իրենց պրոբլեմները: Ե՛վ որակյալ կադրեր են պակասում, և՛ պոլիգրաֆիական բազայի մակարդակն է շատ ցածր: Ըստ երևույթին, ժամանակն է ՍՄԿԿ Կենտկոմում հատուկ քննարկման առարկա դարձնել տեղական մամուլի զարգացման հարցերը:

Պրոպագանդայի գործունությունը ամենից առաջ կանխորոշվում է այնպիսի հատկություններով, ինչպիսին են գիտականությունը, ճշմարտացիությունն ու իրագործելիությունը: Դրանք անհրաժեշտ են, բնականաբար, թե՛ քննադատական, պրոբլեմային նյութերին և թե մեր հաջողություններին վերաբերող հրապարակումներին: «Իսկ հատկապես ինչպիսի՞ք են այդ հաջողությունները: Արդյո՞ք դրանք ապացուցված են: Այստեղ չկա՞ն փչոցներ, պարծենկոտություն... Ինչո՞վ են ձեռք բերվել հաջողությունները: Ինչպե՞ս ավելի ընդլայնել դրանք»,— այսպես էր դնում հարցը Լենինը:

Այս մասին հարկ է լինում հիշեցնել այն պատճառով, որ պարծենկոտները չեն վերացել: Վերցնենք, օրինակ, տարեսկզբի մեր շատ թերթեր: Որքան հավաստիացումներ են հրապարակվում, թե բոլոր պլանները կկատարվեն: Իսկ երբ գալիս է արդյունքներն ամփոփելու ժամանակը, ահա այդ պահին ոմանցից բառ անգամ չես կորզի, իսկ մյուսներն այնպիսի հաշվետվություն կկազմեն, որ մնում է միայն նրանց պարգևատրել, թեև պլանային առաջադրանքներն ու պարտավորությունները ապահովված չեն: Նման դեպքերում ժուռնալիստները, ինչպես ասվում է, պետք է ավելի թունդ, ավելի համարձակ պաշտպանեն պետական շահերը:

Մամուլի քննադատությունը, իհարկե, սուր զենք է: Եվ պետք է կարողանալ օգտվել դրանից, չնահանջել սկզբունքայնության և անաչառության դիրքերից: Մեզ համար քննադատական ելույթը ոչ թե սենսացիա է, այլ ահազանգ, որի միակ նպատակն է վերացնել թերությունները:

Կանդրադառնամ նաև քննադատության նկատմամբ ցուցաբերվող վերաբերմունքին: Գաղտնիք չէ, որ դեռևս պատահում են քննադատական ելույթները խանգարելու կամ խմբագրության ձևական խուսափողությամբ «հանգստացնելու» փորձեր: Մենք հանդիպում ենք նաև քննադատության համար հալածելու փաստերի: Եվ ահա թե ինչ ես մտածում. քննադատությունը ճնշելու դեպքերն անհնար կլինեին, եթե կուսակցական ու սովետական մարմինները լիովին հաշվի պահանջեին մեղավորներից:

Մամուլը մասսաների դաստիարակության վրա գլխավորապես ներգործում է առաջավոր փորձի, կյանքի բոլոր բնագավառների օրինակելի նմուշների պրոպագանդմամբ: Այն բազում հնարավորություններ ունի տպավորիչ կերպով բացահայտելու մեր ժամանակակցի, աշխատավոր մարդու՝ գաղափարաբարոյական վեհ հատկություններ կրողի կերպարը: Մեզ հարկավոր են հուզող ակնարկներ հնգամյակի հերոսների՝ բանվորների, կոլտնտեսականների, մասնագետների մասին, այնպիսի հրապարակախոսական հեռուստաֆիլմեր, ինչպիսին են լենինգրադցի նորարար Ե. Ն. Մորյակովի մասին «Խառատը» կամ ածխահատների փառաբանված բրիգադավար Ե. Ի. Դրոզդեցկու մասին «Եգոր Իվանովիչը» հեռուստաֆիլմերը: Հարկ կա՞ ասելու, թե երկրի լավագույն մարդկանց մասին պատմող հեռուստաֆիլմերը որքան կարևոր են բանվորական հերթափոխի, մեր երիտասարդ սերնդի դաստիարակության համար:

Հեռուստադիտողն սպասում է նաև լավ ճաշակով աչքի ընկնող ավելի շատ գեղարվեստական կինոնկարների, գրավիչ հաղորդումների: Հասկանալի է, որ յուրաքանչյուր ծրագիր բովանդակալից ու հետաքրքրական դարձնելը



հեշտ չէ: Բայց դեպի հանդիսականի միտքն ու սիրտը տանող այլ ուղի գոյություն չունի:

Ընկերնե՛ր: Մարդու հոգևոր պահանջմունքների կազմավորումը, վսեմացումը, անհատի գաղափարաքաղաքական ու բարոյական կերպարի վրա ակտիվորեն ներգործելը սոցիալիստական մշակույթի կարևորագույն առաքելությունն է: Դրանով է բնորոշվում արվեստագետի պատասխանատվության չափը, որի տաղանդը բարձր է գնահատում կուսակցությունը, ի դեմս նրա տեսնում հասարակության ամենաարժեքավոր սեփականությունը: Երախտագիտական ամենաջերմ խոսքերի են արժանի այն գրողները, երաժիշտները, նկարիչները, թատրոնի և կինոյի աշխատողները, որոնք ակտիվորեն զարգացնում են մեր հայրենիքի բազմազգ մեծ կուլտուրան: Միլիոնավոր մարդկանց համար կյանքի ճանապարհների բարի ուղեկիցներ են դարձել վերջին տարիների շատ ստեղծագործություններ: Այստեղ, անշուշտ, երևում է կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ գրականության ու արվեստի կապերն ամրապնդելու մեր ստեղծագործական միությունների բազմակողմանի աշխատանքը:

Արվեստագետի ստեղծագործության մեջ ելակետային եղել և մնում է նրա քաղաքացիական դիրքորոշումը: Միայն կուսակցական մոտեցումն է օգնում ըմբռնելու արդիականության առաջատար միտումները: Իսկական տաղանդը չի անջրպետվում կյանքից, թույլ չի տալիս ոչ իրականության ցածրարվեստ գեղազարդում, ոչ էլ սովերոտ երևույթների արհեստական ուռճացում:

Բայց մեղքներս ի՞նչ թաքցնենք, լինում է նաև այլ կերպ: Էկրանին կամ որոշ հեղինակների գրչի տակ երբեմն առաջին պլանում հանդես են գալիս միայն ձախողված ճակատագրեր, կյանքի դժվարություններ, մի տեսակ նյարդային, նվվացող կերպարներ: Իսկ մարդը, հատկապես երիտասարդը, կարիք ունի իդեալի, որը մարմնավորի կյանքի նպատակների ազնվությունը, գաղափարական համոզվածությունը, աշխատասիրությունն ու արիությունը: Իսկ այդպիսի հերոսներ հորինելու հարկ չկա: Նրանք մեր կողքին են:

Անհանգստություն է հարուցում այն հանգամանքը, որ որոշ ստեղծագործություններում լինում են նահանջներ պատմական ճշմարտությունից, օրինակ, կոլեկտիվացման գնահատման դեպքում, սպրդում են «աստվածորոնողական» մոտիվներ, նահապետականության իդեալականացում: Մենք հանդիպում ենք նաև այնպիսի օրինակների, երբ հեղինակը կա՛մ գլուխը կորցնում է բարդ պրոբլեմների մեջ և կամ փորձում է պճնվել դրանց «ոչ ստանդարտ» մեկնաբանությամբ, և արդյունքը լինում է այն, որ աղավաղվում է մեր իրականությունը: Նման երևույթներից կարելի կլիներ խուսափել, եթե հանդեսների և հրատարակչությունների բոլոր կոլեկտիվներում ավելի վճռականորեն կասեցվեին անսկզբունքայնության, հաշտվողականության, սուբյեկտիվիստական հակումների փաստերը: Ասվածը լիովին վերաբերում է նաև թատրոնի ու կինոյի խաղացանկը կազմելուն:

Ամեն ինչ չէ, որ բավարարում է մեզ մի այնպիսի մասսայական արվեստում, ինչպիսին էստրադան է: Չի կարելի, օրինակ, չտեսնել, որ այդ մասսայականության ալիքի վրա հաճախ երևում են կասկածահարույց ծրագրերով երաժշտական անսամբլներ, որը գաղափարական ու գեղագիտական վնաս է պատճառում:

Պետք է ավելի մանրազնին մոտեցում ցուցաբերել արտասահմանյան հոգևոր արտադրանքի ընտրության նկատմամբ, որ մենք ստանում ենք կուլտուրական փոխանակման կարգով: Չէ որ հայտնի է, որ բովանդակալից ստեղծագործությունների հետ մեկտեղ մեզանում պատահում են ֆիլմեր, պիեսներ, հրատարակություններ, երաժշտություն, որոնց բնորոշ են գաղափարազրկությունը, անճաշակությունը, գեղարվեստական անկարողությունը: Չի կարելի մոռանալ, ընկերնե՛ր, որ այստեղ մեզ համար առաջին տեղում պետք է լինի ոչ թե առևտրական, այլ քաղաքական նկատառումը:

ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրությունը, ՍՍՀՄ պետկինոն, ՍՍՀՄ հրատպետկոմը պետք է բարելավեն հասարակության հոգևոր կյանքի այն ոլորտների զարգացման ղեկավարումը, որոնք գտնվում են իրենց գործունեության

ծրագրում։ Այստեղ չպետք է լինի ոչ ձևամոլություն, ոչ էլ անվերահսկողություն։ Ասենք Կենտկոմի կուլտուրայի բաժինն էլ պետք է ստեղծագործական կազմակերպություններին և հիմնարկություններին ավելի ակտիվորեն օգնի նրանց աշխատանքը կառուցելու կուսակցական բարձր պահանջկոտության ու սկզբունքայնության ոգով։

Բնականաբար, կուլտուրական շինարարության ղեկավարման լենինյան ոճն աչքի է ընկնում գեղարվեստական ստեղծագործության յուրահատկության ու բարդության խոր ըմբռնմամբ, դրան խորթ են կարգադրությունների և իր ճաշակով գնահատելու մեթոդները։

Ստեղծագործական միություններում, արվեստի և մշակույթի հիմնարկություններում բազմահազար կոմունիստներ են աշխատում։ Նրանք մեր գեղարվեստական մտավորականության մարտական ավանգարդն են, նրա քաղաքական կորիզը։ Կարևոր է, որ կուսակցական կազմակերպությունները ակտիվորեն ներգործեն թատրոնների ու կինոստուդիաների, գրական միավորումների, հանդեսների ու հրատարակչությունների գաղափարական ուղղվածության վրա, կադրերի դաստիարակության վրա, ստեղծեն ճանաչված վարպետների և ստեղծագործող երիտասարդության համերաշխ աշխատանքի մթնոլորտ, նրանց օգնեն տիրապետելու մարքսիզմ-լենինիզմին, հղկելու իրենց վարպետությունը։

Սովետական կուլտուրան, որը գերում է մարդասիրությամբ, ստեղծագործական բազմազանությամբ և գեղարվեստական հարստությամբ, ակտիվորեն նպաստում է ժողովուրդների փոխըմբռնման գործին։ Միայն անցյալ տարի մոտ չորս հարյուր սովետական գեղարվեստական կոլեկտիվներ եղան հարյուրից ավելի երկրներում։ Հեղափոխական համերաշխությունն է մեր կինեմատոգրաֆիստներին, հրապարակախոսներին, գրողներին, արտիստներին տանում մոլորակի «թեժ կետերը», որտեղ կռիվ է մղվում հանուն ժողովուրդների ազատության, հանուն սոցիալական արդարության։ Եվ ուրախացնում է այն հանգամանքը, որ հրապարակախոսության տաղանդավոր երկերը, քաղաքական վեպերը, պիեսներն ու ֆիլմերը, որոնք հաճախ ստեղծվում են իրադարձությունների թարմ հետքերով, հետզհետե ավելի լայն լսարան են նվաճում երկրում և արտասահմանում։

Մշակութային արժեքների տարածման մասշտաբները մեզ մոտ, հիրավի, հսկայական են։ Բայց կան նաև որոշակի դժվարություններ։

Լիովին չի բավարարվում գրքերի, ամենից առաջ գեղարվեստական գրականության, կերպարվեստի արտադրանքի աճող պահանջարկը։ Պատճառները հայտնի են. չեն բավականացնում պոլիգրաֆիական կարողությունները, պակասում է թուղթը։ Քիչ են արտադրվում երաժշտական գործիքներ, ժամանակակից հեռուստատեսային տեխնիկա, հատկապես նկարահանման և հաղորդման սարքավորումներ, հուսալի աշխատող գունավոր հեռուստացույցներ։ ՍՍՀՄ պետպլանը, կապի միջոցների արդյունաբերության, էլեկտրոնային արդյունաբերության մինիստրությունները, ՍՍՀՄ անտառային, ցելյուլոզի-թղթի և փայտամշակման արդյունաբերության մինիստրությունը, ՍՍՀՄ թեթև ու սննդի արդյունաբերության և կենցաղային սարքերի մեքենաշինության մինիստրությունը և այլ գերատեսչություններ պատշաճ պատասխանատվությամբ չեն վերաբերվում պրոպագանդայի տեխնիկական բազայի ամրապնդմանը։ Բայց չէ որ ժամանակն է հասկանալու, որ տեխնիկական հագեցվածության ետ մնալը արգելակում է մեր պրոպագանդիստական պոտենցիալի արդյունավետ օգտագործմանը։

Ընկերնե՛ր։ Այժմ այն խնդիրների մասին, որոնք մեզ համար բխում են արդի միջազգային իրադրությունից։ Ինչպես գիտեք, ԱՄՆ-ը և ՆԱՏՕ-ի երկրներն այսօր հիմնական շեշտը դնում են ՍՍՀՄ-ի և Վարշավայի պայմանագրի կազմակերպության նկատմամբ ռազմական գերազանցության հասնելու վրա, սպառազինությունների անզուսպ մրցավազքի վրա, որը քողարկվում է «սովետական ռազմական սպառնալիքի» մասին հերյուրանքներով։ Վաշինգտոնի արկածախնդրական քաղաքականությունը, ծայր աստիճան սրելով միջազգային լարվածությունը, մարդկությանը հրում է դեպի միջուկային աղետ։



Միջազգային հարաբերությունների ողջ սրությամբ հանդերձ, ՍՄԿԿ-ն դարձյալ հաստատապես համոզված է, որ միջուկային խելահեղությունը կարելի է կասեցնել։ Եվ մեր կուսակցության համար չկա ավելի կարևոր խնդիր, քան խաղաղության պահպանումն ու կայունացումը։ Մենք հետևողականորեն պաշտպանում ենք խաղաղ գոյակցության և լարվածության թուլացման սկզբունքները։ Վերջին ժամանակներս Սովետական Միության, սոցիալիստական ընկերակցության մյուս երկրների առաջ քաշած նախաձեռնությունների լայն կոմպլեքսը վկայում է, որ սոցիալիզմը շարունակում է խաղաղ հարձակումը։

Համաշխարհային հասարակայնության վրա խոր ներգործություն են ունենում ընկեր Յու. Վ. Անդրոպովի ելույթները։ Դրանց փաստարկվածությունն ու սկզբունքայնությունը, հանգիստ ու վստահ տոնը խիստ հակադրության մեջ են Սպիտակ տան անպատասխանատու, ագրեսիվ հայտարարությունների հետ։ Եվ դրա հետ միասին այդ ելույթները դասակարգային հակառակորդին զգալ են տալիս մեր պետության հզորությունը, ՍՍՀՄ-ին այնպիսի զիջումների հարկադրելու դիտավորությունների ապարդյունությունը, որոնք սպառնալիքի տակ կդնեին մեր անվտանգությունը, սովետական մարդկանց, սոցիալիզմի եղբայրական երկրների աշխատավորների խաղաղ կյանքը։ Այդ դիրքորոշումը կրկին ողջ ուժով արտահայտվեց սովետական կառավարության վերջերս արած հայտարարության մեջ։

ՏԱՍՍ-ի, Նորությունների մամուլի գործակալության, հեռուստառադիոպետկոմի, արտաքին քաղաքական պրոպագանդայով զբաղվող մյուս գերատեսչությունների կարևորագույն խնդիրներն են հաստատակամորեն և համոզչորեն մասսաներին հաղորդել ճշմարտությունը մեր արտաքին քաղաքականության մասին, հասարակական կարծիքը նվաճել այդ քաղաքականության կողմը, մերկացնել իմպերիալիստական շրջանների պլանները։ ՍՄԿԿ Կենտկոմի միջազգային ինֆորմացիայի բաժինը պետք է հնարավորին չափ լավ փոխհամաձայնեցնի այդ ողջ աշխատանքը։

Մենք հիմք չունենք պաշտպանողական դիրք գրավելու սկզբունքային և ոչ մի հարցում։ Չի կարելի, սակայն, ասել, թե մեր արտաքին քաղաքական պրոպագանդան միշտ էլ բավականաչափ ակտիվ ու հմտորեն է բացահայտում սոցիալիզմի առավելությունները, թե նրան լիովին հաջողվում է հաղթահարել հակասոցիալիստական նախապաշարումների ցցապատնեշը, որով Արևմուտքի կառավարող շրջանները շրջափակում են ժողովուրդներին։ Եկեք մոլորության մեջ չընկնենք. եթե մենք մակերեսորեն ենք բացատրում որևէ իրադարձություն կամ դրա մասին հաղորդում ենք ուշացումով, ապա հարկ է լինում արդեն ոչ թե համոզել, այլ տարհամոզել, որ շատ ավելի դժվար է։

Հարկավոր է բարձրացնել արտասահմանյան լսարանին հասցեագրված նյութերի փաստարկվածությունն ու օպերատիվությունը, գրավչությունն ու հրապարակախոսական բնույթը, մատչելիորեն բացահայտելով մեր խաղաղասիրական ինտերնացիոնալիստական քաղաքականության կոնկրետ բովանդակությունը։ Առանց դրա չի կարելի տևական հաջողություններ ակնկալել արտաքին քաղաքական պրոպագանդայի ասպարեզում։

Այստեղ պետք է առաջին պլանում գտնվի սոցիալիզմի երկրների եղբայրական կապերի հետագա զարգացման նպատակով ՍՄԿԿ-ի և սովետական պետության ծավալած գործունեության լուսաբանումը։ Պետք է կատարելագործել կոմունիստական դաստիարակության փորձի փոխանակումը, մեր գաղափարախոսական համագործակցությունը, առկա ռեզերվներն ավելի լայնորեն օգտագործել իմպերիալիստական պրոպագանդայի դեմ, նացիոնալիզմի ու ռևիզիոնիզմի թունավոր սերմեր ցանելու փորձերի դեմ համատեղ պայքարելու համար։ Չի կարելի թուլացնել ուշադրությունը նաև ազատագրված պետությունների, իրենց ազատության ու անկախության համար մարտնչող ժողովուրդների հետ համերաշխությունն ամրապնդելու հարցերի նկատմամբ։ Մեր պրոպագանդայի մշտական թեման է կապիտալիստական երկրների հետ փոխշահավետ կապեր հաստատելու նպատակով կուսակցության հետևողական աշխատանքը։

Դասակարգային թշնամին բացեիբաց հայտարարում է, թե մտադիր է

ամբողջ պատմության ընթացքում առավել գրագետ, պրոֆեսիոնալ առումով առավել պատրաստված երիտասարդ սերունդը։ Նա մեծացել է սոցիալիզմի պայմաններում, բարեկեցության մշտական բարձրացման, խաղաղության պայմաններում։ Կոմունիստական իդեալներին, հեղափոխական ավանդույթներին հավատարիմ երիտասարդությունն աշխատում է հնգամյակի առաջավոր բնագծերում։ Մեր կարգերի ապագան հուսալի ձեռքերում է։

Բայց կուսակցությունը տեսնում է նաև երիտասարդության միջավայրում եղած բացասական երևույթները։ Անհանգստացնում են որոշ երիտասարդների ուշացած քաղաքացիական ձևավորումն ու քաղաքական միամտությունը, խնամառությունը, նրանց աշխատել չկամենալն այնտեղ, որտեղ այսօր դա հարկավոր է հասարակությանը։ Չի կարող տագնապ չպատճառել երիտասարդության մի մասի ձգտումը աչքի ընկնելու ոչ թե գիտելիքներով ու աշխատասիրությամբ, այլ ծնողների փողերով գնված թանկարժեք իրերով։ Այս բանը հիշատակում եմ բնավ ոչ նրա համար, որ փնթփնթամ ներկայիս երիտասարդության հասցեին. իբր հիմա նա այն չէ, ինչ էր առաջ։ Բանն ուրիշ է։ Նրանք, ովքեր այսօր նստում են դպրոցական նստարանի առջև, լուծելու են գալիք 21-րդ դարի շատ բարդ խնդիրները։ Եվ մենք ուզում ենք, որ նրանք այդ խնդիրները լուծեն իրենց ձիրքերի ծաղկման մեջ, բարոյական արատներից ազատ։

Բանը նաև այն է, որ մեր հակառակորդը ձգտում է իր նպատակների համար օգտագործել երիտասարդության հոգեբանության առանձնահատկությունները։ Չէ որ երիտասարդությունը սեփական, անձնական փորձով չգիտե դասակարգային պայքարի և պատերազմների դաժան փորձությունները, երբ ծայրահեղորեն մերկանում էին իմպերիալիզմի իսկական դեմքը, մեր երկրի ժողովուրդների, սոցիալիստական կարգերի հանդեպ նրա ատելությունը։ Ահա թե ինչու հարկավոր է անդուլ կերպով հոգալ երիտասարդության գաղափարաբարոյական, դասակարգային կոփման մասին։

Մեծ է այն դերը, որ այդ խնդիրների լուծման մեջ խաղում է դպրոցական ուսուցիչը։ Նա հասարակության վստահված անձն է մեր երեխաների դաստիարակության գործում, կուսակցության հուսալի հենարանը ագիտացիայում և պրոպագանդայում, ողջ գաղափարախոսական գործունեության մեջ։ Քաղաքացիական շատ հատկանիշների, այն գիտելիքների ակունքները, որոնք երկար տարիներ ծառայում են մարդուն, անբաժանելիորեն կապված են դպրոցական ուսուցիչների աշխատանքի հետ, իսկ նրանց թիվը մեզ մոտ, ընկերնե՛ր, հասնում է մոտավորապես երեք միլիոնի։ Մենք պետք է ամեն կերպ բարձրացնենք, պահպանենք ուսուցչի վարկը, մշտապես հոգանք նրա աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման, գաղափարական ու պրոֆեսիոնալ պատրաստման մասին։

Հարկ չկա ապացուցելու անհատի ընդունակությունների, ձիրքերի վաղ դրսևորման, մասնագիտության ճիշտ ընտրության նշանակությունը։ Դրանով է մեծապես պայմանավորված մարդու թե՛ աշխատանքի արտադրողականությունը, թե՛ սոցիալական ակտիվությունը և թե, եթե կուզեք, նրա կենսաճակատագիրը։ Այս իմաստով մեծ հնարավորություններ ունի պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության մեր սիստեմը։ Ցավոք, դպրոցներում հաճախ դա համարում են այսպես կոչված դժվար դեռահասներից ազատվելու միջոց։ Նման վերաբերմունքը վնասում է թե՛ դպրոցին և թե պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանին։ Հարկավոր է բարձրացնել ուսումնարանների հեղինակությունը, ամրապնդել դրանց նյութական բազան ու կադրերը, բարելավել ուսումնադաստիարակչական պրոցեսը։ Հարկ է խորհրդածել նաև բուհեր ընդունվելիս պրոֆտեխուսումնարանների շրջանավարտներին առավել գործուն արտոնություններ տալու սիստեմի շուրջը։

Այն մասին, թե ինչ կարող է տալ պրոֆտեխկրթության սիստեմը, համոզիչ վկայում է լենինգրադցիների փորձը։ Այստեղ բանվոր դասակարգի համալրման հիմնական աղբյուրը պրոֆտեխուսումնարանների սաներն են։ Նրանք համարյա ամենքը ինքնուրույն աշխատանքի առաջին ամիսներից կատարում են սահմանված նորմաները և, որպես կանոն, հաջողությամբ են ամրանում



աշխատավորական կոլեկտիվներում։ Մեծացել է ուսումնարաններ ընդունվելու երիտասարդության ձգտումը։

Ինչպե՞ս են ձեռք բերվել այդ արդյունքները։ Նախ և առաջ կուսակցության մարզային կոմիտեի նախաձեռնողական, կշռադատված գործունեությամբ, որը կարողացել է հստակ, գործնական հարաբերություններ հաստատել դպրոցի, պրոֆտեխուսումնարանի և ձեռնարկությունների միջև։ Այդ փորձը, անկասկած, արժանի է պաշտպանության ու տարածման։

Եվս մի ոչ պակաս կարևոր հարց՝ բուհերում և տեխնիկումներում հասարակագիտական առարկաների դասավանդման գաղափարական ներգործության բարձրացման հարցը: Այդ առարկաների դասատուի հենարանը պետք է լինեն ոչ թե պարզապես նրա ներկայացրած գիտության հեղինակությունը, այլ սեփական գաղափարական դիրքավորման հստակությունը, պրպտուն մտքի հմայքը, անհատի բարոյական գրավչությունը։ Ընդգծում եմ, այդպես պետք է լինի։ Բայց, ցավոք, միշտ չէ, որ այդպես է լինում։ Դեռևս կան այնպիսի դասատուներ, որոնք դասախոսությունները կարդում են ժամանակից խունացած կոնսպեկտներով, հմտորեն շրջանցելով սուր անկյունները։ Նման հռետորները, Մ. Ի. Կալինինի դիպուկ արտահայտությամբ, «հոյակապորեն քնացնում են լսարանը»։

Հարկավոր է ուղղակի ասել. ՍՍՀՄ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը թուլացրել է վերահսկողությունը հասարակագիտական կադրերի պատրաստման, հասարակագիտական առարկաների դասավանդման որակի նկատմամբ, բարձրագույն դպրոցի աշխատանքի մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումների կատարման նկատմամբ։ Մեզ լրիվ չափով չի գոհացնում նաև ժողովրդական տնտեսության առաջատար ճյուղերի համար մասնագետների պատրաստման մակարդակը։ Վիճակը անհրաժեշտ է շտկել։ Մինիստրության ղեկավարությունը, կուսակցական կոմիտեները պետք է նաև մշտապես հոգ տանեն, որ յուրաքանչյուր բուհական կոլեկտիվում տիրի ստեղծագործական որոնման, փոխադարձ հարգանքի և պահանջկոտության մթնոլորտ, օրինականության և բարոյականության ամեն տեսակ խախտումների նկատմամբ անհանդուրժողականության մթնոլորտ։

Երիտասարդության քաղաքական, քաղաքացիական, բարոյական հատկանիշների ձևավորման գործում շատ բան է անում կոմերիտմիությունը: Հանձին նրա կուսակցությունը տեսնում է հավատարիմ օգնականի, ըստ արժանվույն գնահատում նրա ծառայությունները։

Սակայն ոչ բոլոր կոմերիտական կազմակերպություններն են, որ գտնվում են իրենց առջև ծառացած խնդիրների բարձրության վրա։ Երբեմն նրանք մի կողմ են քաշվում երիտասարդությանն իսկապես հուզող կենսական պրոբլեմներից, չեն հասցնում ժամանակին արձագանքել երիտասարդության միջավայրում նկատվող նոր միտումներին, հետաքրքրություններին, դրանց հարկավոր գաղափարական ուղղվածությունը տալ։ Խանգարում են ծայրահեղ «կազմակերպվածությունը» և պարադային աղմկարարությունը։ Անբավարար է սկսված գործը մինչև վերջ հասցնելու, ո՛չ միայն բացառիկ պայմաններում, այլև սովորական, առօրյա իրադրության մեջ մեծ ինքնանվիրումով աշխատելու կարողությունը։ Այս պրոբլեմների վերացման համար պետք է լրջորեն աշխատեն ՀամԼԿԵՄ Կենտկոմը, ամբողջ կոմերիտական ակտիվը։

Երիտասարդության դաստիարակության և ուսուցման գործում գլխավորը Լենինը համարում էր կոմունիստական բարոյականության ձևավորումը։ Եվ հարկավոր է ավելի վառ կերպով բացահայտել մեր կոլեկտիվիստական բարոյականության իսկական հումանիզմը, աննահանջ կռիվ մղել հոգևոր դատարկության, եսամոլության, քաղքենիության դեմ, խորթ հայացքներն ու բարքերը մեր միջավայրը ներմուծելու ամեն տեսակ փորձերի դեմ։ Սոցիալիզմի և կոմունիզմի համար մղվող պայքարում միշտ մեր կողմն է եղել, և անվիճելի է բարոյական առավելությունը։ Այսօր էլ սովետական հասարակության բարոյական ուժը մեր հաջողությունների կարևոր պայմաններից մեկն է։

Կոմերիտմիության պատասխանատու խնդիրն է կուսակցությանն օգնել

երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակության հետագա բարելավման գործում։ Մենք ունենք այդ աշխատանքի հիանալի ավանդույթներ։ Հարկավոր է դրանք խնամքով պահպանել ու բազմապատկել, հաշվի առնելով այն իրողությունները, որ ծնում է միջազգային իրադրության ներկայիս վտանգավոր զարգացումը։ Այդ գործում միշտ անգնահատելի դեր են խաղացել հեղափոխության, պատերազմի և աշխատանքի վետերանները։

Այսօր հայրենասեր լինել՝ նշանակում է անդուլ կերպով ամրապնդել մեր հայրենիքի տնտեսական, պաշտպանական պոտենցիալը, բարձրացնել իմպերիալիստական ագրեսորի բոլոր ոտնձգություններից խաղաղությունը պաշտպանելու պատրաստությունը, բարեխղճորեն վերաբերվել զինվորական պարտականություններին։ Ամբողջությամբ վերցված, երիտասարդությունը լավ է կատարում բանակային ծառայությունը, հաստատակամորեն է տիրապետում ժամանակակից տեխնիկային։ Իսկ երբ պահանջում է հայրենիքը, ինտերնացիոնալ պարտքը, կատարում է հայրերի ու պապերի զինվորական փառքին արժանի իսկական սխրանքներ։

Ժողովուրդը մեր բանակն ու նավատորմը իրավամբ անվանում է արիության, աշխատասիրության և բարձր բարոյականության դպրոց։ Մենք պետք է այսուհետ ևս ամեն կերպ բարձրացնենք սովետական զինված ուժերի դաստիարակչական դերը։

Ընկերնե՛ր։ Հարյուրից ավելի ազգերի և ազգությունների միավորող մեր երկրի պայմաններում գաղափարախոսական աշխատանքը աներևակայելի է առանց նրանց յուրահատուկ շահերի, ազգային հոգեբանության և մշակույթի առանձնահատկությունների ուշադիր ուսումնասիրման։ Չէ որ ազգային հարցի լուծումն այն ձևով, ինչպես մեզ ժառանգություն էր մնացել անցյալից, բնավ չի նշանակում, թե ազգային հարցը ընդհանրապես հանված է օրակարգից։ Լավ կշռադատված, գիտականորեն հիմնավորված ազգային քաղաքականությունը զարգացած սոցիալիզմի կատարելագործման կուսակցության գործունեության անբաժանելի մասն է։ Եվ դրա հաջողության հիմնական պայմանը պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով աշխատավորներին դաստիարակելն է։

Այս գործունեության հիմնական ուղղությունները և խնդիրները սահմանված են XXVI համագումարի նյութերում, կուսակցական մյուս փաստաթղթերում։ Դուք դրանք լավ գիտեք։ Կուզենայի միայն հիշեցնել, թե որքան կարևոր է ժամանակին նկատել ազգային հարաբերություններում նոր դրական տեղաշարժերը, բազմակողմանիորեն վերլուծել ազգերի բարգավաճման ու մերձեցման միտումները, գտնել աշխատանքի այնպիսի ձևեր, որոնք ավելի մեծ ասպարեզ են բացում մեր ժողովուրդների մշակույթների փոխհարստացման համար։ Կարևոր է ժամանակին ի հայտ բերել նաև այստեղ ծագող պրոբլեմներն ու հակասությունները, հմտորեն լուծել դրանք։ Մի խոսքով, ինտերնացիոնալիստական դաստիարակության գործը հարկավոր է տանել լայնորեն, հաստատակամորեն, գործարար կերպով, չսահմանափակվելով փառատոներով, տասնօրյակներով և հոբելյանական հերթափոխներով։ Այստեղ հարկավոր է իսկական կուսակցական սկզբունքայնությունը հմտորեն զուգակցել նրբագույն փափկանկատության հետ։

Սովետական մարդկանց ինտերնացիոնալիզմը միշտ ակտիվ է։ Տարբեր ազգությունների հարյուր հազարավոր ներկայացուցիչներ են աշխատում հարվածային կառույցներում, ամենուրեք, որտեղ այդ պահանջում են համապետական շահերը։

Իհարկե, այդ ամենն ինքնիրեն չի արվում։ Օրինակի համար, մենք աշխատանքային ռեսուրսների ռեզերվներ ունենք երկրի որոշ շրջաններում։ Բայց առայժմ լրիվ չափով չի հաջողվում դրանք ներգրավել, ուղարկել այն վայրերը, որտեղ այսօր դրանք առանձնապես անհրաժեշտ են։ Մենք բոլորս պետք է մտածենք, թե ինչպես ավելի լավ լուծենք այդ պրոբլեմը։

Կամ վերցնենք մի այնպիսի պրոգրեսիվ երևույթ, ինչպիսին մեզ մոտ իր ազգության լեզվի հետ մեկտեղ ռուսաց լեզվին՝ ազգամիջյան հաղորդակցման լեզվին ազատ տիրապետելն է։ Դա լայն տարածում է գտել։ Բայց քիչ չեն այն



փաստերը, երբ ռուսաց լեզվի թույլ իմացությունը սահմանափակում է մարդու հաղորդակցումը ինտերնացիոնալ մշակույթի հարստություններին, նեղացնում է նրա գործունեության և շփման շրջանակը։ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը վերջերս որոշում ընդունեցին այնպիսի պայմանների ստեղծման վերաբերյալ, որոնք ազգային հանրապետությունների բնակչության համար դյուրացնեն ռուսաց լեզուն սովորելը։ Հարկավոր է այն ակտիվորեն կենսագործել։

Ես արծարծեցի ազգային հարաբերությունների ոլորտում ծագող պրոբլեմների միայն մի մասը։ Եվ դրանք բոլորը պահանջում են կուսակցական կոմիտեների, հասարակագիտության, գաղափարախոսական ակտիվի ուշադրությունը։ Հարկավոր է հասնել հայրենասիրական և ինտերնացիոնալիստական դաստիարակության օրգանական միացման, յուրաքանչյուրի մեջ ազգամիջյան հաղորդակցման բարձր կուլտուրայի, մեր սովետական հայրենիքի համար հպարտության զգացումի ձևավորման։

Չի կարելի թուլացնել աշխատանքը նաև բնակչության այնպիսի յուրահատուկ խմբի հետ, ինչպիսին հավատացյալներն են։ Կրոնի ազդեցության տակ դեռևս մնում է մարդկանց մի մասը և, ուղղակի ասենք, ոչ այնքան էլ փոքր մասը։ Իմպերիալիզմի բազմաթիվ գաղափարախոսական կենտրոններ ձգտում են ո՛չ միայն պահպանել, այլև արմատավորել կրոնասիրությունը, դրան տալ հակասովետական, նացիոնալիստական ուղղվածություն։ Առանձնակի հույս է դրվում կրոնական ծայրահեղականների վրա։ Միաժամանակ հերյուրանքներ են տարածվում «ՍՍՀՄ-ում խղճի ազատության խախտումների» մասին։

Ի՞նչ կարելի է ասել այդ առնչությամբ։ Խղճի ազատության մեր սահմանադրական երաշխիքներն ամենքին հայտնի են։ Կոմունիստները հետևողական աթեիստներ են, բայց իրենց աշխարհայացքը նրանք ոչ ոքի չեն պարտադրում։ Մեր մեթոդը լուսավորությունն է, համոզումը, պրոպագանդան։ Իսկ երբ մենք բախվում ենք սոցիալիստական օրենքների խախտման փաստերի, սոսկ կրոնով քողարկվող քայքայիչ քաղաքական գործունեության, ապա վարվում ենք այնպես, ինչպես պահանջում է մեր սահմանադրությունը։

Ինչպես արդեն ասվեց, դաստիարակչական աշխատանքում կայուն արդյունքներ են ձեռք բերվում այնտեղ, որտեղ այն ընդգրկում է մարդկանց կենսագործունեության բոլոր կողմերը, ներառյալ նրանց կենցաղը, ազատ ժամանակը, ընտանեկան հարաբերությունների ոլորտը։ Մարդկանց ազատ ժամանակը պետք է լինի ավելի հարուստ ու ավելի հետաքրքիր, օգնի մարդու ձիրքերի զարգացմանը, թեթևացնի այն հոգեբանական բեռնվածությունները, որ իր հետ բերում է ժամանակակից կյանքի ռիթմը։

Այստեղ չափազանց պատասխանատու դեր է պատկանում առողջապահության աշխատողներին։ Նրանց մեջ կան իսկապես անձնվեր և բանիմաց ոչ քիչ մարդիկ։ Նրանք շատ բան են անում հիվանդություններից մարդուն պահպանելու, նրա ակտիվ կյանքը երկարացնելու համար։ Հասկանալի է, որ այդ ոլորտը պահանջում է մշտական հոգատարություն և կատարելագործում, եղած թերությունների վերացում։

Իհարկե, մարդկանց առողջությունը, կենսական տոնուսը, տրամադրությունը միայն բժշկությունից չեն կախված։ Կարևոր է, որ յուրաքանչյուր մարդ, ընդ որում ոչ միայն աշխատանքի, այլև ազատ ժամանակ, զգա իր նկատմամբ ցուցաբերվող ուշադրությունը։ Այստեղ կոչված է մեծ դեր խաղալու մասնավորապես մասսայական ֆիզկուլտուրային շարժման զարգացումը։ Արտադրական կոլեկտիվների, տնային կառավարչությունների կուսակցական կազմակերպությունները, դեպուտատական խմբերը ըստ բնակության վայրի բնակչության հետ տարվող աշխատանքի հարուստ փորձ են կուտակել։ Հարկավոր է այն ընդհանրացնել, ընտրել ամեն լավագույնը և ավելի համարձակորեն ներդնել պրակտիկայում։ Օրինակ, մամուլում բազմիցս պատմվել է շրջանային կուլտուր-մարզական համալիրների ստեղծման մասին, որոնք տեղական սովետների ղեկավարությամբ միավորում են ակումբների, մարզական կառույցվածքների և գրադարանների աշխատանքը՝ անկախ դրանց գերատեսչական պատկանելությունից։ ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ՀԱՄԿԽ-ի հետ

Համատեղ կարող էր մտածել նաև այդ փորձի առավել լայն տարածման մասին։

Ազատ ժամանակի օգտագործման հարցերը սերտորեն միահյուսվում են հասարակական կարգի ամրապնդման, քաղաքացիների անդորրի և անձնական անվտանգության հուսալի ապահովման հարցերի հետ։ Կենտրոնական կոմիտեն խստորեն հաշիվ է պահանջում նրանցից, ում վստահված է այդ պատասխանատու գործը, և առաջին հերթին՝ միլիցիայի, դատարանի, դատախազության մարմիններից։ Իրավակարգի պահպանությունից մի կողմ չպիտի կանգնած լինի նաև հասարակայնությունը, հատկապես՝ կոմերիտմիությունը։

Թույլ տվեք արծարծել նաև գաղափարախոսական աշխատանքի «տեխնոլոգիան», դրա կազմակերպման և պլանավորման հարցերը։ Լավ է, որ սկսել են լայնորեն կիրառել կոմպլեքսային պլանները, որ դաստիարակության խնդիրներն ավելի սերտորեն են շաղկապվում կոնկրետ սոցիալ-տնտեսական պրոբլեմների լուծման հետ։

Սակայն պրոպագանդայում դեռևս չեն բավականացնում հետևողականությունն ու գործարարությունը։ Պատահում է, որ պրոպագանդիստական կամպանիայի մի ալիք գալիս է մյուսի վրա, ոչ թե ուժեղացնելով, այլ, ընդհակառակը, թուլացնելով ներգործության ուժը։ Կա նաև մի այսպիսի թերություն, կուսակցական կոմիտեների որոշ գաղափարախոսական բաժիններ շատ ժամանակ են ծախսում բազմաթիվ պլանների մշակման համար, որոնք այնուհետև մնում են դրանք ստեղծողների սեղանների դարակներում։ Ամեն կարգի դիրեկտիվների, պահանջագրերի, հաշվետվությունների և տեղեկանքների հեղեղը ամուր կերպով ծառայողական բազկաթոռին է գամում կուսկազմակերպությունների քարտուղարներին, նրանց կտրելով մարդկանց հետ տարվող կենդանի աշխատանքից։ Նման գրասենյակային ոճից հարկավոր է հրաժարվել և որքան կարելի է ավելի շուտ։

Այսօր, երբ ստեղծվում են գյուղատնտեսական արտադրության կառավարման նոր կառուցվածքներ, առանձնակի հրատապություն են ստանում կուսակցության գյուղական շրջկոմի գաղափարախոսական և կազմակերպչական աշխատանքի ոճի ու մեթոդների կատարելագործման հարցերը։

Ուսանելի է Տալսի շրջկոմի փորձը Լատվիայում, Վիլյանդիի և Պյառնուի շրջկոմներինը՝ Էստոնիայում, Աբաշայի շրջկոմինը՝ Վրաստանում։ Նրանք ագրոարդյունաբերական միավորումների ստեղծմանը մոտեցան ամենից առաջ որպես միասնական նպատակով, միասնական շահով, ընդհանուր աշխատանքի վերջնական արդյունքների համար պատասխանատվությամբ կապված մարդկանց նոր հարաբերությունների ձևավորման պրոբլեմի։ Այդ խնդրին են ենթարկված սոցիալիստական մրցությունը, շրջանային թերթի ու ռադիոյի գործունեությունը, բանավոր ագիտացիան և պրոպագանդան։ Առանձնակի հոգատարություն է ցուցաբերվում մարդկանց սոցիալական և կուլտուրական պահանջմունքների բավարարման, արտադրության կառավարման գործում դեմոկրատական հիմունքների զարգացման նկատմամբ։ Բուն կյանքով ստուգված նման փորձին հարկավոր է ավելի հաճախ դիմել։

Ամեն ոք ուզում է տեսնել իր աշխատանքի պտուղները, իմանալ դրա հասարակական գնահատականը։ Գաղափարախոսական կադրերը բացառություն չեն։ Նրանց գործունեությունը վերջին հաշվով չափվում է մարդկանց գաղափարական հասունությամբ, աշխատանքային ակտիվությամբ, կազմակերպվածությամբ։ Բայց դրա համար հարկավոր է, ինչպես ասում են, շատ ջանք թափել։ Եվ այդ աշխատանքի հետ ընդհանուր ոչինչ չունեն իրարանցումը, կադրերին անհարկի անհանգստացնելը, դաստիարակության իրական արդյունքները կարդացված դասախոսությունների, անցկացված միջոցառումների քանակի մասին ամփոփագրերով փոխարինելու փորձերը։ Այդ մոլախտերը հարկավոր է արմատախիլ անել ամենուրեք, դրանց երևալուն պես։ Գործարար, ստեղծագործական ոճի հաստատման բնագավառում կուսակցական կոմիտեներն իրավունք ունեն ակնկալելու Կենտկոմի պրոպագանդայի բաժնի ավելի ակտիվ օգնությունը։



Չի կարելի գաղափարախոսական գործունեությունն արդյունավետորեն վարել, չունենալով հետադարձ կապի հստակ գործող մեխանիզմ։ Այլապես պրոպագանդան ապարդյուն կգործի։

Կուսակցությունն ունի ճկուն, օպերատիվ կապի շատ միջոցներ, որը թույլ է տալիս հստակորեն որսալ մասսաների տրամադրության փոփոխությունները, խորապես ուսումնասիրել նրանց շահերն ու պահանջմունքները։ Դրանցից են աշխատավորների ելույթներն ու նամակները, դասախոսներին ու պրոպագանդիստներին ուղղված հարցերը, սոցիոլոգիական հետազոտությունները։ Նման աշխատանքի հետաքրքրական փորձ է կուտակված Ադրբեջանում, Բելոռուսիայում, Վրաստանում, Լատվիայում, Ուզբեկստանում, ՌՍՖՍՀ-ի և Ուկրաինայի մի շարք մարզկոմներում։ Հարկավոր է այդ փորձը զարգացնել։ Գաղափարախոսական պրոցեսների վիճակի գնահատումներից հարկավոր է անցնել դրանց կանխագուշակմանը, հասարակական կարծիքի անջատ-անջատ հետազոտություններից՝ սիստեմատիկ հետազոտությունների, իսկ հնարավոր է նաև՝ հասարակական կարծիքի ուսումնասիրման կենտրոնի կազմակերպման։

Հասունացել է նաև քաղաքական լուսավորության, ողջ պրոպագանդիստական աշխատանքի գիտամեթոդական բազայի հետագա ամրապնդման պահանջը։ Առայժմ բացահայտորեն պակասում են խորությունը, պլանաչափությունը հոգևոր գործունեության այդ ոլորտի սոցիոլոգիական, հոգեբանական, մանկավարժական պրոբլեմների մշակման գործում։ Թույլ է ընդհանրացվում նաև այդ բնագավառում կուտակված շատ հարուստ փորձը։ Կարծում եմ, ճիշտ կլիներ, եթե պլենումը Կենտկոմի քարտուղարությանը հանձնարարեր քննության առնել այդ հարցը և ընդունել համապատասխան որոշում։

Նշելով պրոպագանդայի բովանդակության առաջատար դերը, չի կարելի թերագնահատել նաև դրա ձևերի նշանակությունը։ Այդ բանին ուշադրություն դարձրեց ՍՄԿԿ XXVI համագումարը։ Եվ մենք տեսնում ենք, որ աշխատանքի այնպիսի ձևեր, ինչպիսին են մեթոդաբանական սեմինարները, «բաց նամակի օրերը» և հեռուստատեսային երկխոսությունները, մեծացնում են հետաքրքրությունը պրոպագանդայի նկատմամբ, թույլ են տալիս սրտաբաց խոսակցություն վարելու լսարանի հետ։

Բայց դեռ չեն վերացել երկար և ձանձրալի, խրատական մենախոսությունները։ Նկատելիորեն թուլանում է մշտապես գործող ագիտկետերի ձգողական ուժը, չխոսելով արդեն այն կետերի մասին, որոնք փաստորեն մշտապես անգործության են մատնված։ Չի գործում դիտողական ագիտացիայի մի զգալի մասը, որը, ի դեպ ասած, կլանում է ոչ քիչ հասարակական միջոցներ, նաև ժամանակ։ Մի խոսքով, հնացած ձևերի իներցիան դեռևս իրեն զգալ է տալիս։

Հասկանալի է, պրոպագանդայի ձևն ինքնըստինքյան դեռ չի երաշխավորում հաջողությունը։ Այսպես, իրենց որպես մասսայական-քաղաքական աշխատանքի լավ ձև են դրսևորել միասնական քաղօրերը։ Բայց հայտնի է, որ մի շարք վայրերում դրանց բովանդակությունը բացահայտորեն աղքատացվում է։ Երբեմն ղեկավար աշխատողներին փոխարինում են դասախոսներն ու քաղինֆորմատորները, հրատապ պրոբլեմների աշխույժ քննարկման փոխարեն ընթերցվում կամ վերապատմվում են ընդհանուր քաղաքական տեքստեր։

Ինչո՞ւ են որոշ ղեկավարներ խուսափում այդ աշխատանքից։ Որովհետև աշխատավորների շատ հարցեր պահանջում են ո՛չ միայն պարզաբանում, ո՛չ միայն հռետորական արվեստ, այլև՝ գործնական միջոցներ։ Եվ երբ դրանք մշտապես հետաձգվում են վաղվան, առաջանում է մի կողմից՝ լսարանի անբավարարվածություն, իսկ մյուս կողմից՝ որոշակի «երկչոտություն», հրապարակային ելույթների վախ։

Չի կարելի խուսափել մարդկանց հետ անկեղծ խոսակցությունից։ Ընդորում հարկավոր է ո՛չ միայն կարողանալ պարզաբանել մեր քաղաքականությունը, սովորեցնել մասսաներին, այլև կարողանալ սովորել մասսաներից, ինչպես ասում են, լիցք ստանալ մասսաներից։ Դա պետք է լինի յուրաքանչյուր ղեկավարի ո՛չ միայն պարտականությունը, այլև պահանջմունքը։ Քաղա-

քական ելույթները, աշխատավորների առջև կանոնավոր գործնական հաշվետվությունները այն փորձաքարն են, որով լավ են ստուգվում ղեկավարի հատկությունները, մարդկանց կազմակերպելու, իր ետևից տանելու նրա ընդունակությունը: Հարցն այսպես էր դնում Լենինը: Հարցն այսպես է դնում մեր կուսակցության Կենտկոմը:

Առանց լայն հրապարակայնության աներևակայելի է սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը: Դուք գիտեք այն միջոցառումների մասին, որ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն ձեռնարկել է իր գործունեության վերաբերյալ ավելի լրիվ ինֆորմացիա տալու նպատակով: Մենք կշարունակենք այդ գիծը, ապահովելով առավել հնարավոր հրապարակայնությունը մարդկանց շահերը շոշափող հարցերում: Ըստ երևույթին հարկավոր է պարտադիր բնույթ տալ հեռուստատեսությամբ և մամուլում մինիստրությունների ու գերատեսչությունների, կուսակցական կոմիտեների ղեկավարների սիստեմատիկ ելույթներին:

Գաղափարախոսական աշխատանքի հիմնական օղակը կադրերն են: Նրանք շատ ջանք, բոլշևիկյան կրքոտություն են հանդես բերում պրոպագանդայի գործում: Կուսակցությունը հավատում է իր կադրերին, բարձր է գնահատում նրանց ազնիվ, անձնվեր աշխատանքը: Կուսակցությունը պաշտպանում է նրանց ստեղծագործական որոնումը, մշտական հոգատարություն ցուցաբերում նրանց գաղափարատեսական գիտելիքների և պրոֆեսիոնալ վարպետության բարձրացման նկատմամբ, նրանց ժամանակին ինֆորմացիա տալու նկատմամբ: Ստեղծվել է գաղափարախոսական աշխատողների բոլոր կատեգորիաների պատրաստման ու վերապատրաստման կուռ սիստեմ: Հարկավոր է այսուհետ ևս կատարելագործել այդ սիստեմը, ելնելով այն ավելի բարձր պահանջներից, որ այսօր ներկայացնում է Կենտրոնական կոմիտեն: Վստահ եմ, որ գաղափարախոսական կադրերն ամեն ինչ կանեն մեր իդեալների վեհությունը, մարդկանց կենսական շահերի հետ կուսակցական քաղաքականության անխզելի կապը է՛լ ավելի վառ կերպով բացահայտելու, աշխատավորների ակտիվությունը է՛լ ավելի բարձրացնելու համար:

Ընկերնե՛ր:

Մեր պլենումը գումարվել է ՌՍԴԲԿ II համագումարի 80-ամյակի նախօրեին: Փառավոր և դրա հետ մեկտեղ ոչ դյուրին ուղի է անցել բոլշևիկների կուսակցությունը: Մարքս-լենինյան ուսմունքով զինված կուսակցությունը, հենվելով բանվոր դասակարգի վրա, բոլոր աշխատավորների աջակցության վրա, գլխավորեց համաշխարհային պատմական հեղափոխությունը և մեր ժողովրդին հասցրեց մեծ հաղթանակների:

Կոմունիստական կուսակցության անցած հերոսական ուղու գլխավոր արդյունքներից մեկը կուսակցական շարքերի անխախտ միասնությունն է, Կենտրոնական կոմիտեի և նրա ղեկավար միջուկի միասնությունը: Եվ այդ միասնությունը, Լենինի խոսքերով ասած, «անսահմանորեն թանկ է, անսահմանորեն կարևոր»:

Կենտրոնական կոմիտեի և նրա քաղբյուրոյի համախմբվածության, կուսակցության և ժողովրդի միասնության օրինակ տվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումը: Այն ծանր օրերին Կենտկոմը դիմեց կոմունիստներին, բոլոր սովետական մարդկանց՝ կոչ անելով է՛լ ավելի սերտորեն խտացնել իրենց շարքերը, հանգիստ ու վստահորեն իրականացնել կուսակցության XXVI համագումարի նախանշած կուրսը: Եվ այդ կոչը խոր արձագանք գտավ միլիոնավոր մարդկանց սրտերում:

Հստակորեն, ներդաշնակորեն, բարձր սկզբունքայնության, լիակատար ու իսկական միասնության մթնոլորտում են աշխատում ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն և քարտուղարությունը: Նրանց նիստերում ստեղծված են բոլոր պայմանները ներքին ու արտաքին քաղաքականության հարցերի ազատ քննարկման ու վերջնամշակման համար, կարծիքների ընկերական փոխանակման համար:



Ավարտելով զեկուցումը՝ ես կուզենայի մի անգամ ևս նշել գաղափարախոսական գործունեության յուրաքանչյուր տեղամասում ծառացող խնդիրների բարդությունը, բազմազանությունը: Այստեղ չկան ու չեն կարող լինել մեկընդմիշտ ընդունվող, բոլոր ժամանակների համար պիտանի որոշումներ: Այստեղ ոչինչ չեն տա կամպանիականությունը և գրոհայնությունը: Հարկավոր է տրամադրվել սիստեմատիկ, անընդմեջ աշխատանքի: Մենք անհրաժեշտ ամեն ինչ ունենք, որպեսզի այն դարձնենք մասսաների նախաձեռնության, եռանդի, գիտակցականության զարգացման ավելի արդյունավետ միջոց: Եվ մենք անպայման կհասնենք դրան, եթե յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր ղեկավար հետևողականորեն կենսագործի լենինյան սկզբունքը՝ գաղափարախոսական աշխատանքը ամբողջ կուսակցության գործն է:

Չկա ու չի կարող լինել ավելի ազնիվ խնդիր, քան կոմունիզմի իդեալները, Մարքսի—Էնգելսի—Լենինի անմար գաղափարները մարդկանց հասցնելը:

Չկա ու չի կարող լինել ավելի վեհ խնդիր, քան յուրաքանչյուր մարդուն ւեփական բախտը կերտողի, պատմությունը կերտողի մակարդակին հասցնելը:

Թույլ տվեք քաղբյուրոյի անունից վստահություն հայտնել, որ պլենումի ընթացքում, ընկերների ելույթներում խորապես ու բազմակողմանիորեն քննության կառնվեն գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հրատապ հարցերը, կընդհանրացվի կուտակված փորձը, իսկ որ գլխավորն է՝ կոլեկտիվ կերպով կնշվեն մեր առջև կանգնած խնդիրների հաջող լուծման կոնկրետ ուղիները: Հենց դա էլ կլինի այն գործարարությունը, որին կոչում է Յու. Վ. Անդրոպովը, գործարարություն, այլ ոչ թե մեծաղորդ խոսքեր: (Երկարատև ծափահարություններ):

## ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ, ՄԱՍՍԱՅԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀՐԱՏԱՊ ՀԱՐՑԵՐԸ

Լսելով և քննարկելով ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի զեկուցումը, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը նշում է, որ երկրի գաղափարաքաղաքական իրադրությունը բնորոշվում է Սովետական Միության կոմունիստական կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի, Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովի գլխավորած Կենտկոմի քաղբյուրոյի շուրջը սովետական մարդկանց հետագա համախմբմամբ: Մեր երկրի աշխատավորները միահամուռ պաշտպանում են ՍՄԿԿ-ի ներքին և արտաքին քաղաքականությունը, արտադրությունն ինտենսիվացնելու, ժողովրդի նյութական բարեկեցությունն ու կուլտուրան բարձրացնելու, սոցիալիստական դեմոկրատիան խորացնելու, սովետական ապրելակերպի հիմքերն ամրապնդելու, խաղաղությունը պահպանելու, ջերմամիջուկային պատերազմը կանխելու կուսակցության կուրսը: Նրանք կոնկրետ գործերով են պատասխանում կարգապահությունը և կարգուկանոնը համակողմանի ամրապնդելու, ավելի կազմակերպված ու արդյունավետ աշխատելու, ՍՄԿԿ XXVI համագումարի, Կենտկոմի 1982 թվականի մայիսյան և նոյեմբերյան պլենումների որոշումները հաջողությամբ կատարելու կուսակցության կոչին:

Սովետական հասարակությունը թևակոխել է այնպիսի մի փուլ, երբ արտադրաուժերում հասունացել են որակական խոր փոփոխություններ և դրան համապատասխան արտադրահարաբերությունների կատարելագործումը: Դրա հետ փոխադարձ սերտ կապով պետք է փոփոխություններ տեղի ունենան նաև մարդկանց գիտակցության մեջ, հասարակության ողջ վերնաշենքում: Կուսակցության և ժողովրդի ջանքերը կենտրոնացվում են զարգացած սոցիալիզմի պլանաչափ ու բազմակողմանի կատարելագործման խնդիրների վրա, որոնց իրագործումն ուղղակի պայմանավորված է աշխատավորների գիտակցականության և ակտիվության մակարդակով: Գաղափարախոսական աշխատանքն ավելի մեծ չափով է առաջին պլան մղվում, մեծանում են դրա դերն ու նշանակությունը: Նոր խնդիրներ լուծելիս, սովորեցնում էր Վ. Ի. Լենինը, «քաղաքական տեսակետից հենց մասսաների նախապատրաստումն է ամենակարևորը»:

Հարկավոր է նաև նկատի ունենալ, որ միջազգային ասպարեզում տեղի է ունենում երկու հասարակական սիստեմների, բևեռայնորեն հակադիր երկու աշխարհայացքների պայքարի խիստ, ողջ հետպատերազմյան ժամանակաշրջանում աննախադեպ սրում: Ռեալ սոցիալիզմի պատմական նվաճումները, համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման հեղինակության և ազդեցության աճը, գաղութային լուծը թոթափած երկրների պրոգրեսիվ զարգացումը, ազգային-ազատագրական պայքարի վերելքը, հակապատերազմական շարժման վիթխարի թափը առ ավելի խոր կերպով են ներգործում ժողովուրդների գիտակցության վրա ողջ աշխարհում: Իմպերիալիստական հետադեմ ուժերը, ամենից առաջ ԱՄՆ-ի կառավարող վերնախավը, նյութելով համաշխարհային տիրապետության զառանցական պլաններ, իրենց ագրեսիվ քաղաքականությամբ մարդկությանը հրում են դեպի միջուկային աղետի եզրը: Սովետական Միության, սոցիալիզմի երկրների դեմ մղվում է իր մասշտաբներով և լպիրշությամբ աննախադեպ հոգեբանական պատերազմ: Չխորշելով կեղծիքից ու զրպարտությունից՝ բուրժուական պրոպագանդան ձգտում է վարկաբեկել սոցիալիստական կարգերը, խարխլել մեր հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությունը: Ուստի այսօր առանձնահատուկ կարևորություն են ստանում աշխատավորների դասակարգային կոփումը, բուրժուական գաղափարախոսության դեմ անզիջում պայքարը:

Պլենումը դրականորեն է գնահատում դաստիարակության և պրոպագանդայի գործի բարելավման այն աշխատանքը, որ կատարել են կուսակցական կազմակերպությունները ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներին, Կենտկոմի 1979 թվականի ապրիլի 26-ի որոշմանը համապատասխան: Դրա հետ մեկտեղ պլենումը նշում է, որ այդ ոլորտում եղած լուրջ թերությունները լրիվ չափով չեն վերացված, ոչ բոլոր կուսակցական կոմիտեներն են պատշաճ ուշադրություն նվիրում դրան: Դեռևս զգացվում են այնպիսի անհանդուրժելի երևույթներ, ինչպիսին են պրակտիկայի պահանջմունքներից կտրվելը, ձևամոլությունը և պարադայնությունը: Գաղափարախոսական գործունեության հետագա կատարելագործումը, դրա արդյունավետության բարձրացումը կուսակցության կարևորագույն խնդիրներից մեկն է:

I.

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն միահամուռ հավանություն է տալիս պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովի արտասանած ճառում բովանդակվող ծրագրային դրույթներին ու հետևություններին և գտնում է, որ դրանք պետք է դրվեն կուսակցական կազմակերպությունների ողջ գործունեության հիմքում:

Գաղափարախոսական, դաստիարակչական, պրոպագանդիստական աշխատանքն անհրաժեշտ է վճռականորեն բարձրացնել այն մեծ ու բարդ խնդիրների մակարդակին, որոնք կուսակցությունը լուծում է զարգացած սոցիալիզմի կատարելագործման պրոցեսում: Մասսայական-քաղաքական աշխատանքը կոչված է ամրապնդելու կուսակցության և ժողովրդի միասնությունը, բարձրացնելու աշխատավորների կոմունիստական համոզվածությունը, քաղաքական ակտիվությունը, զարգացնելու նրանց ստեղծագործական եռանդը: Կոմունիստների և մեր սոցիալիստական հասարակության բոլոր անդամների գիտակցության ձևավորումը միայն գաղափարախոսական աշխատողների խնդիրը չէ: Դա ողջ կուսակցության գործն է:

Գաղափարախոսական աշխատանքի ներգործունությունը բարձրացնելու համար մենք ունենք անհրաժեշտ ամեն ինչ: Դրանք սոցիալիզմի ռեալ նվաճումներն են, որոնք համաշխարհային պատմական նշանակություն ունեն, դա մեր հեղափոխական մեծ ուսմունքն է, կոմունիստական դաստիարակության ստեղծված սիստեմն ու կուտակված փորձը, ինֆորմացիոն-պրոպագանդիստական հզոր ապարատը, որակյալ, կուսակցության գործին նվիրված գաղափարախոսական կադրերը: Հարկավոր է ավելի արդյունավետ օգտագործել լուսավորության և դաստիարակության միջոցների հարուստ զինանոցը, դրանք կիրառել ավելի ակտիվորեն, ստեղծագործաբար, մանավորապես հաշվի առնելով սովետական մարդկանց կրթվածության և պահանջմունքների զգալիորեն աճած մակարդակը: Անհրաժեշտ է գաղափարադաստիարակչական աշխատանքը հետևողականորեն խարսխել կուսակցության սոցիալ-տնտեսական քաղաքականության ամուր հիմքի վրա: Այդ աշխատանքը պետք է հագեցված լինի այսօրվա կյանքի իրողությունների հետ սերտորեն կապված և հետագա առաջընթացի ուղին նշող խոր գաղափարներով:

Գաղափարադաստիարակչական աշխատանքի, ինչպես նաև կուսակցության ողջ քաղաքականության ուժը նրա գիտական հիմնավորվածությունն է, ամենաառաջավոր, մշտապես զարգացող մարքս-լենինյան տեսության վրա հենվելը: ՍՄԿԿ-ի կոլեկտիվ միտքը գիտական կոմունիզմը հարստացրեց զարգացած սոցիալիզմի մասին ուսմունքով:

Կուսակցությունը սահմանեց, որ սովետական հասարակությունը գտնըվում է պատմականորեն տևական այդ փուլի սկզբում, բացահայտեց դրա զարգացման ռեալ դինամիկան: Դա պահանջում է ակտիվացնել գիտական որոնումը, ապահովել գիտական հիմնարկությունների, բոլոր հասարակագետ գիտնականների վճռական շրջադարձը դեպի երկրի առջև ծառացած հիմնական գործնական խնդիրները:

Կուսակցությունը և պետությունը, տնտեսագետներից, փիլիսոփաներից, պատմաբաններից, սոցիոլոգներից, հոգեբաններից, իրավագետներից սպասում են արտադրության արդյունավետության բարձրացման հուսալի ուղիների մշակումներ, հասարակության անդասակարգ կառուցվածքի ձևավորման, սոցիալական կյանքի ինտերնացիոնալացման, սոցիալիստական ժողովրդավարության, հասարակական գիտակցության զարգացման օրինաչափությունների, կոմունիստական դաստիարակության պրոբլեմների հետազոտություններ: Առանձնապես հրատապ են այնպիսի հարցեր, ինչպիսին են գիտատեխնիկական առաջընթացի խթանումը, կառավարման և պլանավորման սիստեմի բարելավումը, համաժողովրդական, պետական շահերի առաջնության ապահովումը, բաշխման հարաբերությունների կատարելագործումը, գիտականորեն հիմնավորված գնագոյացման սկզբունքները և այլն: Հարկավոր է ավելի լայնորեն ուսումնասիրել սոցիալիզմի եղբայրական երկրների փորձում եղած ողջ լավագույնը:

Անհրաժեշտ է միջազգային հարաբերություններում, համաշխարհային սոցիալիզմի զարգացման մեջ, համաշխարհային հեղափոխական պրոցեսում ընթացող նոր երևույթների, կապիտալիստական սիստեմի ընդհանուր ճգնաժամի նոր ասպեկտների ու կողմերի խոր վերլուծություն: Գիտական մշակումները պետք է վերածվեն գործնական հանձնարարականների, պետք է տան հիմնավորված սոցիալական կանխատեսումներ:

Պրոպագանդայի և ագիտացիայի կարևորագույն խնդիրներից մեկն է ըստ ամենայնի նպաստել ժողովրդատնտեսական արմատական պրոբլեմների լուծմանը. արտադրության ինտենսիվացմանը, գիտության ու տեխնիկայի նվաճումների արագ ներդրմանը, պարենային և էներգետիկ ծրագրերի իրականացմանը, երկրի արտադրական պոտենցիալի ռացիոնալ օգտագործման ապահովմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը և դրա հիման վրա՝ մեր հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդմանը, ժողովրդի բարեկեցության աճին:

Պետական պլանների կատարման, արտադրանքի որակի բարձրացման, արտադրական կարողությունների, հումքի, էներգիայի, աշխատաժամանակի, կապիտալ ներդրումների ավելի լավ օգտագործման, կազմակերպվածության և պատասխանատվության ամրապնդման համար մղվող պայքարում, քարացածության և բյուրոկրատիզմի, գերատեսչականության ու տեղայնության դեմ մղվող պայքարում ձևավորվում են սոցիալիստական աշխատավորի քաղաքացիական հատկությունները, ընդհանուրի բարօրության օգտին բարեխղճորեն աշխատելու պահանջմունքը: Հարկավոր է պրոպագանդայի բոլոր միջոցներով պաշտպանել արտադրության նորարարների ձեռնարկումները, մասսայականացնել այնպիսի կազմակերպական, տնտեսական, բարոյական միջոցներ, որոնք ղեկավարներին և բանվորներին, գիտնականներին և կոնստրուկտորներին մղեին նորացնելու տեխնիկան և նպաստեին ձեռքի աշխատանքի կրճատմանը: Տնտեսագիտական պրոպագանդան և տնտեսագիտական դաստիարակությունն ամբողջովին ենթարկել ժողովրդական տնտեսության ինտենսիվացման պահանջմունքներին, ժամանակակից տնտեսական մտածողության, սոցիալիստական ձեռներեցության և գործարարության մշակմանը: Ձեռնարկություններում տնտեսագիտական ուսուցումը կազմակերպել արտադրական ուսուցման հետ սերտորեն կապված, այն համարել արտադրության արդյունավետության բարձրացման միջոցներից մեկը:

Կոմունիստական դաստիարակության անսասան հիմքը մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորումն է: Կարևոր է հասնել այն բանին, որ բոլոր կոմունիստները, աշխատավորները խորապես յուրացնեն Մարքսի, Էնգելսի,



Լենինի հեղափոխական ուսմունքը, որը տալիս է հասարակական զարգացման ամենաբարդ պրոբլեմների ըմբռնման և լուծման բանալին: Կենտրոնական կոմիտեն անհրաժեշտ է համարում բարելավել մարքսիզմ-լենինիզմի, կուսակցության պատմության և քաղաքականության, սոցիալիզմի համար մղվող պայքարի տարբեր փուլերում նրա գործունեության փորձի պրոպագանդումը: Հարկավոր է փոխել կուսակցական լուսավորության, մասսայական-քաղաքական ուսուցման ցանցի աշխատանքի ոճը: Ըստ ամենայնի զարգացնել պարապմունքների ակտիվ ձևերը, դրանց տալ ավելի մեծ գործնական ուղղվածություն, արմատախիլ անել տիրացուականությունը և ձևամոլությունը: Քաղաքական ուսուցման իմաստն այն է, որ ամեն ոք խորապես հասկանա կուսակցության քաղաքականությունը, կարողանա ստացած գիտելիքները կիրառել պրակտիկայում, պարզ պատկերացնի և գործնականորեն կատարի իր հասարակական պարտքը: Կատարելագործել պրոպագանդիստների ընտրությունը և ուսուցումը, ավելի լայնորեն օգտագործել կոմունիստների քաղաքական ինքնակրթության մեթոդը: Նպատակահարմար համարել քաղաքական լուսավորության համամիութենական տան ստեղծումը: Ապահովել ուսումնական հաստատություններում հասարակագիտական առարկաների դասավանդման գաղափարատեսական մակարդակի բարձրացումը, ըստ ամենայնի զարգացնել դրանց ուսումնասիրման նկատմամբ հետաքրքրությունը, ուժեղացնել հասարակագետ դասախոսների պատրաստման որակի նըկատմամբ վերահսկողությունը: Մշակել մարքսիզմ-լենինիզմի նոր դասագրքեր և ուսումնական ձեռնարկներ:

Սովետական մարդու գաղափարական համոզվածության աղբյուրը մեր գործի պատմական ճշմարտացիությունն է, մարքս-լենինյան ուսմունքի հեղափոխական վերափոխիչ բնույթը, սոցիալիստական կարգերի առավելությունները: Հարկավոր է վառ կերպով բացահայտել ՍՍՀՄ-ի քաղաքացիների քաղաքական իրավունքներն ու ազատությունները, մեր հասարակության սոցիալական և հոգևոր հասումները: Տեսության մեջ նշված մեծ նպատակը՝ շահագործման ու ճնշման ոչնչացումը, որի մասին երազել են կոմունիստների սերունդները, մարդկության լավագույն մտածողները, արդեն վաղուց դարձել է սովետական հասարակության իրողությունը: Ներկայումս պրակտիկ քաղաքականության գործը դասակարգային տարբերությունների վերացումն է, հասարակության սոցիալական միատարրության գոյավորումը: Գաղափարադաստիարակչական աշխատանքի կարևոր խնդիրն է հասնել այն բանին, որ բանվոր դասակարգի հեղափոխական գաղափարախոսությունը և բարոյականությունը, նրա կոլեկտիվիստական հոգեբանությունը, շահերն ու հայացքները որոշեն բոլոր սովետական մարդկանց հոգևոր կերպարը: Պրոպագանդելով սոցիալիզմի հաջողությունները, անհրաժեշտ է դրա հետ մեկտեղ ցույց տալ մեր զարգացման պրոցեսում ծագող դժվարությունների հաղթահարման ուղիները:

ՍՍՀՄ ազգերի և ազգությունների եղբայրական դաշինքը, նրանց համատեղ աշխատանքը, ազգային կուլտուրաների առաջադիմող մերձեցումը, փոխհարստացումը սովետական ժողովրդի համախմբվածության ամրապնդման, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակության խնդիրների հաջող լուծման կարևորագույն գործոններն են: Հարկավոր է այդ դաստիարակությունը տանել լայնորեն, հատատակամորեն, հայրենասիրական դաստիարակության հետ օրգանապես շաղկապված, հանդես գալ կուսակցական սկզբունքայնության դիրքերից, ազգային սահմանափակվածության կամ ազգային նիհիլիզմի ամեն տեսակ դրսևորումների նկատմամբ անհաշտվողականության դիրքերից, խնամքով վերաբերվել բոլոր ազգությունների մարդկանց զգացմունքներին և արժանապատվությանը:

Անհրաժեշտ է ավելի ակտիվ պրոպագանդել գիտամատերիալիստական հայացքները բնակչության շրջանում, ավելի մեծ ուշադրություն նվիրել աթեիստական դաստիարակությանը: Հավատացյալներին ավելի լայնորեն

ներգրավել հասարակական կյանքի մեջ, ավելի հաստատակամորեն արմատավորել սովետական ծեսերը:

Հարկավոր է հմտորեն և ստեղծագործաբար պրոպագանդել սովետական ապրելակերպը, սոցիալիզմի հիմնարար արժույթները: Հարկավոր է պաշտպանել հասարակական պրակտիկայում եղած ամենաառաջավորը, հաստատել և վառ կերպով բացահայտել աշխատավոր մասսաների կյանքի նոր որակը, որը ներառնում է կոլեկտիվիզմն ու ընկերականությունը, բարոյական առողջությունն ու սոցիալական լավատեսությունը, վաղվա օրվա հանդեպ յուրաքանչյուր մարդու վստահությունը, աշխատանքի և սպառման, վարքի ու կենցաղի բարձր կուլտուրան: Դաստիարակչական աշխատանքում հաջողությունն աներևակայելի է առանց բաշխման սոցիալիստական սկզբունքի խստիվ կիրառման, սպառման հանրային փոնդերի ճիշտ օգտագործման համար մղվող հետևողական պայքարի:

Սոցիալիստական գիտակցության ամրապնդումը տեղի է ունենում մանրբուրժուական հոգեբանության ռեցիդիվների, բնակչության որոշ մասի գիտակցության վրա իմպերիալիստական պրոպագանդայի՝ տարբեր կանալներով թափանցող գաղափարախոսական ազդեցության հետ համառ հակամարտության պայմաններում: Անհրաժեշտ է անհանդուրժողականության մթնոլորտ ստեղծել այնպիսի երևույթների նկատմամբ, ինչպիսին են անձնական հարստացման նպատակով պետական, հանրային ունեցվածքի օգտագործումը, սպեկուլյացիան, կաշառակերությունը, մեր կարգերի հումանիզմի հաշվին ամեն տեսակ պորտաբուծությունը: Դրանց դեմ մղվող պայքարում հետևողականորեն հենվել մասսաների ակտիվության, օրենքի անկասելի ուժի վրա, նպատակաուղղված աշխատանք տանել անհատի խելացի պահանջմունքների, հետաքրքրությունների ձևավորման ասպարեզում:

Կուսակցական պրոպագանդայի խնդիրն է մարդկանց հաղորդել ճըշմարտությունը ՍՄԿԿ-ի և սովետական պետության լենինյան խաղաղասիրական արտաքին քաղաքական կուրսի, խաղաղասիրական նախաձեռնությունների մասին, որոնք նպատակամղված են սպառազինությունների մրցավազքի սանձահարմանը, միջազգային հարաբերությունների արմատական բարվոքմանը: Աշխարհում խաղաղության պահպանումը թե՛ այսօր և թե տեսանելի ապագայում մեր կուսակցության արտաքին քաղաքականության առանցքային պրոբլեմն է: Պրոպագանդան պետք է նպաստի մյուս սոցիալիստական պետությունների հետ ՍՍՀՄ-ի բարեկամության ու համագործակցության ամրապնդմանը, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման համախմբմանը, ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի հաջողություններին: Հարկավոր է հետևողականորեն և հաստատակամորեն մերկացնել խաղաղության և պրոգրեսի թշնամիներին, իմպերիալիզմի, առաջին հերթին ամերիկյան իմպերիալիզմի միլիտարիստական պլանները, որն այսօր մարդկության վրա կախված համաշխարհային պատերազմի սպառնալիքի աղբյուրն է:

Պրոպագանդան կոչված է համոզիչ կերպով բացահայտելու իմպերիալիզմի, նրա քաղաքականության և գաղափարախոսության հակաժողովրդական էությունը, սոցիալական խոցերը վերացնելու, ազգային և ռասայական անարդարությանը վերջ դնելու բուրժուական հասարակության անկարողությունը: Հարկավոր է զարգացնել սովետական մարդկանց քաղաքական զգոնությունը, թշնամական հայացքների նկատմամբ նրանց անհաշտվողականությունը, դասակարգային հակառակորդի գաղափարախոսական դիվերսիաներին, ռեալ սոցիալիզմի հասցեին օպորտունիստական և ռևիզիոնիստական հարձակումներին դիմակայելու կարողությունը: Հակասովետիզմին և հակակոմունիզմին ակտիվ հակահարված տալը կուսակցական կոմիտեների, մասսայական ինֆորմացիայի միջոցների գործունեության մշտական ուղղությունն է: Անհրաժեշտ է հակապրոպագանդայի լավ մտածված, միասնական, դինամիկ և արդյունավետ սիստեմ:



## II.

Կուսակցության գաղափարախոսական աշխատանքի արդյունավետ գործիք են մամուլը, հեռուստատեսությունը և ռադիոն:

Մեր հասարակության մեջ մամուլը սոցիալիստական դեմոկրատիայի կարևորագույն հաստատություն է, հրատապ հարցերի քննարկմանն ու լուծմանը աշխատավորների ներգրավման, հասարակական կարծիքի ստեղծման միջոց: Այն հաջողությամբ է կատարում իր դաստիարակչական և կազմակերպիչ դերը, երբ ուշադրությունը կենտրոնացնում է կուսակցության և ժողովրդի գործունեության գլխավոր ուղղությունների, պրոբլեմների լուրջ վերլուծության, առաջավոր փորձի տարածման վրա: Մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի նյութերը պետք է գրավեն ու համոզեն կյանքի մեջ ներթափանցելու խորությամբ, փաստարկների հիմնավորվածությամբ, մտքի ու խոսքի թարմությամբ, հմտորեն պրոպագանդեն մեր կարգերի առավելությունները, վառ կերպով բացահայտեն նոր հասարակության կառուցողի՝ մեր դարաշրջանի իսկական հերոսի խառնվածքն ու նկարագիրը:

Կուսակցական կոմիտեները պետք է գործարար կերպով, առանց մանրախնդիր խնամակալության ուղղություն տան մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների աշխատանքին, բարձրացնեն նրանց մարտունակությունն ու հեղինակությունը, ապահովեն սկզբունքային նյութերի պաշտպանությունը: Սուր կերպով արձագանքեն պրոբլեմային և քննադատական նյութերի նկատմամբ անուշադիր վերաբերմունքի փաստերին:

Մինիստրությունների ու գերատեսչությունների, սովետական և հասարակական կազմակերպությունների ղեկավարները պետք է կարգավորեն մամուլին սիստեմատիկ ինֆորմացիայի հաղորդումը՝ կառավարման մարմինների գործունեության, լուծվող պրոբլեմների բնույթի մասին: Նրանք պարտավոր են ըստ էության պատասխանել մամուլի, հեռուստատեսության, ռադիոյի նյութերին, ժամանակին խմբագրություններին հաղորդել ձեռնարկված միջոցների մասին:

Արդի պայմանները պահանջում են կատարելագործել մամուլի, մասնավորապես գերատեսչական մամուլի կառուցվածքը, լուծել քաղաքային և շըրջանային թերթերի հասունացած պրոբլեմները: Առանձնակի ուշադրություն պետք է նվիրել հեռուստատեսության ինֆորմացիոն ծրագրերի բովանդակալիության և օպերատիվության բարձրացմանը: Արագացնել մասսայական ինֆորմացիայի միջոցների, գրահրատարակչական գործի նյութատեխնիկական բազայի ամրապնդման միջոցառումների մշակումը, հաշվի առնելով նրանց հարաճուն նշանակությունը:

Ապահովել ժուռնալիստական կադրերի պատրաստման բարելավումն ու որակավորման բարձրացումը: Զարգացնել մասսայական բանգյուղթղթակցական շարժման ավանդույթները: Ժուռնալիստներին դաստիարակել որպես նորի ակտիվ, համարձակ հետախույզներ, քաղաքական տոկուն մարտիկներ: Նրանք պետք է աչքի ընկնեն բարձր գաղափարայնությամբ ու քաջատեղյակությամբ, ժուռնալիստական անբասիր էթիկայով:

Մասսաների վրա կուսակցական ազդեցության փորձված միջոց է բանավոր պրոպագանդան: Անհրաժեշտ է ավելի լայնորեն օգտագործել դրա հնարավորությունները մարդկանց հետ կենդանի, վստահելի շփման համար, նրանց հուզող հարցերի շուրջն անկեղծ խոսակցության համար: Կուսակցական կոմիտեների, մինիստրությունների ու գերատեսչությունների, սովետական ու տնտեսական կազմակերպությունների ղեկավարների կարևոր պարտականությունը համարել սիստեմատիկ ելույթները անմիջականորեն աշխատավորական կոլեկտիվներում: Կուսակցական խիստ հսկողության տակ պահել աշխատավորների դիտողությունների և առաջարկությունների իրականացումը: Հարկավոր է բարելավել ագիտատորներին, քաղինֆորմատորներին, պրոպագանդիստներին, դասախոսներին ինֆորմացիա հաղորդելու և հրահանգավորելու գործը, նրանց սովորեցնել լսարանի հետ կենդանի և գրավիչ խոսելու, մարդկանց համոզելու, իրենց ետևից տանելու հմտություն:

Աշխատավորների հոգևոր կյանքի հարստացման, կոմունիստական իդեալների ոգով նրանց դաստիարակման գործում մեծ ավանդ են ներդնում սոցիալիստական ռեալիզմի գրականությունն ու արվեստը: Սովետական բազմազգ գեղարվեստական մտավորականության նվաճումների հիմքում ընկած է նրա նվիրվածությունը կուսակցության գործին, ամուր կապը ժողովրդի կյանքի հետ:

Կուլտուրայի զարգացման կուսակցական ղեկավարման մեջ անհրաժեշտ է տաղանդի նկատմամբ հոգատար, հարգալից վերաբերմունքը զուգակցել բարձր սկզբունքայնության ու պահանջկոտության հետ: Ստեղծագործական միությունների և միավորումների խնդիրն է կուլտուրայի գործիչներին դաստիարակել ժողովրդի հանդեպ պատասխանատվության ոգով, նրանց միջավայրում ամրապնդել գաղափարական, բարոյական և գեղագիտական պահանջկոտության մթնոլորտը: Գեղարվեստական ստեղծագործության վրա ներգործության գլխավոր մեթոդը պետք է լինի մարքս-լենինյան քննադատությունը՝ ակտիվ, զգայուն, ստեղծագործական որոնման նկատմամբ ուշադիր քննադատությունը: Դրա հետ մեկտեղ նրա պարտքն է հստակ, կուսակցական գնահատական տալ այն աշխատանքներին, որոնցում արտահայտվում են մեր հասարակության, մեր գաղափարախոսության համար խորթ հայացքներ, թույլ են տրվում նահանջներ պատմական ճշմարտությունից: Քննադատությունը չի կարող ներողամիտ լինել նաև գեղարվեստորեն թույլ, գորշ ստեղծագործությունների նկատմամբ: Անհրաժեշտ է մշտական ուշադրություն ցուցաբերել ինքնագործ ստեղծագործության զարգացման, մշակույթի արժեքների հետ մասսաների հաղորդակցման նկատմամբ: Ուժեղացնել մամուլի օրգանների և մշակույթի հիմնարկությունների ղեկավարների անձնական պատասխանատվությունը հրապարակումների ու խաղացանկերի գաղափարական բովանդակության և գեղարվեստական մակարդակի համար:

## III.

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը կուսակցական կոմիտեներին պարտավորեցնում է զգալիորեն բարելավել գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի ղեկավարումը: Անհրաժեշտ է, որ կուսակցական կոմիտեները, դրանց առաջին քարտուղարները խորապես թափանցեն դրա վիճակի մեջ, հասնեն գաղափարադաստիարակչական աշխատանքի և կազմակերպական-կուսակցական ու սոցիալ-տնտեսական գործունեության սերտ միասնության:

Կուսակցական կազմակերպությունները, ժողովրդական դեպուտատների սովետները, արհմիություններն ու կոմերիտմիությունը պետք է մասսաների քաղաքական լուսավորումը զուգակցեն հասարակության և պետության գործերի կառավարման, վերահսկողության կազմակերպման մեջ նրանց ակտիվ ներգրավման հետ: Ընդլայնեն պետական և հասարակական կյանքի խոշոր հարցերի վերաբերյալ որոշումների նախագծերի նախնական քննարկմանը աշխատավորների մասնակցության պրակտիկան: Ապահովեն լայն հրապարակայնություն կառավարման մարմինների աշխատանքում, յուրաքանչյուր աշխատավորի մեջ դաստիարակեն ընդհանուր գործին մասնակցության զգացում: Բարձրացնեն ղեկավար կադրերի պատասխանատվությունը տնտեսական գործունեության դաստիարակչական հետևանքների համար: Հավանություն տան տնտեսական ղեկավարների մոտ տեղի ունեցող խորհրդակցությունններում դաստիարակության հարցերի քննարկման պրակտիկային: Ավելի լայնորեն օգտագործեն սոցիալիստական մրցության, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի համար շարժման դաստիարակչական ուժը: Մրցողների ջանքերը ուղղվեն այնպիսի նպատակների հասնելուն, ինչպիսին են արտադրանքի որակի բարձրացումը, արտադրական կարողությունների և ռեսուրսների բոլոր տեսակների օգտագործման բարելավումը: Առանձնակի ուշադրություն նվիրեն ագրոարդյունաբերական միավորումների, արտադրական բրիգադների պայմաններում գաղափարադաստիարակչական գործունեության արդյունավետ ձևերի մշակմանն ու արմատավորմանը:

Կուսակցական կոմիտեները պետք է հաստատակամորեն ձգտեն հասնել գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության միասնությանը, գաղափարախոսական ներգործության միջոցների, հասարակական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների, ընտանիքի և դպրոցի ջանքերի կոորդինացման բարելավմանը, գաղափարական ազդեցության ոլորտն ընդգրկել բոլոր սոցիալական խմբերը: Սիստեմատիկաբար տարածեն աշխատանքի լավագույն փորձը, այդ գործում բարձրացնեն գաղափարախոսական հանձնաժողովների դերը: Վճռականորեն պայքարեն շաբլոնի, գործի էությունը ձևով փոխարինելու դեմ: Գաղափարադաստիարակչական աշխատանքում անհանդուրժելի են թղթաբարությունն ու ժողովամոլությունը, դրա գնահատումը սոսկ քանակական ցուցանիշներով: Նրա արդյունավետության գլխավոր չափանիշը մասսաների քաղաքական գիտակցության և աշխատանքային ակտիվության մակարդակն է:

Գաղափարադաստիարակչական աշխատանքի կազմակերպմանը ծառայող բոլոր ջանքերը վերջին հաշվով իրացվում են աշխատավորական կոլեկտիվում: Այստեղ էլ պետք է ուղղվի հիմնական ուշադրությունը, այստեղ պետք է կենտրոնացվեն լավագույն պրոպագանդիստական կադրերը: Կուսակցական կոմիտեները պարտավոր են բարձրացնել սկզբնական կուսակցական կազմակերպությունների, որպես աշխատավորական կոլեկտիվների առաջատար ուժի և քաղաքական միջուկի, դերն ու նշանակությունը, նրանց պատասխանատվությունը սոցիալ-տնտեսական հարցերի լուծման համար, աշխատավորների կոմունիստական դաստիարակության, կազմակերպվածության ու գիտակցական կարգապահության ամրապնդման, քննադատության և ինքնաքննադատության զարգացման համար:

Կուսակցությունը մշտապես հոգում է աճող սերնդի մասին, որի ուսերին առաջիկա տասնամյակներում կընկնի պատասխանատվությունը հասարակության բախտի համար: Կուսակցական կազմակերպությունների, կոմերիտմիության խնդիրն է երիտասարդությանն ավելի լայնորեն ներգրավել հասարակական-քաղաքական գործունեության ոլորտը: Նրան դաստիարակել կոմունիստական իդեալներին հավատարմության ոգով, զարգացնել իր երկրի հանդար հպարտության զգացում, նրա բարգավաճմանը անձնական աշխատանքով աջակցելու ձգտում: Սեր պատվաստել ՍՍՀՄ զինված ուժերի նկատմամբ, ամրապնդել պատրաստակամությունը սոցիալիստական հայրենիքի պաշտպանության համար: Անդուլ ուշադրություն նվիրել երիտասարդության բոլոր սոցիալական խմբերին և տարիքային կատեգորիաներին՝ բանվոր և կոլտնտեսական, սովորող և բանակային երիտասարդությանը, լիովին հաշվի առնել նրանց առանձնահատկությունները: Կոմերիտական կազմակերպությունների կյանքը հագեցնել հասարակական մեծ բովանդակությամբ, արմատախիլ անել անկազմակերպվածության և պարադային աղմկարարության դրսևորումները:

Բարձրացնել դաստիարակչական աշխատանքի մակարդակը դպրոցներում և պրոֆտեխուսումնարաններում: Հետևողականորեն իրագործել միասնական, աշխատանքային, պոլիտեխնիկական դպրոցի լենինյան սկզբունքները, դպրոցականների մեջ սովորություն և սեր դաստիարակել հանրօգուտ աշխատանքի նկատմամբ, ընդլայնել նրանց գաղափարական մտահորիզոնը, առաջին հերթին նրանցից յուրաքանչյուրի մեջ ձևավորելով սոցիալիստական հասարակության քաղաքացու, կոմունիզմի ակտիվ կառուցողի վեհ հատկանիշները: Ավելի լրիվ օգտագործել դպրոցի հնարավորությունները գեղագիտական և ֆիզիկական դաստիարակության գործում: Բարձրացնել ուսուցչի վարկն ու հեղինակությունը, ավելի շատ հոգ տանել նրա որակավորման, աշխատանքի ու կենցաղի պայմանների մասին: Զգալիորեն բարելավել բուհերում ու տեխնիկումներում մասնագետների պատրաստումը ժողովրդական տնտեսության առաջատար ճյուղերի համար, ուսանողության գաղափարաքաղաքական կոփումը:

Ըստ ամենայնի կատարելագործել բնակության վայրում տարվող մասսայական-քաղաքական աշխատանքը: Բարձրացնել կուլտուր-լուսավորական հիմնարկությունների դերը աշխատավորների ազատ ժամանակի կազմակերպման գործում, հատկապես գյուղում: Զարգացնել մասսայական ֆիզիկական կուլտուրան և սպորտը, տարածել յուրաքանչյուր շրջանում կուլտուր-մարզական համալիրների ստեղծման փորձը, անկախ գերատեսչական պատկանելությունից՝ դրանք ենթարկելով տեղական սովետներին:

Կարևոր է կատարել դաստիարակչական աշխատանքի արդյունավետության գիտական սիստեմատիկ հետազոտություններ: Ավելի լայնորեն արմատավորել այդ նպատակով կուսակցական կոմիտեներին առընթեր գիտամեթոդական կենտրոնների ու խմբերի ստեղծման փորձը: ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան, ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր հասարակական գիտությունների ակադեմիան պետք է առաջարկություններ անեն դաստիարակչական գործունեության դրվածքի ասպարեզում սոցիոլոգիական հետազոտությունների դերի բարձրացման, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի սոցիոլոգիական հետազոտությունների ինստիտուտի բազայի վրա հասարակական կարծիքի ուսումնասիրման համամիութենական կենտրոնի կազմակերպման վերաբերյալ:

Գաղափարախոսական աշխատանքի գլխավոր օղակը կադրերն են: Բոլոր հանրապետական, երկրամասային, մարզային, օկրուգային, քաղաքային, շրջանային կուսակցական կոմիտեները պետք է ունենան հատկապես պատրաստված կադրեր, որոնք ընդունակ լինեն հմտորեն կազմակերպելու բնակչության տարբեր խմբերի հետ տարվող գաղափարախոսական աշխատանքը և պատասխանատու լինեն դրա համար: Նրանք պետք է ստեղծեն անհրաժեշտ պայմաններ, հոգան նրանց գաղափարատեսական մակարդակի և պրոֆեսիոնալ վարպետության սիստեմատիկ բարձրացման մասին: Լրացուցիչ միջոցառումներ իրականացնել բոլոր կարգի գաղափարախոսական կադրերի պատրաստման և վերապատրաստման սիստեմի կատարելագործման համար: Գաղափարախոսական կադրերը պետք է կոմունիստական գաղափարայնության, իրենց աշխատանքի նկատմամբ բարձր պահանջկոտության, հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատվության օրինակ ծառայեն:



Զարգացած սոցիալիզմի կատարելագործման կուսակցության գծի կենսագործումը հնարավորություն կտա նոր, մեծ, առաջընթաց քայլ կատարելու կոմունիզմի կառուցման ճանապարհին, առավել համոզիչ ցուցադրելու սոցիալիստական կարգերի առավելությունները, մեծացնելու նրա ձգողական ուժը: Կոմունիստների համար չկա ավելի պատվաբեր պարտականություն, քան մարքսիզմ-լենինիզմի վեհ գաղափարները մասսաներին հասցնելը, մարդկանց կենսական շահերի հետ կուսակցության քաղաքականության անխախտ կապը բացահայտելը, աշխատավորների հասարակական ակտիվությունը առավել բարձրացնելը:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը հաստատ վստահություն է հայտնում, որ գաղափարախոսական կադրերը, բոլոր կոմունիստները իրենց ուժերը, եռանդն ու տաղանդը կնվիրաբերեն կոմունիստական դաստիարակության ազնիվ գործին, կշարունակեն և ստեղծագործաբար կհարստացնեն բոլշևիկյան պրոպագանդայի փառապանծ ավանդույթները, նոր հաջողություններ կհասնեն կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի առջև ծառացած պատմական խնդիրների իրականացման գործում:

# ՀԱՄԱՏԵՂ ՀԱՅՏԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ

1983 թվականի հունիսի 28-ին Մոսկվայում տեղի ունեցավ ԲԺՀ-ի, ՀԺՀ-ի, ԳԴՀ-ի, ԼԺՀ-ի, ՌՍՀ-ի, ՍՍՀՄ-ի և ՉՍՍՀ-ի կուսակցական ու պետական ղեկավարր գործիչների հանդիպում: Հանդիպմանը մասնակցում էին՝

Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետությունից՝ Բուլղարական կոմունիստական կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար, Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետության Պետական խորհրդի նախագահ, պատվիրակության ղեկավար Տոդոր Ժիվկովը, Բուլղարական կոմկուսի Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ԲԺՀ-ի Մինիստրների խորհրդի նախագահ Գրիշա Ֆիլիպովը, Բուլղարական կոմկուսի Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ԲԺՀ-ի ժողովրդական պաշտպանության մինիստր Դոբրի Ջուրովը, Բուլղարական կոմկուսի Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ԲԺՀ-ի արտաքին գործերի մինիստր Պետր Մլադենովը.

Հունգարական Ժողովրդական Հանրապետությունից՝ Հունգարական սոցիալիստական բանվորական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար, պատվիրակության ղեկավար Յանոշ Կադարը, ՀՍԲԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՀԺՀ-ի Մինիստրների խորհրդի նախագահ Դյորդ Լազարը, ՀՍԲԿ Կենտկոմի անդամ, ՀԺՀ-ի արտաքին գործերի մինիստր Ֆրիդյեշ Պուջան, ՀՍԲԿ Կենտկոմի անդամ, ՀԺՀ-ի պաշտպանության մինիստրության պետական քարտուղար Կարոյ Չեմին.

Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունից՝ Գերմանիայի սոցիալիստական միասնական կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար, Գերմանական Դեմոկրատական Հանրապետության Պետական խորհրդի նախագահ, պատվիրակության ղեկավար Էրիխ Հոնեկերը, ԳՍՄԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ԳԴՀ-ի Մինիստրների խորհրդի նախագահ Վիլլի Շտոֆը, ԳՍՄԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ԳԴՀ-ի ազգային պաշտպանության մինիստր Հայնց Հոֆմանը, ԳՍՄԿ Կենտկոմի անդամ, ԳԴՀ-ի արտաքին գործերի մինիստր Օսկար Ֆիշերը.

Լեհական Ժողովրդական Հանրապետությունից՝ Լեհական միացյալ բանվորական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար, Լեհական Ժողովրդական Հանրապետության Մինիստրների խորհրդի նախագահ, պատվիրակության ղեկավար Վոյցեխ Յարուզելսկին, ԼՄԲԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, Կենտկոմի քարտուղար Յուզեֆ Չիրեկը, ԼՄԲԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ԼԺՀ-ի արտաքին գործերի մինիստր Ստեֆան Օլշովսկին, ԼՄԲԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, ազգային պաշտպանության մինիստրի տեղակալ, լեհական զորքի գլխավոր շտաբի պետ Ֆլորիան Սիվիցկին.

Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետությունից՝ Ռումինական կոմունիստական կուսակցության գլխավորր քարտուղար, Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետության պրեզիդենտ, պատվիրակության ղեկավար Նիկոլայե Չաուշեսկուն, Ռումինական կոմկուսի Կենտկոմի քաղաքական գործկոմի անդամ, ՌՍՀ-ի կառավարության պրեմիեր մինիստր Կոնստանտին Դեսկելեսկուն, Ռումինական կոմկուսի Կենտկոմի քաղաքական գործկոմի անդամ, ՌՍՀ-ի ազգային պաշտպանության մինիստր Կոնստանտին Օլտյանուն, Ռումինական կոմկուսի Կենտկոմի քաղաքական գործկոմի անդամության թեկնածու, Կենտկոմի քարտուղար Միու Դոբրեսկուն, Ռումինական կոմկուսի Կենտկոմի քաղաքական գործկոմի անդամության թեկնածու, ՌՍՀ-ի արտաքին գործերի մինիստր Շտեֆան Անդրեյը.

Նրանք հավաստում են այդ ծրագրի հրատապությունն ու գործունու-
թյունը և կրկին հանդես գալիս միջուկային սպառազինությունների բնագա-
վառում մրցելու դեմ, ընդհանուր առմամբ ամեն տեսակ ռազմական մրցակ-
ցության դեմ: Նրանք հաստատապես համոզված են, որ ոչ մի համաշխար-
հային պրոբլեմ, ներառյալ սոցիալիզմի և կապիտալիզմի պատմական վեճը,
չի կարող լուծվել պատերազմով:

Արդի իրադրության մեջ անհրաժեշտ են պատերազմի սպառնալիքը վա-
նելու ունակ անհետաձգելի միջոցներ, համաշխարհային իրադարձությունների
ընթացքը շրջել դեպի լարվածության թուլացում, միջպետական հարաբերու-
թյունների բարվոքում:

Հանդիպման մասնակիցները մեր ժամանակների արմատական հարցն
են համարում սպառազինությունների մրցավազքի շուտափույթ դադարեցումը
և անցումը զինաթափման, հատկապես միջուկային զինաթափման, այն կար-
ծիքին են, որ անհրաժեշտ է ամեն ինչ անել այդ կենսական նպատակների
իրականացման, երկրագնդի վրա խաղաղության, քաղաքակրթության, կյան-
քի պահպանման համար: Նրանք հավաստում են այդ հարցերը բանակցու-
թյունների միջոցով լուծելու համար ամեն ջանք գործադրելու իրենց պատ-
րաստակամությունը:

Այդ առումով կարևոր նշանակություն ունի միջուկային առճակատման
սպառնալիքի վերացումը եվրոպական մայրցամաքում: Ձգտելով Եվրոպան
լիովին ազատել ինչպես միջին հեռավորության, նույնպես և տակտիկական
միջուկային զենքից, հանդիպման մասնակիցներն անհրաժեշտ են համարում
հասնել առնվազն այնպիսի պայմանավորվածության, որը բացառեր ամե-
րիկյան միջուկային նոր հրթիռների տեղաբաշխումը արևմտաեվրոպական
երկրներում և նախատեսեր Եվրոպայում առկա միջին հեռավորության մի-
ջոցների համապատասխան կրճատումներ՝ հավասարակշռությունը առավել
ցածր մակարդակի վրա ապահովելու նպատակով: Նման պայմանավորվա-
ծության հասնել հնարավոր է, եթե երկու կողմերը, դրսևորելով փոխըմբռ-
նում ու քաղաքական կամք, առաջնորդվեն խաղաղության ու անվտանգու-
թյան լայն նկատառումներով: Հանդիպման մասնակից պետությունները հենց
այս դիրքերից են մոտենում Եվրոպայում միջուկային սպառազինությունների
սահմանափակման Ժնևի բանակցություններին:

Հանդիպման ժամանակ լիակատար պաշտպանության արժանացան սո-
վետական առաջարկությունները, որոնք ուղղված են առկա միջին հեռավո-
րության միջուկային սպառազինությունների արդարացի կրճատմանը: Հան-
դիպման մասնակիցները կոչ են անում՝ ամեն ինչ անել, որպեսզի այս տարի
բանակցություններում պայմանավորվածություն ձեռք բերվի Եվրոպայում մի-
ջին հեռավորության միջուկային նոր հրթիռներ չտեղաբաշխելու և միջին հե-
ռավորության առկա միջոցները կրճատելու շուրջը, որը խարսխվեր երկու
կողմերի համար ընդունելի առաջարկությունների վրա:

Նրանք վստահ են, որ եթե երկու կողմերը խստիվ կիրառեն հավասա-
րության ու միակերպ անվտանգության սկզբունքը, ապա ստրատեգիական
սպառազինությունների սահմանափակման ու կրճատման բանակցություննե-
րը կարող են ընթանալ կոնստրուկտիվ ուղիով և դրանցում կարող է ձեռք
բերվել փոխադարձաբար ընդունելի պայմանավորվածություն, որը կհամա-
պատասխաներ ընդհանուր խաղաղության ամրապնդման շահերին:

Նրանք անհրաժեշտ են համարում ավելի շուտ սկսել տիեզերական տա-
րածության մեջ ամեն կարգի զենքի տեղաբաշխումն արգելելու բանակցու-
թյունները, բացառել սպառազինությունների մրցավազքը տիեզերքի վրա տա-
րածելու հնարավորությունը:

Հանդիպման մասնակիցներն այն համոզմունքն են հայտնում, որ, ելնե-
լով ժողովուրդների խաղաղության ու անվտանգության շահերից, անհրա-
ժեշտ է.

անհետաձգելիորեն իրականացնել բոլոր միջուկային տերությունների,
ամենից առաջ՝ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջուկային սպառազինությունների սա-
ռեցում.



որ այն բոլոր միջուկային տերությունները, որոնք դեռևս դա չեն արել,
պարտավորվեն առաջինը չգործադրել միջուկային զենք:

Հանդիպման մասնակից պետությունները կրկին դիմում են ՆԱՏՕ-ի ան-
դամ պետություններին, կոչ անելով անհապաղ անմիջական բանակցություն-
ներ սկսել 1984 թվականի հունվարի 1-ից ռազմական ծախսերը չավելացնե-
լու և հետագա ժամանակաշրջանում դրանց գործնական փոխադարձ կրճատ-
ման շուրջը համաձայնության հասնելու համար, որպեսզի չծախսված միջոց-
ներն օգտագործվեն տնտեսական ու սոցիալական զարգացման կարիքների,
այդ թվում զարգացող երկրների կարիքների համար: Նրանք հույս են հայտ-
նում, որ ՆԱՏՕ-ի պետությունները կարձագանքեն այս կոչին:

Նրանք նաև սպասում են, որ ՆԱՏՕ-ի պետությունները կհամաձայնեն
ձեռնամուխ լինել Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների և
հյուսիսատլանտյան պայմանագրի անդամ պետությունների միջև փոխադար-
ձաբար ռազմական ուժ չգործադրելու և խաղաղ հարաբերություններ պահ-
պանելու մասին պայմանագրի վերաբերյալ առաջարկության գործնական
քննարկմանը, պայմանագիր, որը բաց կլինի աշխարհի բոլոր պետություննե-
րի համար:

Հանդիպման մասնակից պետությունները կրկին արտահայտվում են Եվ-
րոպայի հյուսիսում, Բալկաններում և եվրոպական մայրցամաքի այլ շրջան-
ներում միջուկազերծ գոտիներ ստեղծելու առաջարկությունների իրականաց-
ման օգտին, այդ հարցերի շուրջը համապատասխան բանակցություններ
վարելու օգտին:

Ծեշտվեց Մադրիդի հանդիպումը շուտափույթ կերպով դրական ար-
դյունքներով ավարտելու նշանակությունն ու անհրաժեշտությունը, արդյունք-
ներ, որոնք համապատասխանեին եվրոպական ժողովուրդների ակնկալիք-
ներին և ապահովեին Եվրոպայում վստահության ու անվտանգության ամրա-
պնդման միջոցառումների և զինաթափման շուրջը կոնֆերանսի գումարումը,
Հելսինկիում սկսված բազմակողմանի պրոցեսի հաջորդայնությունը: Դա կա-
րևոր ներդրում կլիներ խաղաղության, լարվածության թուլացման ու համա-
գործակցության քաղաքականության հաստատման ասպարեզում:

Սպառազինությունների մրցավազքի դադարեցման և միջազգային իրա-
դրության բարվոքման բնագավառի հասունացած հարցերի շուրջը կոնկրետ
պայմանավորվածությունների հասնելու համար անհրաժեշտ է առավելագույն
ջանքեր գործադրել, բանակցությունները վարել գործարար կերպով, բարյա-
ցակամության ոգով, իրականացնել դրանց առաջընթացի համար նպաստա-
վոր մթնոլորտի ստեղծմանը նպաստող քայլեր և չձեռնարկել այնպիսի գոր-
ծողություններ, որոնք կարող էին բարդացնել դրանք:

Հանդիպման մասնակից պետությունները կրկին ողջ ուժով հաստատում
են, որ իրենք հանդես են գալիս այն բոլոր քայլերի դեմ, որոնք հանգեցնում
են ՆԱՏՕ-ի գործողությունների ոլորտի ընդարձակմանը կամ ռազմաքաղա-
քական որևէ նոր խմբավորման ստեղծմանը: Իրենց կողմից նրանք հայտա-
րարում են, որ չեն ձգտում ընդլայնել իրենց դաշինքի գործողության ոլորտը
և նկատի չունեն որևէ քայլ ձեռնարկել այդ ուղղությամբ:

Ելնելով խաղաղության և իրենց անվտանգության շահերից՝ հանդիպ-
ման մասնակից պետությունները հայտարարում են, որ իրենք ոչ մի դեպքում
թույլ չեն տա ռազմական գերազանցության հասնել իրենց նկատմամբ: Նրանք
վճռականորեն հանդես են գալիս ուժերի հավասարակշռությունը ամենացածր
մակարդակի վրա ապահովելու օգտին: Այդ կապակցությամբ նրանք ուշա-
դրություն են հրավիրում տվյալ հարցում իրենց բարձրագույն պետական մար-
մինների հայտարարած դիրքորոշման վրա:

Նրանք նաև հավաստում են իրենց սկզբունքային այն դիրքորոշումը, որ
արդի Եվրոպայի տերիտորիալ-քաղաքական իրողություններն անխախտ են:

Հանդիպմանը ներկայացված պետությունները հաստատ համոզված են,
որ խաղաղությունը չի կարող ամրապնդվել սպառազինությունների մրցա-
վազքի միջոցով: Նրանք դրա սաստկացման հետևողական հակառակորդ-
ներն են: Միայն սպառազինությունների սահմանափակումը, կրճատումն

ու ոչնչացումը, միջազգային խիստ վերահսկողության ներքո դեպի ընդհանուր ու լրիվ զինաթափում տանող միջոցները կարող են կայուն ու հուսալի խաղաղություն բերել մարդկությանը:

Հելսինկիի եզրափակիչ ակտով Եվրոպայի անվտանգության ու համագործակցության խորհրդակցության մասնակից երեսունհինգ պետությունները հանդիսավորությամբ պարտավորություն ստանձնեցին լարվածության թուլացումը դարձնել ինչպես անընդհատ, այնպես էլ առավել կենսունակ ու բազմակողմանի պրոցես՝ համապարփակ ընդգրկումով: Նրանք միահամուռ հայտարարեցին, որ ձգտում են իրենց միջև զարգացնել լավագույն և առավել սերտ հարաբերություններ բոլոր բնագավառներում և, այդպիսով, հաղթահարել անցյալի իրենց հարաբերությունների բնույթից բխող դիմակայությունը և հասնել լավագույն փոխըմբռնման:

Առաջնորդվելով այդ վեհ պարտավորությունների ոգով ու տառով, հանդիպման մասնակից պետություններն այսուհետ ևս մյուս պետությունների հետ իրենց հարաբերությունները կզարգացնեն խաղաղ գոյակցության հիման վրա: Նրանք եվրոպական երկրներին կոչ են անում անհրաժեշտ ամեն ինչ անել Եվրոպայից միջուկային սպառնալիքը վանելու, Եվրոպան ինչպես միջին հեռավորության, այնպես էլ տակտիկական միջուկային զենքից զերծ խաղաղության մայրցամաքի, այնպիսի մայրցամաքի վերածելու համար, որտեղ բոլոր պետությունները համագործակցեին լիակատար իրավահավասարության ու փոխադարձ հարգանքի հիման վրա, հօգուտ իրենց ժողովուրդների պրոգրեսի ու բարօրության, Եվրոպայի և ամբողջ աշխարհի անդորրի, փոխըմբռնման ու անվտանգության:

Նրանք դիմում են հյուսիսատլանտյան դաշինքի անդամ երկրներին, աշխարհի բոլոր երկրներին՝ հաստատակամորեն կոչ անելով սթափ կերպով և օբյեկտիվորեն կշռադատել միջազգային հարաբերությունների ներկայիս զարգացման սպառնալի միտումները և խելամիտ հետևություններ անել, որոնք համապատասխանեին մարդկության ամենակենսական շահերին:

Նրանք պատրաստակամություն են հայտնում միավորելու իրենց ջանքերը բոլոր երկրների ջանքերին, անկախ նրանց հասարակական-քաղաքական սիստեմներից, բոլոր նրանց հետ, ովքեր հանդես են գալիս հանուն խաղաղության ու միջազգային անվտանգության ամրապնդման, նպատակ ունենալով իրականացնել վատթարագույնը կանխող գործնական քայլեր: Դրա համար պետք է ձեռքից բաց չթողնել ժամանակը:



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԱՎԱՆԳԱՐԴԸ

**Ա. Մ. ԲԱՂՄԱՆՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

«Զարգացած սոցիալիզմի պայմաններում դառնալով ամբողջ ժողովրդի կուսակցությունը, ՍՄԿԿ-ն չի կորցնում դասակարգային բնույթը և իր էությամբ մնում է բանվոր դասակարգի կուսակցություն»:

*(«ՌՍԴԲԿ երկրորդ համագումարի 80-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից)*

*Կոմունիստների լենինյան մեծ կուսակցությունը՝ բանվոր դասակարգի, ողջ աշխատավոր ժողովրդի ավանգարդը, անցել է 80-ամյա պայքարի ու հաղթանակների փառավոր ուղի, որին հավասարը չունի բովանդակ աշխարհի ոչ մի այլ քաղաքական կուսակցություն։ Նրա հերոսական պատմությունը մեծ մասշտաբի ու չափանիշների արտասովոր դպրոց է, «բարձրագույն գիտությունների դասընթաց» (Լենին), որ անցել ու պատվավոր քննություն են բռնել Ռուսաստանի հեղափոխական պրոլետարիատը և աշխատավորների միլիոնավոր զանգվածները հին աշխարհի կործանման, սոցիալիստական հեղափոխության հաղթանակի, նոր պետական ու հասարակական կարգի ստեղծման և ամրապնդման համար մղած անզիջում մարտերում։*

*Քսաներորդ դարի սկզբին կապիտալիզմը թևակոխեց իր զարգացման բարձրագույն՝ իմպերիալիզմի փուլը, որը Լենինը բնութագրել է որպես սոցիալիստական հեղափոխության նախօրյակ։ Մարդկային հասարակության պատմության մեջ այդ ամենահարուստ դարը հեղափոխական Ռուսաստանն սկսեց նրանով, որ ծնունդ տվեց մարքս-լենինյան կուսակցությանը, ծնունդ, որը նախորդ զարգացման օրինաչափ արդյունքն էր։ Դրա երևան գալը պատմական անհրաժեշտություն էր, ժամանակի օբյեկտիվ պահանջ։ Դա մի ժամանակաշրջան էր, երբ համաշխարհային հեղափոխության կենտրոնը փոխադրվել էր Ռուսաստան, ուր ավելի, քան որևէ այլ երկրում, սուր բնույթ էին ընդունել սոցիալական հակասություններն ու հակամարտությունները, հասունացել դրանց հեղափոխական ճանապարհով լուծման ժամանակն ու հասարակական ուժերը։ Տակավին 1882 թվականին* Կոմունիստական կուսակցության մանիֆեստի *ռուսերեն երկրորդ հրատարակության առաջաբանում Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը գրում էին, թե Ռուսաստանը ներկայացնում է հեղափոխական շարժման առաջավոր ջոկատը Եվրոպայում, որի նկատմամբ նրանք լի էին վառ հավատով։ Դառնալով «հեղափոխական մտքի և հեղափոխական գործի ծանրության կենտրոնը», Ռուսաստանը պատրաստ էր մյուս երկրների համար «հեղափոխական եռանդի աղբյուր ծառայելու», «բեղմնավորելու սոցիալական հեղաշրջման բողբոջներն ամբողջ քաղաքակիրթ աշխարհում», կոտրելու «ռեակցիայի սառույցը», ժողովուրդներին պարգևելու «նոր, երջանիկ գարուն» (Կ. Կաուցկու խոսքերը՝ Վ. Ի. Լենինի մեջբերումով,* ԵԼԺ, *հ. 41, էջ 5—6)։*

*Ռուսաստանի հեղափոխականությունը մարմնավորում էր բանվոր դասա-*

կարգը, իսկ «ռեակցիայի սառույցը»՝ ցարական ինքնակալությունը։ Առաջինը կոչված էր և կարող էր խորտակել երկրորդին, իսկ դրա համար պետք էր ղեկավար ուժ, որն առաջնորդեր և ուղղություն տար նրա պայքարին։ Լենինը դրան այնքան էր մեծ նշանակություն տալիս, որ 1902 թ. գրում էր. «...տվեք մեզ հեղափոխականների կազմակերպություն, և մենք շուռ կտանք Ռուսաստանը» (ԵԼԺ, հ. 6, էջ 161), թե «պատմությունն այժմ մեր առջև դրել է մերձավորագույն մի խնդիր, որ ամենահեղափոխականն է որևէ այլ երկրի պրոլետարիատի մերձավորագույն խնդիրներից։ Այդ խնդրի իրականացումը ոչ միայն եվրոպական, այլ նաև (կարող ենք մենք այժմ ասել) ասիական ռեակցիայի ամենահզոր նեցուկի խորտակումը, ռուսական պրոլետարիատին կդարձներ միջազգային հեղափոխական պրոլետարիատի ավանգարդը» (նույն տեղը, էջ 35)։

Եվ այսպես, ժամանակաշրջանը, հեղափոխական իրադարձությունների ընթացքը, շահերն ու հեռանկարները հրամայական պահանջ էին առաջադրում ստեղծելու հեղափոխական ուժերին միավորող, նրանց դեպի մարտ տանող կազմակերպություն՝ ի դեմս կուսակցության։

Ռուսաստանի մարքսիստները, Վ. Ի. Լենինը, վիթխարի ջանքեր գործադրեցին այնպիսի կուսակցության կազմակերպման նպատակով, որը կանգնած լիներ ժամանակաշրջանի բարձրության վրա, հասկանար հասարակության զարգացման օբյեկտիվ ընթացքն ու հեռանկարները, մարմնավորեր բանվոր դասակարգի, աշխատավորական լայն զանգվածների արմատական շահերն ու պահանջները և կարողանար ղեկավարել նրանց պայքարն ընդդեմ հին կարգերի, հանուն նոր աշխարհի կառուցման։

Ղեկավարվելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի հիմնարար ցուցումներով և ստեղծագործաբար զարգացնելով դրանք՝ Լենինը մշակեց կուռ ուսմունք նոր տիպի կուսակցության մասին։ Լենինյան կուսակցությանը ներհատուկ սկզբունքներն ու առանձնահատկությունները արմատապես տարբերում են նրան ռեֆորմիստական կուսակցություններից։ Այն ղեկավարվում է գիտական կոմունիզմի ուսմունքով, ապահովում հեղափոխական տեսության ու պրակտիկայի օրգանական միասնությունը, հանդիսանում է բանվոր դասակարգի կոլեկտիվ քաղաքական առաջնորդը, բոլոր աշխատավորների ավանգարդը, իր գործունեությունը հիմնում է դեմոկրատական ցենտրալիզմի վրա, անդուլ կերպով ամրապնդում իր շարքերի գաղափարական ու կազմակերպական միասնությունը, գիտակցական կարգապահությունը, քննադատության ու ինքնաքննադատության միջոցով ուղղում սեփական սխալներն ու վրիպումները, հետևողականորեն իրականացնում պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները, անհաշտ պայքար մղում ամեն տեսակ ֆրակցիոնականության, խմբակայնության, օպորտունիզմի ու դոգմատիզմի դեմ։

Այդպիսի կուսակցության ստեղծման համար պայքարն սկսվել էր դեռ անցյալ դարի 80—90-ական թվականներին՝ ցիրուցան մարքսիստական խմբերի միավորումներով, մի պրոցես, որն ավարտեց ՌՍԴԲԿ II համագումարը, հիմնադրելով նոր տիպի կուսակցություն Վ. Ի. Լենինի մշակած սկզբունքներով, «մարքսիզմի տեսության ամենահաստատուն բազայի վրա» (ԵԼԺ, հ. 41, էջ 8)։

«Լենինյան կուսակցության կազմակերպումը,— ասված է «ՌՍԴԲԿ երկրորդ համագումարի 80-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— հանդիսացավ հասարակական զարգացման օրինաչափ արգասիքը, շրջադարձային կետ եղավ ռուսաստանյան և միջազգային պրոլետարիատի ազատագրական պայքարի մեջ»։

Համագումարի վիթխարի նշանակությունը հիմնականում պայմանավորված է կուսակցության առաջին մարքսիստական ծրագիրն ընդունելու հանգամանքով։ Ձևակերպելով պայքարի քաղաքական, տնտեսական ու սոցիալական խնդիրները, ծրագիրը դրանցից գլխավորը համարեց պրոլետարիատի կողմից քաղաքական իշխանության նվաճումը, նրա դիկտատուրայի հաստատումը, նշելով նաև պայքարի այնպիսի մերձավորագույն խնդիրներ, ինչպիսիք են ցարիզմի տապալումը և քաղաքական ազատությունների նվաճումը, որոնք



ունեին համաժողովրդական բնույթ և նախապայման էին գլխավոր նպատակին հասնելու համար։ Շահագործման, գործազրկության, զրկանքների, խավարի ու տգիտության վերացման, դասակարգերի ու դասերի հակամարտությունների ոչնչացման, ազգային հարցի դեմոկրատական լուծման, հասարակական արտադրության պլանաչափ կազմակերպման, հասարակության անդամների բարեկեցության ապահովման ու համակողմանի զարգացման վերաբերյալ ծրագրային պահանջների իրականացումը դարձավ բոլշևիկ-լենինյանների կյանքի ու պայքարի իմաստը։

Կուսակցության ինչպես առաջին, այնպես էլ հաջորդ ծրագրերը, ինչպես նաև նրա անվանումներն իսկ բովանդակում են նրա դասակարգային, ինտերնացիոնալ և ժողովրդական էությունը։ Բայց դա չի նշանակում, թե սկզբից ևեթ բոլոր աշխատավորները լիովին ընկալել են բոլշևիկների ծրագիրը, գնացել նրանց ետևից։ Եվ դա հասկանալի է։ Ռուսաստանի բնակչության հոծ մեծամասնությունը կազմող աշխատավոր գյուղացիությունը, որն իր կյանքը դարեր շարունակ խարսխում էր մանր սեփականության վրա, հայացքներով, քաղաքական ձգտումներով ու միտումներով և նիստուկացով էականորեն տարբերվում էր պրոլետարիատից։ Նրա երազանքը մանր սեփականության հավերժացումն էր։ Ինչ վերաբերում է պրոլետարիատին, ապա կապիտալիզմի օրոք նա միատարր չէ։ Նրա մեջ կան ի ծնե բանվորներ, բուրժուազիային վաճառված վերնախավ և մանրբուրժուազիայից եկած անկայուն մաս։ Առաջինները հանդիսանում են մարքսիստական կուսակցության սոցիալական բազան, երկրորդը՝ ռեֆորմիզմի, երրորդը՝ անարխիզմի, մենշևիզմի և այլոց։ Պահանջվեց երկարամյա պայքար, համառ ու հետևողական աշխատանք, որպեսզի բոլշևիկները գաղափարապես ջախջախեին հակամարքսիստական հոսանքներին և ամբողջ բանվոր դասակարգին, ապա նաև՝ մնացած աշխատավորներին գրավեին իրենց կողմը, ստեղծեին ու ամրապնդեին ամուր դաշինք բանվոր դասակարգի և գյուղացիության միջև, ազգերին ու ժողովուրդներին համախմբեին ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո։

Կուսակցությունը ոչ պրոլետարական աշխատավորներին թեքել է իր կողմը, նրա մեջ պատվաստելով բանվոր դասակարգի ազնիվ գծերը, «այն ամենը, ինչ հիրավի մեծ է ու հերոսական» նրա մեջ՝ «անվեհեր միտքը, երկաթե, աննկուն, համառ, ամեն ինչ հաղթահարող կամքը, սրբազան ատելությունը, մահու չափ ատելությունը դեպի ստրկությունն ու ճնշումը, լեռներ շարժող հեղափոխական կիրքը, անսահման հավատը մասսաների ստեղծագործական ուժերի նկատմամբ, հսկայական կազմակերպական հանճարը», որոնք իրենց հոյակապ մարմնացումը գտան «Լենինի մեջ, որի անունը դարձել է նոր աշխարհի սիմվոլը՝ արևմուտքից մինչև արևելք, հարավից մինչև հյուսիս» (ՍՄԿԿ-ն բանաձևերում ու որոշումներում, I մաս, «Հայպետհրատ», 1954 թ., էջ 1028)։ Նրա գործունեության մեջ դասակարգային ուղղվածությունը և ամբողջ ժողովրդի շահերի արտահայտությունը միշտ էլ կազմել են անքակտ միասնություն։ Կուսակցության քաղաքականության ու պրակտիկ գործողությունների այդ երկմիասնական գիծը բխում է պրոլետարիատի համաշխարհային-պատմական առաքելության և պատմության մեջ ժողովրդական զանգվածների վճռական դերի մասին մարքսիստական ուսմունքից, հեղափոխական պայքարի պահանջմունքներից ու փորձից։

Մերկացնելով II Ինտերնացիոնալի օպորտունիստներին, որոնք աղավաղում էին նոր տիպի կուսակցության՝ որպես ամբողջ ժողովրդի առաջնորդի, դերը, Վ. Ի. Լենինը գրում էր. «Դաստիարակելով բանվորական կուսակցությունը, մարքսիզմը դաստիարակում է պրոլետարիատի ավանգարդը, որն ընդունակ է գրավելու իշխանությունը և ամբողջ ժողովրդին առաջնորդելու դեպի սոցիալիզմ, կարգավորելու և կազմակերպելու նոր հասարակարգը, լինելու բոլոր աշխատավորների ու շահագործվողների ուսուցիչը, ղեկավարը, առաջնորդը նրանց հասարակական կյանքն առանց բուրժուազիայի և բուրժուազիայի դեմ կազմակերպելու գործում» (ԵԼԺ, հ. 33, էջ 33)։ Դա լինելու էր այն կուսակցությունը, որ խորհելու և պայքարելու էր հասարակության մեջ գոյություն ունեցող ամեն կարգի չարիքները վերացնելու, աշխատանքի մարդկանց

անառարկելի փաստի արձանագրումն է, որ կուսակցության կողմից իր առջև դրված նպատակներն ու խնդիրները ճշտորեն են արտահայտում սովետական բոլոր մարդկանց իղձերը, պահանջմունքները» (Յու. Վ. Անդրոպով, ՍՍՀՄ 60 տարին, «Հայաստան» հրատ., 1983, էջ 28)։

Դրան համապատասխան կուսակցությունն առաջադրում և լուծում է համաժողովրդական մասշտաբի բարդ խնդիրներ, ստեղծագործաբար զարգացնում ու նոր աստիճանի բարձրացնում իր շարքերի համալրման լենինյան սկզբունքները։ Դրանցից հիմնականը կուսակցության անդամության հարցն է։ ՌՍԴԲԿ երկրորդ համագումարին Լենինի կողմից ներկայացված կանոնադրության առաջին պարագրաֆում ասված է, թե «Կուսակցության անդամ է համարվում ամեն ոք, ով ընդունում է նրա ծրագիրը, օժանդակում է կուսակցությանը նյութական միջոցներով, այնպես էլ կուսակցական կազմակերպություններից որևէ մեկին անձամբ մասնակցելով»։ Այժմ գործող կանոնադրության մեջ տրված է հետևյալ ձևակերպումը. «ՍՄԿԿ անդամ կարող է լինել Սովետական Միության ամեն մի քաղաքացի, ով ընդունում է կուսակցության ծրագիրն ու կանոնադրությունը, ակտիվորեն մասնակցում է կոմունիզմի կառուցմանը, աշխատում է կուսակցական կազմակերպություններից մեկում, կատարում է կուսակցության որոշումները և մուծում անդամավճար»։ Այս համառոտ ձևակերպումը արտահայտում է կուսակցության թե՛ դասակարգային, թե՛ ժողովրդական բնույթը։ Նրա, որպես այդպիսինի, գործունեությունն իր արտացոլումն է գտնում սոցիալիստական հասարակության ղեկավարման ձևերում ու մեթոդներում, կուսակցական շինարարության, ներկուսակցական կյանքի այնպիսի հանգուցային հարցերում, ինչպիսիք են կուսակցության շարքերի աճն ու կարգավորումը, բանվորական կորիզի ուժեղացումը, կոմունիստների պատասխանատվության բարձրացումը, դեմոկրատական ցենտրալիզմի հետևողական կիրառումը, ներկուսակցական դեմոկրատիայի զարգացումը, քըննադատության ու ինքնաքննադատության է՛լ ավելի լայն ծավալումը, կուսակցական, պետական, աշխատանքային ու արտադրական կարգապահության ամրապնդումը։

Կուսակցության սոցիալական կազմը գոնեթե ճշգրտորեն արտացոլում է զարգացած սոցիալիստական հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքը։ 1981 թվականին նրա անդամ-թեկնածուների 43,4 տոկոսը բանվորներ էին, 12,8 տոկոսը՝ գյուղացիներ (կոլտնտեսականներ), 43,8 տոկոսը՝ մտավորականներ, ծառայողներ և այլոք (տե՛ս КПСС справочник, М., 1982 г., стр. 439)։

ՍՄԿԿ XXVI համագումարի պատգամավորները ներկայացնում էին համապատասխանաբար բանվոր դասակարգին, կոլտնտեսային գյուղացիությանը, ժողովրդական մտավորականությանը, բնակչության բոլոր սոցիալական խավերին, սերունդների անխզելի կապը, կյանքի բոլոր ոլորտները։ Նրանց մեջ կային սոցիալիստական ինդուստրիայի 1.370 բանվորներ, գյուղատնտեսության 877 աշխատողներ, 609 տնտեսական ղեկավարներ, 269 գիտնականներ, գրողներ, բժիշկներ, նկարիչներ, ուսուցիչներ, արտիստներ և մտավորականության այլ ներկայացուցիչներ, ՍՍՀՄ գիտությունների, ճյուղային և հանրապետությունների ակադեմիաների 118 իսկական անդամներ ու թղթակից անդամներ, 1077 կուսակցական, 691 սովետական, արհմիութենական և կոմերիտական աշխատողներ։ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի, սովետական երկրի ժողովուրդների եղբայրական անխախտ բարեկամության կենդանի մարմնավորումն է։ Համագումարի աշխատանքին մասնակցում էին 66 ազգերի ու ազգությունների ներկայացուցիչներ (տե՛ս ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 152—156)։

Զարգացած սոցիալիզմի ժամանակ մեծ չափերով ընդլայնվում են կուսակցական ղեկավարության շրջանակները, զգալիորեն աճում կուսակցության դերն ու նշանակությունը հասարակական կյանքի բոլոր ոլորտներում։ Վերջին տվյալներով նրա կազմում կան միութենական հանրապետությունների 14 կոմունիստական կուսակցությունների կենտկոմներ, 6 երկրկոմներ, 150 մարզ-



կոմներ, մարզկոմներին հավասարեցված 2 քաղկոմներ, 10 օկրուգկոմներ, 864 քաղկոմներ, 631 քաղաքային և 2.887 գյուղական շրջկոմներ, 41.4048 սկզբնական կուսկազմակերպություններ (КПСС справочник, М., 1982 г., стр. 442)։

Բոլոր կուսակցական կազմակերպությունները գործում են ՍՍՀՄ սահմանադրության շրջանակներում։ Դրա 6-րդ հոդվածում ասված է. «Սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը, նրա քաղաքական սիստեմի, բոլոր պետական ու հասարակական կազմակերպությունների միջուկը Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն է։ ՍՄԿԿ-ն գոյություն ունի ժողովրդի համար և ծառայում է ժողովրդին։

Զինված մարքս-լենինյան ուսմունքով, կոմունիստական կուսակցությունը սահմանում է հասարակության զարգացման գլխավոր հեռանկարը, ՍՍՀՄ ներքին և արտաքին քաղաքականության գիծը, ղեկավարում է սովետական ժողովրդի մեծ ստեղծարար գործունեությունը, պլանաչափ, գիտականորեն հիմնավորված բնույթ է տալիս կոմունիզմի հաղթանակի համար նրա պայքարին»։

Դա սովետական երկրի քաղաքական իրողության օբյեկտիվ արտացոլումն է նրա հիմնական օրենքի մեջ, ամբողջ ժողովրդի կողմից կուսակցության մեծագործությունների և բարձրագույն հեղինակության ընդունումը։ 1980 թվականի տվյալներով ժողովրդական դեպուտատների սովետների կազմում աշխատում էին 1 միլիոն կոմունիստներ, արհմիութենական ղեկավար օրգաններում՝ 3,5 միլիոն, կոմերիտական օրգաններում՝ 1 միլիոն (տե՛ս Конституция СССР— основа развития социалистической демократии, М., «Мысль», 1980, стр. 49)։

Զարգացած սոցիալիզմի ժամանակ կոմունիստական կուսակցության ղեկավար դերի աճը օբյեկտիվ օրինաչափություն է, որ պայմանավորված է բոլոր օղակների պատասխանատվության անշեղ բարձրացումով, կոմունիստական շինարարության մասշտաբների մեծացումով, ծագող խնդիրների բարդությամբ, մասսաների ստեղծագործական ակտիվության վերելքով, սոցիալիստական դեմոկրատիայի ավելի ու ավելի լայն ծավալումով, գիտական կոմունիզմի տեսության աճող նշանակությամբ, նրա ստեղծագործական կիրառման, աշխատանքի ոճի, ձևերի ու մեթոդների կատարելագործման անհրաժեշտությամբ, նոր մարդու ձևավորման պահանջով և բազմաթիվ այլ հանգամանքներով։

Լենինյան կուսակցությանը պատկանելը այնպիսի բարձրագույն պատիվ է, որին արժանի լինելը բոլոր ազնիվ և նվիրված մարդիկ համարել են իղձ ու երազանք։ Կուսակցությունը միշտ էլ անողոք պայքար է մղել այդ պատիվը ոտնահարողների, բյուրոկրատիզմի, քաշքշուկի, անհոգի վերաբերմունքի, անբարոյական արարքների, անպատասխանատվության, ձևամոլության ու պարագայնության, աչքակապության, անձնական հարստացման նպատակով պետական, հանրային ունեցվածքի օգտագործման, սպեկուլյացիայի, կաշառակերության, ամեն տեսակ պորտաբուծության, ժողովրդի ստեղծագործական ուժերի նկատմամբ թերահավատության, կարգապահական խախտումների և այլ նեգատիվ երևույթների դեմ։ Մեր օրերի համար հատուկ կարևորություն ունեն Վ. Ի. Լենինի ցուցումներն այն մասին, թե՝ «Ով թեկուզ չնչին չափով թուլացնում է պրոլետարիատի կուսակցության երկաթյա կարգապահությունը (առանձնապես նրա դիկտատուրայի ժամանակ), նա փաստորեն օգնում է բուրժուազիային՝ ընդդեմ պրոլետարիատի» (ԵԼԺ, հ. 41, էջ 33), թե «Միայն նա կհաղթի և իշխանությունն իր ձեռքում կպահի, ով հավատում է ժողովրդին, ով սուզվում է ժողովրդական կենդանի ստեղծագործության աղբյուրի մեջ» (ԵԼԺ, հ. 35, էջ 65—66)։ Պատմական փորձը վկայում է, որ սոցիալիստական հասարակության զարգացման նորմալ ընթացքն անհնար է՝ առանց օրենքների խստագույն կիրառման, որոնք պաշտպանում են հասարակության շահերը և քաղաքացիների իրավունքները։

Կապիտալիզմի ջատագովները, տեսնելով ու հասկանալով, որ կոմունիզմի գաղափարներն անկասելի ուժով տարածվում են ամբողջ աշխարհում, որ սո-

*ցիալիզմը հնարավոր չէ վերացնել ոչ ռազմական, ոչ էլ տնտեսական ճնշման ճանապարհով, ձգտում են պատմության օբյեկտիվ զարգացման ընթացքը կասեցնել այլ միջոցներով։ Իրենց քաղաքականությունը և գաղափարական զինանոցի բոլոր միջոցները բուրժուական հասարակության սպասարկուները ուղղում են մարդկանց մտքի համար մղվող պայքարի ոլորտը։ Իմպերիալիզմի պաշտպանները գաղափարական դիվերսիայի միջոցով փորձում են իրենց ազդեցությանը ենթարկել անկայուն մարդկանց, կեղծել ու վարկաբեկել ռեալ սոցիալիզմը, մռայլ գույներով նկարագրել կյանքը ՍՍՀՄ-ում և սոցիալիստական ընկերակցության մյուս երկրներում, ամեն կերպ գունազարդել կապիտալիզմը։ Այդ պայմաններում բուրժուական կարգերի ու բարքերի մերկացումը, սոցիալիզմի առավելությունների պրոպագանդումը, կապիտալիստական իրականության սարսափները չտեսած մարդկանց կոմունիստական դաստիարակությունը հույժ կարևորություն են ստանում։ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը շեշտեց, որ մենք ապրում ենք մի այնպիսի պատմական ժամանակաշրջան, որը նշանավորվում է բևեռայնորեն հակադիր երկու աշխարհհայացքների, երկու քաղաքական կուրսերի՝ սոցիալիզմի ու իմպերիալիզմի, այնպիսի հակամարտությամբ, որն իր ինտենսիվությամբ և սրությամբ աննախադեպ է ամբողջ հետպատերազմյան շուրջ չորս տասնամյակներում, որ պայքար է ծավալվում մոլորակի միլիարդավոր մարդկանց մտքերի ու սրտերի համար։ Այդ պատճառով էլ գաղափարախոսական պայքարի հարցերը մղվում են առաջին պլան, ձեռք բերում հատուկ կարևորություն։*

*Կուսակցության ու ժողովրդի միջև հաստատված անխախտ միասնությունը է՛լ ավելի խորացնելու և մի նոր աստիճանի բարձրացնելու ազդու միջոցներից մեկը կուսակցական ու պետական կյանքի կոլեկտիվ ղեկավարման, աշխատանքի ոճի լենինյան սկզբունքների հետևողական կիրառումն է։ Վ. Ի. Լենինի ամբողջ գործունեությունը վառ օրինակ է այն բանի, թե ինչպես կարելի է և պետք է զուգակցել պահանջկոտությունն ու հոգատարությունը մարդկանց նկատմամբ։ Կուսակցության հնագույն գործիչ Ա. Ա. Անդրեևն իր հուշերում գրում է, թե չնայած նիստերում տիրող խստությանը և կարգ ու կանոնին, պետք է ասել, որ այդ նիստերում չէր զգացվում ոչ մի լարվածություն, այլ տիրում էր լիակատար ազատ ընկերական մթնոլորտ։ Լենինը պահանջկոտ էր, բայց մարդկանց նկատմամբ նրա վերաբերմունքի մեջ երբեք գրգռիչ և վիրավորական ոչինչ չկար։ Ամեն մեկն ասում էր այն, ինչ մտածում էր, առանց վախենալու, թե կարող է կոպիտ հակահարված ստանալ։ Լենինի հետ կարելի էր միանգամայն ազատորեն վիճել ցանկացած հարցի շուրջը, և այդպիսի վեճեր լինում էին։ Նա երբեք իր կարծիքն անվիճելի չէր համարում և միշտ ուշադրությամբ լսում էր ուրիշների փաստարկները։ Լենինը ներկաներին ճնշող ոչ մի զգացում չէր ներշնչում, նույնիսկ ուղղություն տվող հարցեր դնելով, ավելի շուտ մարդկանց տրամադրում էր նախաձեռնություն ցուցաբերելու և ազատորեն արտահայտելու իրենց մտքերը և միշտ ուշադրությամբ լսում էր, եթե որևէ մեկը ինչ որ հետաքրքրական բան էր ասում։ Միևնույն ժամանակ նա երբեք աչքաթող չէր անում սկզբունքորեն սխալ որևէ բան։ Երբ խոսքը վերաբերում էր սկզբունքային հարցերին, Լենինն անխնա էր բոլոր նրանց նկատմամբ, ովքեր փորձում էին հանձնել մեր դիրքերը, խախտել բոլշևիկյան սկզբունքները (տե՛ս* Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին, *«Հայպետհրատ», 1958 թ., էջ 44)։*

*Սովետական հասարակության անխորտակելիության, սոցիալիստական հայրենիքի հետագա ծաղկման աղբյուրը եղել և մնում է կուսակցության ու ժողովրդի անսասան միասնությունը։ «Մեր կոմունիստական կուսակցությունը և սովետական ժողովուրդն անբաժանելի են,— ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովը Կենտկոմի նոյեմբերյան (1982) պլենումում։— Նրանք ապրում են լենինյան ուղիով հաստատ ու աներեր առաջ ընթանալու միասնական ձգտմամբ։ Ամրապնդել կուսակցության և ժողովրդի միասնությունը, հաստատակամորեն հետևել Լենինի պատգամներին՝ այս է մեր գալիք բոլոր հաղթանակների գրավականը»։*

*Լենինի ստեղծած, կռած ու կոփած, հեղափոխական փոթորիկների և սոցիալիստական շինարարության բովով անցած կոմունիստների մեծ կուսակցության հարուստ փորձը, բովանդակությամբ ու թափով պատմության մեջ չտեսնված նրա վիթխարի մասշտաբի ստեղծագործական գործունեությունն ու համայն մարդկությանը մատուցած ծառայությունը վաղուց են համընդհանուր ճանաչում գտել, բարձր գնահատվել եղբայրական կուսակցությունների կողմից։ Եվ դա միանգամայն օրինաչափ է, քանի որ արդի դարաշրջանում կատարված մեծագույն վերափոխումների մեջ ոչ մի երկիր, «չի ներդրել ավելի ծանրակշիռ ավանդ, քան Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը՝ մեծ Հոկտեմբերի հայրենիքը, հաղթական սոցիալիզմի առաջին երկիրը»* (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութեր, *էջ 130—131)։*

*ՍՄԿԿ-ն եղել և մնում է համաշխարհային կոմունիստական շարժման ճանաչված ավանգարդը, նրա առավել փորձված և կոփված ջոկատը։ Սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ասպարեզում կուտակած նրա հարուստ փորձը սկզբունքային նշանակություն ունի ամբողջ միջազգային կոմունիստական շարժման համար։*

*ՍՄԿԿ ստրատեգիան ու տակտիկան, ներքին ու արտաքին քաղաքական գործունեությունը միշտ էլ տիպար և ուսանելի են եղել բոլոր հեղափոխական ուժերի համար։ Այն նպատակամղված է ժողովրդի բարօրության անշեղ բարձրացմանը, հողագնդի վրա խաղաղության և մարդկանց առաջնային իրավունքի՝ կյանքի պահպանմանը։ ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը միջազգային կյանքի վրա ազդեցություն են թողել տնտեսական քաղաքականությամբ, սոցիալական բազում պրոբլեմների, մասնավորապես այնպիսի բարդ հարցի լուծումով, ինչպիսին է ազգայինը, մարդկանց միջև արդարության, հավասարության ու եղբայրության հաստատմամբ։ Կուսակցության ազգային քաղաքականության հիմքում միշտ էլ ընկած են եղել բոլոր ազգերի և ազգությունների լիակատար հավասարության, եղբայրական դաշինքի շրջանակներում նրանց ազատ զարգացման ու անշեղ մերձեցման լենինյան սկզբունքները։ Լենինյան կուսակցության հստակ գիծն ու տիտանական աշխատանքը անցյալում ճնշված ազգերին ու ժողովուրդներին դուրս բերին խավարից, տգիտության, սոցիալական ու ազգային ճնշման ճիրաններից, իսկ շատերին նաև՝ ֆիզիկական բնաջնջման ահավոր վտանգից, ինչպես, օրինակ, բազմաչարչար հայ ժողովրդին, նրանց հասցրին այնպիսի բարձունքների, որոնք հիացմունք կամ նախանձ են առաջացնում ողջ աշխարհում։*

*Համաշխարհային հեղափոխական պրոցեսը հիմնականում և գլխավորում ընթացել է այնպես, ինչպես ժամանակին գիտականորեն կռահել են Կ. Մարքսը, Ֆ. Էնգելսը և Վ. Ի. Լենինը։ Զինված մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուսմունքով, կոմունիստական կուսակցությունները ջանքեր չեն խնայում դրա հետագա խորացման ու նպատակին հասցնելու համար, մերկացնում են «ժողովրդական կապիտալիզմի», նրա իբր թե «համընդհանուր բարօրության հասարակության» մասին առասպելները, աշխատանքի մարդկանց պարզաբանում, սովորեցնում են «արմատացած սովորությունների, քաղաքական բանսարկությունների, խրթին օրենքների, խճճված ուսմունքների քողի տակ տեսնել* դասակարգային պայքարը, *ամեն տեսակ ունևոր դասակարգերի պայքարը չունևորների մասսայի՝* պրոլետարիատի դեմ, *որը բոլոր չունևորների գլուխ է կանգնած» (Վ. Ի. Լենին,* ԵԼԺ, *հ. 4, էջ 229)։*

*Մեծ Լենինի հիմնարար դրույթները պրոլետարիատի դասակարգային պայքարի համաժողովրդական բնույթի մասին ունեն անանց նշանակություն։ Եվրոպայի, Ասիայի և Ամերիկայի մի շարք երկրներ վաղուց են այդ պայքարը հասցրել հաղթական վախճանի, իրենց մոտ հաստատելով մի նոր հասարակություն, որի դրոշի վրա գրված է՝ ԱՇԽԱՏԱՆՔ ԵՎ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ։ Այդ ուղիով են ընթանում սոցիալիստական կողմնորոշման շատ երկրներ։ Վաղ թե ուշ այդ ուղին կբռնեն նաև մյուսները։ Այդ մեծ առաքելությունն սկսել է սովետական ժողովուրդը, որն այսօր էլ իր քաղաքական առաջնորդի՝ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ հետևողականորեն կատարելագործում է սոցիալիստական շինարարության ընթացքում ձեռք բերված փորձը, անշեղորեն ընթանում մեծ Լենինի կանխանշած ուղիով։*

Սոցիալիստական ընկերակցության
երկրներում

# ՉԵԽՈՍԼՈՎԱԿԻԱՅԻ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅԱՆ ԴԵՄ

**ՅԱՆ ԿՎԱՍՆԻՉԿԱ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր
Բրատիսլավայի Կոմենսկու անվան համալսարանի ռեկտոր

ՎԵՐՋԵՐՍ ՉԵԽՈՍԼՈՎԱԿԻԱՅՈՒՄ նշվեց բուրժուական ռեակցիայի դեմ աշխատավորների տարած հաղթանակի 35-րդ տարեդարձը, որով նշանավորվեց սոցիալիզմի կառուցման սկիզբը՝ մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին համապատասխան: Անցած 35 տարում չեխոսլովակյան ժողովուրդը, իր կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, ավարտեց սոցիալիստական վերափոխումների և սոցիալիստական շինարարության վսեմ գործը. պատմականորեն կարճ ժամանակամիջոցում դրվեց սոցիալիզմի հիմքը: Մեզանում ստեղծվեց սոցիալիստական հասարակության հզոր նյութատեխնիկական բազա: Քառորդ դարից պակաս ժամանակամիջոցում մենք իրականացրինք սոցիալիստական ինդուստրացում և մանրապրանքային գյուղացիական տնտեսությունների կոոպերացում, որի միջոցով վերացվեցին քաղաքի ու գյուղի միջև եղած խոր տարբերությունները: Այսօր մեր արդյունաբերությունը մոտ մեկ ամսում ավելի շատ արտադրանք է թողարկում, քան արտադրվել է ամբողջ 1937 թվականին: 1948 թվականի սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո Չեխոսլովակիայում կառուցվել է գրեթե 3 միլիոն նոր բնակարան, այսինքն իրենց բնակարանային պայմաններն են բարելավել քաղաքացիների կեսից ավելին:

Սոցիալիզմը կրթություն ստանալու լայն հնարավորություններ ընձեռեց բանվորների ու գյուղացիների երեխաների համար: 1948 թվականից հետո ընկած ժամանակամիջոցում լրիվ միջնակարգ կրթությամբ մասնագետների թիվն աճել է 5, իսկ բարձրագույն կրթությամբ մասնագետներինը՝ ավելի քան 6 անգամ: Մեր երկրին բնորոշ է աշխատավորների ամենալայն խավերի բարձր կենսամակարդակը, իսկ անձնական սպառման և կենցաղային ապահովվածության մի շարք ցուցանիշներով ՉՍՍՀ-ն առաջ է անցել Եվրոպայի բարձր զարգացած որոշ կապիտալիստական երկրներից:

Սոցիալիզմի ամենանշանակալի նվաճումներից մեկը մենք համարում ենք ազգային հարցի լուծումը, որի արտահայտությունն է Չեխոսլովակյան Ֆեդերացիայի ստեղծումը:



Դեպի սոցիալիստական ներկան մեր ուղին հեշտ չի եղել: Մեզ համար մեծ առավելություն էր այն, որ սոցիալիզմի կառուցման բոլոր փուլերում կարող էինք փոխառնել Սովետական Միության, սովետական կոմունիստների կուտակած հարուստ փորձը: Սակայն, չնայած դրան, նոր խնդիրները լուծելիս մեզ ևս հարկ եղավ ընթանալու անծանոթ ուղիներով, հաղթահարելու սեփական սխալներն ու վրիպումները, անցնելու պատմության բազում փորձությունների միջով: Դրանցից ամենածանրը 60-ական թվականների վերջին կուսակցության և հասարակության կյանքում բռնկած խոր ճգնաժամն էր, որը կարողացանք հաղթահարել միայն Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների ինտերնացիոնալ օգնությամբ: Պատմության այդ ամենաբարդ ժամանակահատվածի փորձը մշտական դաս է մեր կուսակցության ու ժողովրդի համար: Պատմությունը ցույց է տվել, որ լենինիզմից, պրոլետարական ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքներից ամեն մի շեղում օգտագործում են ներքին և արտաքին հակասոցիալիստական ուժերը, որոնք այդպես էլ չեն հաշտվել 35 տարի առաջ իրենց կրած պարտության հետ: Ընկեր Գուստավ Հուսակի գլխավորությամբ մարքս-լենինյան ղեկավարության իշխանության գլուխ անցնելուց հետո քաղաքական համախմբման ասպարեզում ամեն մի քայլը և զարգացած սոցիալիզմի կառուցման ստրատեգիական խնդրի իրականացման նպատակով մեր հասարակության դինամիկ զարգացմանն անցնելը (որը ետհամագումարյան շրջանի համար առաջադրեց կուսակցության XIV համագումարը) ուղեկցվում էին դասակարգային թշնամիների մեր ջանքերն ի չիք դարձնելու փորձերով: Չնայած բոլոր խոչընդոտներին, ծառացած բոլոր դժվարություններին, մենք լուծեցինք առաջադրված խնդիրները և, ինչպես ցույց տվեցին կուսակցական կազմակերպությունների վերջերս ավարտված մարզային կոնֆերանսները, ամբողջությամբ վերցրած, հաջողությամբ է լուծվում ՉԿԿ XVI համագումարի ծրագրային խնդիրը՝ կապված էկոնոմիկան ինտենսիվ զարգացման ուղին փոխադրելու, ամբողջ աշխատանքի ավելի բարձր որակին և արդյունավետությանն անցնելու անհրաժեշտության հետ: Բոլոր կուսակցական, տնտեսական, պետական և հասարակական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում է XVI համագումարի սոցիալ-տնտեսական ծրագիրը, որը կենսագործվում է ներքին կյանքի ամենաբարդ պայմաններում, երբ աննախադեպ չափերով սրվել է իմպերիալիստական ուժերի գաղափարական դիվերսիայի ինտենսիվությունը, դիվերսիա, որն իր բնույթով հետզհետե մոտենում է հոգեբանական պատերազմին: Մենք ականատեսն ենք սոցիալիստական երկրների տնտեսական ու քաղաքական զարգացմանը խանգարելու՝ ԱՄՆ-ի գլխավորած ռեակցիայի և իմպերիրալիզմի ուժերի ձգտումների հետագա ուժգնացմանը:

Ռեյգանի վարչակազմը և ՆԱՏՕ-ի նրա դաշնակիցները տնտեսական ագրեսիայի տարբեր ձևեր են կիրառում սոցիալիստական ընկերակցության երկրների դեմ, քաղաքականության բնագավառում անցկացնում, այսպես կոչված, ընտրողական մոտեցման դոկտրինան, որի նպատակն է խարխլել նրանց միասնությունը, թուլացնել կապերը Սովետական Միության հետ: Ռեալ սոցիալիզմի դեմ իմպերիալիզմի ձեռնարկած խաչակրած արշավանքում Ռեյգանի վարչակազմը հսկայական նշանակություն է տալիս այսօրվա հոգեբանական պատերազմին, որը ենթադրում է մեր երկրի դեմ ուղղված գաղափարական դիվերսիայի և հակակոմունիստական պրոպագանդայի ինտենսիվության խիստ ուժեղացում:

Հակակոմունիստական պրոպագանդան, որի ազդեցությունը արևմտագերմանական և ավստրիական հեռուստահաղորդումների միջոցով հասնում է մեր երկրի տարածքի զգալի մասին, իր տեսական սխեմաներում ավելի հաճախ է կրկնում պլյուրալիզմի տեսությունը: Դրա հիմքում ընկած է, այսպես ասած, «երկրորդ» կամ «այընտիր» էկոնոմիկայի, գաղափարախոսության, մշակույթի «այլընտիր» արհմիութենական շարժման կամ խաղաղության շարժման հռչակումը: Դիվերսիոն ռադիոկայանները նենգ գաղափարներ են տարածում այն մասին, թե, իբր, մեր տնտեսական կյանքի բոլոր պրոբլեմները բխում էին

այն բանից, որ մեր էկոնոմիկան, «պլյուրալ» («բազմակիական») չէ: Միակ ելքը դրանից նրանք տեսնում են մասնավոր հատվածին և «ազատ ձեռնարկչությանը» կրկին ազատություն տալու, շուկայի մեխանիզմի առավել մեծ ազդեցության մեջ: Այդօրինակ դեղատոմսերի բուն դասակարգային քաղաքական բովանդակությունը մեզ լավ հայտնի է 1968—1969 ճգնաժամային տարիներից, երբ դրանք դարձան հակահեղափոխության ծրագիրը:

Պլյուրալիստական նիզակի սուր ծայրն ուղղված է ամենից առաջ սոցիալիստական էկոնոմիկայի սրտին՝ պետական սեկտորի արտադրամիջոցների, սոցիալիստական հանրային սեփականության, ամբողջ ազգային էկոնոմիկայի զարգացման կենտրոնացված պլանավորման դեմ: Ինչպես և ճգնաժամի տարիներին, այդ առաջարկներն ուղղված են էկոնոմիկայի կառավարման ու պլանավորման ասպարեզում կուսակցության ղեկավար դերի բացասմանն ու աստիճանական վերացմանը, էկոնոմիկայի կառավարումը քաղաքական ղեկավարումից անջատելուն, համաժողովրդական սեփականության աստիճանական վերացմանը: Գաղափարական դիվերսիայի տվյալ մեթոդի նոր տարրը որոշ սոցիալիստական երկրներում էկոնոմիկայի զարգացման վերաբերյալ սխալ ինֆորմացիա տարածելու նշանակության կարևորումն է: Այսպես օրինակ, ՀԺՀ էկոնոմիկայի, այսպես կոչված, նոր մոդելի դրվատումը: Նմանօրինակ հարձակումներին մենք արձագանքում ենք իրավիճակի վերաբերյալ կոմունիստներին և բոլոր աշխատավորներին կոնկրետ, օբյեկտիվ ինֆորմացիա տալով, ընդ որում հենվում ենք հունգարական բանվորական կուսակցության տեսակետի վրա:

Մենք լիովին պաշտպանում ենք Կարլ Մարքսի մահվան 100-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Յու. Վ. Անդրոպովի այն միտքը, որ սոցիալիստական էկոնոմիկան ինտենսիվ զարգացման ուղին փոխադրելիս հառնող բոլոր պրոբլեմների ու դժվարությունների «ծագումը լինում է տարբեր, բայց այն երբեք կապված չէ արդեն հաստատված և իր առավելություններն ապացուցած հանրային, կոլեկտիվ սեփականության էության հետ: Ընդհակառակը, մեր ժողովրդական տնտեսության այս կամ այն տեղամասերում երբեմն նորմալ աշխատանքը խախտող թերությունների մի նշանակալի բաժնի պատճառը նահանջներն են տնտեսական կյանքի նորմերից, պահանջներից, կյանք, որի հիմքերի հիմքը արտադրամիջոցների սոցիալիստական սեփականությունն է»: Ուստի և պլանավորումը բարելավելու, տնտեսական մեխանիզմի արդյունավետությունը բարձրացնելու իր ջանքերը մեր կուսակցությունը զուգակցում է վերարտադրության պրոցեսի բոլոր օղակներում կարգապահության ամրապնդմանն ուղղված քաղկազմակերպչական լայն գործունեության, այսինքն՝ մեր սոցիալիստական էկոնոմիկայի ներքին ռեզերվների մոբիլիզացման, ՏՓԽ երկրների և, առաջին հերթին, Սովետական Միության, միջև աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման խորացման ու ինտենսիվացման հետ: Գիտակցելով էկոնոմիկայի բնագավառում սոցիալիստական ինտեգրացման վճռական նշանակությունը մեր երկրի համար, կուզենայինք ավելի լայնորեն ու լիովին օգտագործել այն հնարավորությունները, որ մեր առջև բացում է արտադրության, գիտության և գիտական հետազոտությունների ոլորտներում համագործակցությունը ամենից առաջ Սովետական Միության հետ:

Պրոպագանդելով «պլյուրալիզմի» տեսությունը, հակակոմունիստական կենտրոնները պահանջում են սոցիալիստական պետության պայմաններում ստեղծել «այլընտիր» քաղաքական ուժ կամ, այլ կերպ ասած, «այլընտիր» քաղաքական կառուցվածքներ, մի բան, որն իրականում նշանակում է թույլ տալ հակասոցիալիստական, հակահեղափոխական ընդդիմադիր ուժերի գործունեությունը: Ճգնաժամի տարիներին մեր երկրում այդ ֆունկցիան կատարելու էին տարբեր կարգի «ակումբները», իսկ Լեհական Ժողովրդական Հանրապետությունում՝ ամենից առաջ հակահեղափոխական «բանվորների պաշտպանության կոմիտեն» ու տխրահռչակ «Համերաշխությունը»: Իմպերիալիստական կենտրոնները հակահեղափոխական քաղաքական ընդդիմադիր ուժերի



սաղմերը տեսնում են առանձին անձանց կամ «այլախոհներ» կեղծ անվանումը ստացած հակասոցիալիստական տարրերի փոքրաթիվ խմբերի գործունեության մեջ: Նրանց շռայլորեն ֆինանսավորում են իմպերիալիզմի հակակոմունիստական և գաղափարադիվերսիոն կենտրոնները, որոնք յուրաքանչյուրին, ով ցանկանում է կեղտաջուր թափել սոցիալիստական հասարակական սիստեմի վրա, հենց տեղնուտեղը մկրտում են «գիտնական», «արվեստագետ» և նման այլ տիտղոսներով: Հարկ է շեշտել, որ իմպերիալիստների կողմից վարկավորվող այդ ռենեգատներն ու կարիերիստները երբեք չեն ունեցել ոչ մի դրական ծրագիր, նրանք սոսկ եղել ու մնում են ռեալ կերպով գոյություն ունեցող պրոբլեմների մակաբույծները, ընդսմին որպես ծրագրային նպատակ ունենալով ռեալ սոցիալիզմի փլուզումը, ջայքայումը՝ որպես կապիտալիզմի ու վարձու ստրկության վերականգնման ուղի:

Սխալ կլիներ պարտություն կրած աջ ռևիզիոնիստական և հակասոցիալիստական ուժերի մնացորդների գործունեությունը թերագնահատել՝ ելնելով նրանց սակավաթվությունից ու մեկուսացվածությունից: Նրանք հոգեբանական ճնշում են գործադրում նրանց վրա, ովքեր անձնվիրաբար հանդես են գալիս կուսակցության և սոցիալիստական պետության քաղաքականության օգտին, ըստ որում այդ հերձվածողների սիրած մեթոդը անստորագիր նամակներ տարածելու միջոցով ազնիվ մարդկանց վարկաբեկելն է: Սակայն կուսակցական և պետական մարմիններն իրենց ակտիվին վճռականորեն պաշտպանում են այդօրինակ նենգամիտ ձեռնարկումներից:

«Գաղափարական և արժեքաբանական պլյուրալիզմի» շրջանակներում «այլընտիր» գաղափարախոսությունը պետք լիներ կրոնը: Հոգեբանական պատերազմի կազմակերպիչները Չեխոսլովակիայի դեմ գործելիս չափազանց մեծ նշանակություն են տալիս եկեղեցին, գլխավորապես, կաթոլիկ եկեղեցին օգտագործելուն: Նախորդ տարին հավատացյալների և կաթոլիկական հիերարխիայի վրա ճնշում գործադրելու՝ Վատիկանի եռանդուն ջանքերի և իմպերիալիստական գաղափարադիվերսիոն կենտրոնների հակակոմունիստական լայն կամպանիայի ժամանակաշրջան էր:

Կապիտալիստական երկրների մասսայական ինֆորմացիայի միջոցներն սկսեցին պնդել, թե մեր երկրի պետական մարմիններն իբր լայն հալածանքներ են ծավալել հավատացյալների և առանձնապես կաթոլիկ քահանաների դեմ: Թե որքան հեռու կարող է տանել կղերական հակակոմունիզմի կամպանիա կազմակերպողների երևակայությունը, վկայում է արևմտագերմանական կաթոլիկական տպագիր գործակալության անցյալ տարվա տարածած այն հերյուրանքը, թե հավատացյալներին հալածելու նպատակով ապակի է ավելացվել մարդկանց վաճառվող ատամնամածուկի մեջ: Իրականում ճշմարտությունը հակառակն է: Վատիկանը սկսեց պաշտպանել Ռեյգանի խաչակրաց արշավանքը ռեալ սոցիալիզմի դեմ, մեր երկրի դեմ ծավալելով լայն հարձակում, որի նպատակն է՝ փոխել մեր եկեղեցու դիրքավորումը:

Լայնորեն պլանավորվող այդ ամբողջ գրոհը հաջողությամբ չպսակվեց, քանի որ նրա կազմակերպիչները անտեսել էին մի քանի կարևորագույն գործոն. չեխոսլովակյան գյուղը բնութագրվում է սոցիալիստական կոոպերատիվ սեկտորի առկայությամբ: Սոցիալիստական գյուղի կենտրոնական դեմքը կարող է լինել ոչ թե քահանան, այլ բանվորագյուղացիական իշխանության տեղական մարմինը՝ ազգային կոմիտեն: Հոգևորականությունը ոչ մի շահ չունի կոնֆլիկտի մեջ մտնելու միասնական գյուղատնտեսական կոոպերատիվի հետ, որը բնակչության գիտակցության մեջ հաստատուն տեղ է գրավել՝ որպես սոցիալիզմի առավելություն: Ի տարբերություն ԼԺՀ-ի, Սլովակիայում քաղաքական կղերականությունն էր իշխանության գլուխ կանգնած II համաշխարհային պատերազմի տարիներին, երբ նա համագործակցում էր գերմանական ֆաշիզմի հետ և վարկաբեկվեց նրա հանցագործություններին ունեցած իր մասնակցությամբ: Սլովակյան ժողովուրդն ընդմիշտ մերժեց այն՝ սլովակյան ազգային ապստամբության ընթացքում:

Վատիկանի հակակոմունիստական կամպիան ուղղված էր նաև հանուն խաղաղության հանդես եկող կաթոլիկ հոգևորականության ասոցիացիայի դեմ, որը խաղաղության պաշտպանությամբ հանդես գալու և սոցիալիզմի նկատմամբ ունեցած դրական վերաբերմունքի պատճառով դարձել է հոգեբանական պատերազմի կազմակերպիչների աչքի փուշը։ Ասոցիացիան որոշում է ընդունել ակտիվորեն պաշտպանել խաղաղության պայքարը, հանդես գալ միջուկային աղետի դեմ։

«Աշխարհին խաղաղություն» ասոցիացիայի վրա Վատիկանի հարձակումների շարժառիթները ոչ թե կրոնական, այլ քաղաքական բնույթ են կրում։ Անդրադառնալով հավատացյալների նկատմամբ մեր պետության վերաբերմունքին, նշենք, որ սոցիալիստական պետությունը երաշխավորում է քաղաքացիների իրավահավասարությունը՝ կրոնի նկատմամբ նրանց վերաբերմունքից անկախ։ Մենք գնահատում ենք հավատացյալների ակտիվ մասնակցությունը մեր երկրի զարգացմանը, այն դիտելով որպես մեր ժողովրդի շահերի ընդհանրության ապացույց։ Հենվելով աշխատավորների փորձի, նրանց միասնության և խաղաղության պրոգրեսիվ ձգտումների վրա, մենք վճռական դիմադրություն ենք ցույց տվել և ցույց տալիս նմանօրինակ գաղափարախոսական հին դիվերսիաներին՝ ինչ ձևով էլ դրանք, թեկուզ և կղերական, դրսևորվելիս լինեն։

Քաղաքական կղերականությունը շարունակում է որպես կարևորագույն գործոն մնալ ռեալ սոցիալիզմի երկրների դեմ իմպերիալիզմի հակակոմունիստական դիվերսիաների պլաններում։ Կղերական հակակոմունիզմի դեմ պայքարելու նախապայմանը նաև մարքսիզմ-լենինիզմի և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա խարսխված գիտական աշխարհայացքի ձևավորման ու ամրապնդման համար հետևողական աշխատանքն է։ Այսօր անհրաժեշտ է մեծացնել այդ պայքարի ինտենսիվությունն ու արդյունավետությունը, բարձրացնել դրա ներգործունությունը աշխատավորների գիտակցության, հատկապես աճող սերնդի գիտակցության մեջ։

Սոցիալիստական Չեխոսլովակիայի դեմ մղվող հոգեբանական պատերազմում կայուն տեղ են գրավում նացիոնալիզմի տարբեր ձևերի պրոպագանդումը, չափազանցված ազգային զգացմունքի պաշտպանումը, ազգային ավանդույթների ըմբռնման նկատմամբ դասակարգային մոտեցման բացակայությունը, դրանց խեղաթյուրումը, չեխ ու սլովակ ժողովուրդների միասնության՝ որպես մեր պետության հիմնական հասարակական հենարաններից մեկի, խարխլումը։ Այդ նպատակով իսկ հակակոմունիստական կենտրոնները ամենաանհեթեթ հերյուրանքներ են տարածում այն մասին, թե որ ժողովուրդն է մեր երկրում կանգնած իշխանության գլուխ և որ ժողովուրդն է գտնվում առավել նպաստավոր վիճակում, թեև Չեխոսլովակիայի պայմաններում նման հարցադրումները բացարձակապես անիմաստ են, քանի որ մեր երկու ժողովուրդներն էլ՝ և՛ չեխերը, և՛ սլովակները, որոնք սլավոնական ժողովուրդների մեջ լեզվական առումով և իրենց պատմական ճակատագրով առավել մոտ են իրար, դարձել են սոցիալիստական, և նրանց միասնությունը խորանում է ՉԿԿ-ի՝ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա խարսխված մարքս-լենինյան քաղաքականությամբ ու սոցիալիզմի կառուցման ընդհանուր ջանքերով։ Չեխոսլովակիայի դեմ ուղղված հակակոմունիստական պրոպագանդայի մեթոդներից մեկը նացիոնալիզմի վերապրուկների ըստ ամենայնի վերածնումն է, այն բանի արհեստական վերածնումը, ինչը մի ժամանակ բաժանել է մեր ժողովուրդներին և ինչը հաղթահարվել է կապիտալի ու ֆաշիզմի դեմ մղված համատեղ պայքարով, ինչպես նաև սոցիալիզմի համատեղ կառուցման ճանապարհով։ Սակայն նացիոնալիստական վերապրուկների վտանգը չի կարելի թերագնահատել անգամ մեր երկրի պայմաններում, քանի որ մեզանում լրիվ չափով հրատապ է Վ. Ի. Լենինի արտահայտած այն միտքը, թե՝ սոցիալիստական արտադրահարաբերությունների հաղթանակից հետո հին հասարակության վերապրուկներից հենց նացիոնալիստական տրամադրություններն են տարբեր պատճառներով ամենից երկար պահպանվում աշ-



խատավորների որոշ խավերի գիտակցության մեջ, որ դրանք կենսունակ են մնում շատ երկար ժամանակ, քանի որ կարող են միահյուսվել մարդկանց առօրյա, մասնավոր հարաբերություններում տեղ գտած այլ տիպի վերապրուկներին։ Նացիոնալիստական վտանգի նենգությունը զգալի է և այն պատճառով, որ մեր դասակարգային թշնամին դրա իսկ հիման վրա է ենթադրում աշխուժացնել հակասովետիզմի տարբեր ձևերը, որը արդի հակակոմունիզմի հիմնական գաղափարական բովանդակությունն է, արդի հակակոմունիզմի բոլոր ձևերի հիմնական միջուկը։

Ներկայումս հակակոմունիստական պրոպագանդայի ուշադրության կենտրոնում են երկու պարագաներ՝ ռեալ սոցիալիզմի վարկաբեկումը և հակասովետիզմը, որոնք սերտորեն են կապված միմյանց հետ։ Ինչպես ՉԿԿ-ի XV համագումարում շեշտեց Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Գ. Հուսակը, «Հակակոմունիզմը հանդես է գալիս ամենից առաջ որպես հակասովետիզմ։ Դա կապված է այն բանի հետ, որ Սովետական Միությունը հեղափոխական և ժողովրդադեմոկրատական ուժերի, սոցիալիզմի, դեմոկրատիայի և խաղաղության ուժերի գլխավոր հենարանն է»։ Սովետական Միությունը, լինելով խաղաղության, դեմոկրատիայի և ժողովուրդների իսկական ազատության պատվար, տնտեսական ու ռազմական առումով ամենաուժեղ սոցիալիստական պետությունը, միջազգային իմպերիալիզմի և հատկապես ամերիկյան իմպերիալիզմի համաշխարհային տիրապետության հասնելու ձգտումների գլխավոր խոչընդոտն է։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից ի վեր սովետական ժողովուրդն իր ուսերին է կրում իմպերիալիզմի դեմ ժողովուրդների պայքարի հիմնական ծանրությունը։ Սովետական Միությունը խաղաղության և սոցիալական պրոգրեսի պայքարի հիմնական պատվարն է։

Հաղթանակած սոցիալիստական հեղափոխության առաջին երկիրը, որտեղ պատմության մեջ առաջին անգամ ամենաբարդ ազգային, աշխարհագրական և տնտեսական պայմաններում հաղթեց սոցիալիզմը, կուտակել է նոր հասարակարգի կառուցման ամենահարուստ փորձը։ Հեղափոխական բանվորական շարժման պատմության մեջ առաջին նոր տիպի կուսակցությունը՝ լենինյան ՍՄԿԿ-ն, ամենամեծ ավանդն է ներդրել մարքսիզմ-լենինիզմի տեսության մեջ։ Լենինիզմը ամենաարդիական ուսմունքն է, որն ունի անանց միջազգային ներգործունություն։ Ինչպես վերջերս շեշտեց Յու. Վ. Անդրոպովը, «Լենինի անունն անբաժանելի է Մարքսի անունից։ Լենինիզմից դուրս և առանց դրա մարքսիզմը մեր ժամանակներում պարզապես անհնարին է»։

Սովետական Միությունն իր գործնականորեն անսպառ բնական, հումքային, գիտական, տեխնիկական և կադրային պոտենցիալով, իր պաշտպանական հզորությամբ և քաղաքական հեղինակությամբ յուրաքանչյուր սոցիալիստական պետության և ամբողջ սոցիալիստական ընկերակցության անկախ զարգացման, աշխարհի խաղաղության պահպանման հիմնական երաշխիքն է։ Սովետական Միությունը և նրա լենինյան կոմունիստական կուսակցությունը համաշխարհային հեղափոխական պրոցեսում կատարում են օբյեկտիվ, միայն իրենց ներհատուկ քաղաքական, տնտեսական, գաղափարախոսական, ինտեգրացիոն, աշխարհաստեղծ և խաղաղապաշտպան ֆունկցիաներ, որոնք ուրույն միջոցներով դրսևորվում են համաշխարհային հեղափոխական պրոցեսի բոլոր երեք ուղղություններում։ Ուստի և հակակոմունիզմն ուղղված է ոչ միայն Սովետական Միության, նրա կուսակցության ու ժողովրդի, այլև աշխարհի բոլոր խաղաղասեր, պրոգրեսիվ հեափոխական ուժերի դեմ։

Միջազգային կոմունիստական շարժման արդի փուլում նոր հետևողականությամբ է գործում այն սկզբունքը, որն արդեն Կոմունիստական ինտերնացիոնալի ժամանակներում արտահայտեցին կոմունիստական կուսակցությունների և կոմունիստական շարժմանականավոր ներկայացուցիչները՝ Կլեմենտ Գոտվալդը, Մորիս Թորեզը, Պալմիրո Տոլյատին, Վիլհելմ Պիկը, Էռնստ Թելմանը և շատ ուրիշներ, որ վերաբերմունքը Սովետական Միության և նրա լենինյան կոմունիստական կուսակցության նկատմամբ իսկական հայրենասի-

րության փորձաքարն է և պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիմնական չափանիշը։ Մեզ՝ չեխոսլովակյան կոմունիստներիս, համար պրոլետարական ինտերնացիոնալիզմը, որը սոցիալիստական ընկերակցության կազմավորումով վերածվեց սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, եղբայրական բարեկամության և համագործակցության ամուր կապերով կապված է Սովետական Միության հետ։

Այս դրույթը դարձել է ՉԿԿ-ի և մեր սոցիալիստական պետության արտաքին քաղաքականության անկյունաքարը, քանի որ բխում է մեր ժողովրդի, այն է՝ չեխերի, սլովակների և մեր երկրում ապրող մյուս ազգությունների պատմական փորձից։ Սովետական Միությունը, նրա պանծալի բանակը, նրա ժողովուրդը, ֆաշիզմի դեմ տարած համաշխարհային պատմական հաղթանակով, հիմնական պայմաններն են ստեղծել, որպեսզի մենք կարողանանք ազատորեն ընտրել սոցիալիստական զարգացման ուղին։ Սովետական Միությունն էր, որ մեզ պաշտպանեց իմպերիալիստական ինտերվենցիայի վտանգից, 1968 թվականի քաղաքացիական պատերազմի սպառնալիքից։ Սովետական Միությունը շարունակ անշահախնդիր օգնություն է ցույց տվել ու տալիս մեզ։ Չեխ, սլովակ և մեր երկրում ապրող մյուս ազգությունների, նորագույն պատմությունից բխող գլխավոր հետևությունները, մեր կուսակցության հեղափոխական պայքարից բխող անհերքելի հետևությունները մեր կուսակցության քարտուղար ընկ. Գուստավ Հուսակը ՍՄԿԿ XXIV համագումարում ձևակերպեց հետևյալ կերպ. «Ամբողջ պատմությունը մեզ համոզել է այն բանում, որ չեխոսլովակյան կոմունիստները կապիտալիզմի դեմ մղած պայքարում և սոցիալիզմի կառուցման ընթացքում միշտ հաջողությունների են հասել այն դեպքում, երբ ընկերական սերտ կապեր են պահպանել սովետական կոմունիստների հետ։ Այդ կապերի ամեն մի թուլացումը վնասել է մեր կուսակցությանը և մեր ժողովուրդներին»։

Թեև խոսքը վերաբերում է միջազգային կոմունիստական շարժման մեկ ազգային ջոկատի փորձին, բայց կարծում ենք, որ այն ունի առավել լայն, ոչ միայն ազգային նշանակություն։ Երկու հակադիր սիստեմների պայքարի արդի պայմաններում զգալիորեն ավելի մեծ չափով, քան երբևէ, անհրաժեշտ է ամրապնդել մեր շարժման միասնությունը, ամբողջ սոցիալիստական համագործակցության միասնությունն ու համախմբվածությունը մարքսիզմ-լենինիզմի և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա։ Գիտատեխնիկական առաջընթացի ժամանակաշրջանում արտադրաուժերի հետագա զարգացման օբյեկտիվ պրոցեսը մղում է խորացնել համակողմանի տնտեսական, տեխնիկական և ռազմական համագործակցությունը Սովետական Միության հետ։ Սոցիալիստական երկրների միասնությունը, միջազգային կոմունիստական շարժման մարտունակությունը նշանակում են յուրաքանչյուր սոցիալիստական երկրի, նոր տիպի յուրաքանչյուր եղբայրական կուսակցության սերտ և ամուր համախմբվածությունը Սովետական Միության՝ լենինիզմի հայրենիքի, նրա լենինյան կոմունիստական կուսակցության հետ։

Սովետների երկրի նկատմամբ եղբայրական վերաբերմունքը պրոլետարական և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի դասակարգային սկզբունքի կոնկրետ մարմնացումն է, սոցիալիստական հայրենասիրության դրսևորումը, որը բխում է գիտական կոմունիզմի տեսության ընդհանուր բնույթից, ռեալ սոցիալիզմի երկրների ընդհանուր դասակարգային էությունից ու նպատակներից, ուստի և վերապահումներ ու պայմաններ չի հանդուրժում, չի կարող փոխարինվել այս կամ այն աշխարհագրական դիրքով կամ որևէ «նոր» ինտերնացիոնալիզմով։ Այս կապակցությամբ մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեն իր գաղափարախոսական աշխատանքի գլխավոր խնդիրներից մեկը տեսնում է մեր ազատարարի ու պաշտպանի, սոցիալիզմի ճանապարհով մեր հետագա զարգացման երաշխիքը հանդիսացող Սովետական Միության և լենինյան կուսակցության հետ անխախտ դաշնակցության, եղբայրական բարեկամության, փոխշահավետ բազմակողմանի համագործակցության մշտական ամրապնդման, խորացման ու զարգացման մեջ։ Մեզ անկեղծորեն ուրախացնում է այն փաստը, որ վերապրած փորձություններից հետո չեխոսլովակյան-սովետական հարաբերություններն այսօր դարձել են ավելի անկեղծ ու կայուն, քան երբևէ։ Ինչպես ՉԿԿ XVI համագումարում նշեց ընկ. Գուստավ Հուսակը, Սովետական Միությունը մեզ տալիս է այն «վստահությունը, որի հիման վրա ենք կառուցում մեր բոլոր պլաններն ու հետագա զարգացման հեռանկարները»։

Իմպերիալիզմի վարած հոգեբանական պատերազմը, ինչպես նաև ռեալ սոցիալիզմի հետ նրա ռազմական առճակատման կողմնորոշումը չեն կարող շարունակվել հավիտյանս։ Ոչ մի պատերազմ՝ լինի դա հոգեբանական, սառը կամ միջուկային, չի կարող կասեցնել պատմության ընթացքը և իմպերիալիզմին վերադարձնել իր նախկին դիրքերը։ Ինչպես արձանագրված է Վարշավայի պայմանագրի մասնակից երկրների քաղաքական դեկլարացիայում, որն ընդունվեց քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի՝ Պրագայում այս տարվա հունվարին կայացած նիստում. «ոչ ոքի չի հաջողվի խարխլել սոցիալիստական կարգերը կեղծիքի և կեղծ ինֆորմացիա տարածելու միջոցով»։ Մեր պայմաններում իմպերիալիզմի դեմ պայքարի հիմնական բնագավառը կուսակցության գլխավոր ստրատեգիական խնդրի լուծումն է՝ զարգացած սոցիալիստական հասարակության կառուցումը, որի անհրաժեշտ նախադրյալը հանրային արտադրության բարձր արդյունավետությունն է և աշխատանքի բարձր որակը։ Գաղափարախոսական պայքարի բնագավառում ՍՄԿԿ-ի կուտակած անսպառ փորձի օգտագործման մեջ ենք տեսնում այն մեծ հնարավորություններն ու ռեզերվները, որ ձգտում ենք ստեղծագործաբար կիրառել կոմունիզմի և խաղաղության հաղթանակին հասնելու նպատակով։

---

# ՌԱՑԻՈՆԱԼ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ՍԵՎԱՆԻ ԱՎԱԶԱՆԻ ՀՈՂԱՅԻՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԸ

**ՍՈՖՅԱ ՊԵՏՐՈՍՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

*ՄԵՐ ԵՐԿՐՈՒՄ ՄԵԾ ՋԱՆՔԵՐ ԵՆ գործադրվում բնական ռեսուրսներն արդյունավետ օգտագործելու և հարստացնելու համար։ Հատուկ ուշադրություն է դարձվում եզակի բնական համալիրների պահպանությանը և ռացիոնալ օգտագործմանը։ Դրանցից է Սևանա լիճը, որի նշանակությունը մեծ է հանրապետության տնտեսական կյանքում։ ՍՄԿԿ Կենտկոմի, սովետական կառավարության և հանրապետության ղեկավար մարմինների որոշումներին համապատասխան՝ լուրջ միջոցառումներ են իրականացվում Սևանի բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման համար։ Այսպես, կառուցվել է 48 կիլոմետրանոց թունելը Արփա գետի հոսքի մի մասը Սևանա լիճ տեղափոխելու նպատակով։ Շահագործման են հանձնվել ջրամբարներ և ջրհան կայաններ, որոնք հնարավորություն են ընձեռում կրճատելու լճի ջրերի ծախսումը ոռոգման կարիքների համար, դադարեցվել է լճից զուտ էներգետիկ նպատակով ջրի բացթողումը, վերակառուցվում են ոռոգման համակարգերը։ Սևանա լճի ու նրա ավազանի բնական միջավայրը պահպանելու համար լճից ազատված հողային տարածություններն անտառապատվում են, և այժմ մերձափնյա անտառային տարածությունը հասնում է ավելի քան 16 հազար հեկտարի։ Սևանի ավազանի բնական ռեսուրսները ռացիոնալ օգտագործելու և դրանց վերարտադրությունը գիտական հիմունքներով կազմակերպելու նպատակով 1978 թ. ստեղծվեց «Սևանի ազգային պարկը»։ Լճի ջրերը աղտոտումից զերծ պահելու համար կառուցվում են Սևան—Հրազդան կոյուղու կոլեկտորը և մաքրման մի շարք օբյեկտներ։*

*Այդ ամենի հետ մեկտեղ պետք է նշել, որ իրականացվող միջոցառումները դեռևս լիովին չեն լուծում լճի էկոլոգիական հավասարակշռությունը վերականգնելու խնդիրը։ «Սևանա լճի բնական ռեսուրսների պահպանման և ռացիոնալ օգտագործման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ նախատեսվում է Սևանա լճի և նրա ավազանի բնական ռեսուրսների օգտագործումն ու պահպանումն իրականացնել կոմպլեքսայնորեն։ Խնդիր է դրված լճի ջրի մակարդակի բարձրացումն ու նրա էկոլոգիական ռեժիմի բարելավումն ապահովող ջրատնտեսական օբյեկտների կառուցման հետ միաժամանակ կենսագործունեության տարբեր բնագավառներում կարգավորել բնօգտագործումը և կանխել շրջապատող միջավայրի վրա մարդկային գործունեության բացասական հետևանքները։ Այդ առումով կարևոր նշանակություն ունի հատկապես գյուղատնտեսության մեջ հողային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և վերարտադրության հարցերի ուսումնասիրությունը։ Պետք է նկատի ունենալ, որ հողի պրոբլեմն ամենից առաջ ենթադրում է ոչ թե դրա պասիվ պահպանությունը, այլ մարդու գիտակցական վերաբերմունքը հողի նկատմամբ, քանի որ դրա ճիշտ օգտագործմամբ*



*աստիճանաբար բարձրանում է հողի տնտեսական պոտենցիալը։ Սևանի ավազանի գյուղատնտեսական հողահանդակները զբաղեցնում են 248,6 հազար հեկտար կամ ընդհանուր տարածքի 61 տոկոսը։ Դրանց մոտ կեսը արոտավայրեր են, ավելի քան մեկ երրորդը՝ վարելահողեր և 14 տոկոսը՝ խոտհարքներ։ Սևանի ավազանի հողային ֆոնդի առանձնահատկությունն այն է, որ դրա կառուցվածքում մեծ տեսակարար կշիռ ունեն բնական կերային հանդակները, որոնք ավելի քան մեկուկես անգամ գերազանցում են ինտենսիվ հանդակներին։ Վարելահողերի կեսը հատկացվում է կերային կուլտուրաներին։ Այսպիսով, գյուղատնտեսական հողատարածությունների շուրջ 80 տոկոսը հատկացված է կերարտադրությանը։ Հողօգտագործման պայմանների բարելավման միջոցառումները ծառայում են անասնապահական կերի բազայի ամրապնդմանը, անասնապահական մթերքների արտադրության ավելացմանը, դրանք նպաստում են պարենային ծրագրով նախատեսված միջոցառումների իրականացմանը։*

*Մշակելի հողերի զգալի մասը գտնվում է անջրդի պայմաններում։ Դրանց բերրիության բարձրացումը հիմնականում պայմանավորված է ջրային ռեժիմի կանոնավորմամբ։ Այստեղ վարելահողերի 29 տոկոսն է ապահովված ոռոգելի ջրով, որի կեսն էլ ջրի անբավարարության պատճառով պայմանական ոռոգելի հողեր են։*

*Քանի որ այժմ առաջնահերթ խնդիրը լճի մակերևույթը հնարավորին չափ բարձր մակարդակի վրա պահպանելն է, ուստի անհրաժեշտ է ապահովել նաև լիճը թափվող գետաջրերի ներհոսքը և սահմանափակել դրանք ոռոգման նպատակով օգտագործելը։ Եթե 1978 թվականից Սևանի ջուրն այլևս բաց չի թողնվում զուտ էներգետիկ նպատակներով, ապա այժմ պետք է մտածել նաև գյուղատնտեսության կարիքների համար ջրի օգտագործման սահմանափակման մասին։*

*Նպատակահարմար է առաջիկա տարիներին սահմանափակել Սևանի ավազանի ոռոգելի հողատարածությունների ընդարձակումը։ Ջրային ռեսուրսների հաշվեկշռի լարվածության պայմաններում անհրաժեշտ է նախապատվությունը տալ առկա ոռոգելի հողերի ջրապահովվածության բարձրացմանը՝ ի հաշիվ եղած ջրային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման։*

*Հանրապետության գյուղատնտեսության համար ամենամեծ պրոբլեմը շարունակում է մնալ սակավաջրությունը։ Հողօգտագործման և նրա բերրիության բարձրացման վիճակի վերլուծությունը վկայում է, որ այն լուծելու բնագավառում նկատելի տեղաշարժեր կատարվել են։ Գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ընդլայնումը, հողերի մելիորացիան և երկրագործության քիմիացումը, սոցիալ-տնտեսական հարաբերությունների կատարելագործումը հանգեցրին գյուղատնտեսության հետագա զարգացմանը։ 1982 թ., 1965 թվականի համեմատ, գյուղատնտեսության համախառն արտադրանքն ավելացել է մոտ 30 տոկոսով։ Այդ նպատակով կարևորվել են հատկապես արտադրության զարգացման ինտենսիվ միջոցները։ Նշված ժամանակամիջոցում զգալիորեն աճել է հացահատիկի, ծխախոտի, կարտոֆիլի բերքատվությունը՝ հողի տնտեսական բերրիության բարձրացման հաշվին։ Փոփոխություններ են տեղի ունեցել նաև ցանքատարածությունների կառուցվածքում։ Վերջինիս կատարելագործումը հիմնականում հանգեցրել է հացահատիկային կուլտուրաների տեսակարար կշռի նվազեցման և կերային կուլտուրաների բաժնի ավելացման։ Դա պայմանավորված է անասնաբուծության զարգացման մակարդակով, նրա մասնագիտացմամբ։ Այս ամենը որոշակիորեն բնութագրում է հողային ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը։*

*Արդի պայմաններում գյուղատնտեսության զարգացմանն առաջադրվող ամենակարևոր պահանջներից է հողային ռեսուրսների որակական և քանակական պահպանումը, որը մեր սակավահող հանրապետության էկոլոգիական քաղաքականության հրատապ հարցերից է։*

*Հողի պահպանման և ճիշտ օգտագործման աշխատանքներն ունեն երկու հիմնական ուղղություն։ Առաջինը գյուղատնտեսական հողահանդակների նկատմամբ խնամքով վերաբերվելու, դրանց բերրիության բարձրացման մի-*

ջոցներն են, և երկրորդ՝ ոչ գյուղատնտեսական կարիքների (արդյունաբերության, քաղաքաշինության, ճանապարհների և այլն) համար հողերի հատկացումները նվազեցնելու միջոցները։

Հողի պահպանության պետական քաղաքականության իրավական նորմերը սահմանված են «ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների հողային օրենսդրության հիմունքներում»։ Հողօգտագործման բարելավման անհրաժեշտությունը վավերացված է նաև ՍՍՀՄ սահմանադրության մեջ։ Պետական մարմիններն իրականացնում են հողաշինարարական մեծ ծավալի միջոցառումներ։ Ոչ գյուղատնտեսական նպատակների համար հողերի հատկացումների մասշտաբները բավական մեծ են։ Սակայն ամեն տարի օտարվող այդ հարյուրավոր հեկտար հողերի մի մասը գյուղատնտեսական հանդակներ են, անգամ վարելահողեր։ Ուստի կարևոր է ընտրել շինարարության այնպիսի տարբերակներ, որոնք պահանջում են ավելի քիչ հողային տարածություններ։ Բացի այդ, ժողովրդատնտեսական և այլ կարիքների համար առաջին հերթին պետք է առանձնացնել գյուղատնտեսությանը ոչ պիտանի հողակտորներ և ավելի քիչ՝ արժեքավոր հանդակներ։ 1965—1975 թթ. Սևանի ավազանում որպես վարելահող իրացվել է 2.093 հեկտար հողատարածություն, այնինչ այդ նույն ժամանակահատվածում գյուղատնտեսական շրջանառությունից դուրս է գրվել 1.510 հեկտար վարելահող զանազան կառույցների համար։ Ինչպես տեսնում ենք, հողային ռեսուրսների զգալի կորուստներն ակնհայտ են։

Գյուղատնտեսական շրջանառությունից շատ հողեր են հանվում դրանց վատ օգտագործման, մելիորատիվ միջոցառումների անորակ կատարման և այլ պատճառներով։ Հաճախ ոչ բավարար հիմնավորվածությամբ վարելահողեր են հատկացվում ներտնտեսային շինարարության համար։ Հանրապետության սակավահողության պայմաններում գյուղատնտեսական հողահանդակների և ցանքատարածությունների հետագա կրճատումը տնտեսապես չի արդարացվում։ Վարելահողերի ընդարձակումը կապված է մեծ ծախսումների հետ։ Ուստի նպատակահարմար է սահմանել գյուղատնտեսության առավել պիտանի հողահանդակների օտարման թույլատրելի չափեր։

Գյուղատնտեսական հողահանդակների քանակական կորուստներին զուգընթաց նվազում է նաև հողի բնական բերրիությունը։ Դա մասամբ բնական պրոցեսների հետևանք է, այսինքն՝ բնության մեջ հողի քայքայման՝ առանց մարդու միջամտության, սակայն ավելի շատ կապված է աճող անտրոպոգեն ճնշման, մարդու տնտեսական գործունեության հետ։ Այդ պրոցեսը դրսևորվում է հողի վերին բերրի շերտի ոչնչացմամբ, թունավոր նյութերով աղտոտմամբ, աղակալմամբ և ճահճացմամբ, էրոզիայով, արոտների աղքատացմամբ և այլն։

Այսպիսով, հողային ծածկույթի պահպանության հետ կապված պրոբլեմների շրջանակը չափազանց լայն է։ Սակայն դրանցից այժմ առավել կարևորվում է հակաէրոզիոն միջոցառումների մշակման և իրագործման խնդիրը։ Հողագետները հաստատում են, որ եթե յուրաքանչյուր հեկտար վարելահողից տարեկան 12—15 տոննա մանրահող ու բույսերին անհրաժեշտ սննդանյութեր են հեռանում հալոցքային և անձրևաջրերի միջոցով, ապա հողածածկույթի արտադրողականությունը նվազում է։ Դրա վերականգնման համար պահանջվում են փոխհատուցման մեծ ծախսեր, օրգանական և հանքային պարարտանյութերի օգտագործում, հակաէրոզիոն և այլ միջոցառումների իրականացում։ Դարերի ու հազարամյակների ընթացքում ստեղծվածը կարող է կարճ ժամանակամիջոցում քայքայվել և ոչնչացվել, եթե ժամանակին չպայքարենք հողատարման դեմ, և եթե այդ պայքարը չլինի կոմպլեքսային։ Թերևս տեղին կլինի նշել գիտնականների այն կարծիքը, որ տարբեր հողակլիմայական գոտիներում 20 սանտիմետրանոց հողային շերտի ձևավորման համար պահանջվում է 400—2000 տարի։

Էրոզացման աստիճանի ավելացման հետ նկատելիորեն նվազում է հողային շերտի հզորությունը, խիստ վատանում են նրա ագրոնոմիական հիմնական հատկությունները, որի հետևանքով իջնում է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, ինչպես նաև որակը (օրինակ՝ հացահատիկի մեջ նվազում է սպիտակուցային նյութերի պարունակությունը)։



Բայց բերքատվության նվազումը էրոզիայի պատճառած վնասի միայն մի աննշան մասն է, իսկ երբ հաշվի առնենք նաև այն, որ ապագայում հողը առհասարակ կզրկվի բերրի ծածկույթից, որի արժեքը դրամով գնահատելը պարզապես անհնար է, ապա պարզ կդառնա խնդրի ողջ կարևորությունն ու բարդությունը։

Էրոզիայի պատճառած հսկայական վնասի չափերը պատկերացնելու համար կատարենք հետևյալ մոտավոր հաշվարկը։ Նախ, տեսնենք, թե ջրային հոսանքներով որքան հողային զանգված է հեռանում դաշտերից։ Ընդունենք, որ Սևանի ավազանում ամեն տարի հողատարվում է ցանքատարածությունների միայն 50 տոկոսը 1 մմ շերտով (12,5 տ հա), ապա կորուստը տարեկան կկազմի մոտ 0,6 միլիոն տոննա։ Այդքան կորուստը լեռնային շրջանների համար հավանական է։ Բայց չէ որ էրոզիայի պատճառով հողը կորցնում է վերին ամենաբերրի հորիզոնը, որում բույսերի համար անհրաժեշտ սննդատարրերը կուտակվել են հազարամյակների ընթացքում։ Օրինակ, եթե հողի վերին շերտը պարունակում է միջինը 4 տոկոս հումուս, ապա մեկ հեկտարի հաշվով հումուսի կորուստը կկազմի 0,5 տոննա։ Այդ քանակությամբ հումուսը պարունակում է մոտ 25 կգ ազոտ, 25 կգ ֆոսֆոր, 250 կգ կալիում։ Համեմատության համար նշենք, որ մեկ տոննա հացահատիկ աճեցնելու համար պահանջվում է միջինը 33 կգ ազոտ, 10 կգ ֆոսֆոր, 25 կգ կալիում։ Էրոզացված տարածքի համար հումուսի կորուստը կկազմի 23 հազար տոննա, որը համարժեք է 92 հազար տոննա գոմաղբի կամ 45 հազար տոննա հանքային պարարտանյութերի։ Վերջիններիս ընդհանուր գումարը ավելի քան մեկ միլիոն ռուբլի է։ Նշենք, որ Սևանի ավազանում հողի բերրիության վերարտադրության համար տարեկան օգտագործվում է շուրջ 150 հազար տոննա գոմաղբ և 40 հազար տոննա հանքային պարարտանյութ։

Պետք է ավելացնել, որ հողի բերրիության կորստի տնտեսական վնասը շատ ավելի է, քան սննդատարրերի կորուստը։

Էրոզիան բացասաբար է ազդում նաև շրջապատող միջավայրի այլ բաղադրամասերի, հատկապես ջրային ռեսուրսների վրա։ Ուժեղ էրոզիայի հետևանքով մեծանում է ջրերի պղտորումը, իջնում է որակը։ Թեք լանջերում հոսող ջրերի հետ լիճ են լցվում նաև գյուղատնտեսության մեջ օգտագործվող քիմիական նյութեր՝ հանքային պարարտանյութերը, պեստիցիդները և անասնապահական կոմպլեքսների հոսքաջրերը։ Եվ, վերջապես, ջրային էրոզիան նպաստում է լճի բուսակալմանը, էվտրոֆիկացիային։

Լճի մակարդակի իջեցման և ջրի ծավալի փոքրացման հետևանքով առաջացած էկոլոգիական փոփոխություններն առավել խորացնում են լճի հարաճուն աղտոտումը։ Ուստի անհրաժեշտ է պահպանել Սևանի ոչ միայն բնական չափերն ու գեղեցկությունը, այլև նրա մաքրությունը՝ ապագայում այն որպես խմելու ջուր օգտագործելու համար։ Մինչդեռ լճի աղտոտվածությունը ազոտով 1960 թ. համեմատությամբ ավելացել է 2,3, իսկ ֆոսֆորով՝ 1,5 անգամ։ Վերջիններս, որպես կենսախթանիչներ՝ նպաստում են լճի կենսացենոզի փոփոխություններին, մասնավորապես Սևանի «ծաղկմանը»։ Լիճն ազոտով աղտոտող հիմնական աղբյուրը գյուղատնտեսական արտադրությունն է (90 տոկոս)։ Այս ամենը մեկ անգամ ևս վկայում է, որ հակաէրոզիոն միջոցառումների տնտեսական արդյունավետությունը պետք է գնահատել շրջապատող միջավայրի պահպանության գործի արդյունավետության տեսանկյունից։

ՀԿԿ XXVII համագումարում Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը, շեշտելով Սևանի պրոբլեմի լուծման վերաբերյալ մշակված ծրագրի ժամանակին ու լրիվ կատարման բացառիկ կարևորությունը, նշեց, որ առանց հապաղելու պետք է իրականացնել Սևանի էկոլոգիական վիճակի բարելավմանն ուղղված միջոցառումներ, հաշվի առնելով, որ լճում ընթացող պրոցեսները սպառնում են անդառնալի բնույթ կրել։

Հայտնի է, որ հողերի պահպանումը էրոզիայից հնարավոր է միայն այդ երևույթի առաջացման պատճառների իմացության և բազմակողմանի պարզաբանման հիման վրա։ Մինչդեռ այսօր էլ ոմանք էրոզիայի առաջացման պատճառը համարում են միայն բնական գործոնները։ Նման դիրքորոշումը

վտանգավոր է նրանով, որ շեղում է ուշադրությունը գործի բուն էությունից և կարող է վնասել հողերն էրոզիայից պաշտպանելու գործին։ Ճիշտ է, նորմալ պայմաններում էրոզիան օրինաչափ պրոցես է, որն առաջանում է բնական գործոնների ազդեցությամբ՝ չխախտելով հողածածկի զարգացման նորմալ ընթացքը։ Սակայն, եթե հաշվի չառնենք հազվադեպ տարերային երևույթները, ապա էրոզիայի գլխավոր պատճառը հողի անտնտեսվար և ոչ ճիշտ օգտագործումն է։

Այժմ Սևանի ավազանում տարբեր աստիճանի հողատարված են 41,2 հազար հեկտար գյուղատնտեսական հանդակներ։ Ընդ որում էրոզացված են վարելահողերի 20,3 հազար հեկտարը կամ 23 տոկոսը և արոտավայրերի 20,5 հազար հեկտարը կամ 20 տոկոսը։ Չպետք է անտեսել այն փաստը, որ էրոզացվում են նաև ոչ գյուղատնտեսական նպատակներով օգտագործվող տարածքները։ Դրանք էրոզիոն պրոցեսների զարգացման վտանգավոր օջախներ են։ Ուստի հակաէրոզիոն միջոցառումներ կազմակերպելիս գյուղատնտեսական հողահանդակները պաշտպանելու հետ մեկտեղ պետք է ուշադրություն նվիրել նաև գյուղատնտեսության մեջ չօգտագործվող հողերին։ Այստեղ խոսքն առաջին հերթին վերաբերում է գյուղատնտեսության օգտագործումից դուրս եկած հողերին, որոնք կրկին շրջանառության մեջ դնելը կարևոր պրոբլեմ է։

Հողը էրոզացվում է 1—2 աստիճանից բարձր թեքության պայմաններում։ Սևանի ավազանում 3 աստիճան և ավելի մեծ թեքություն ունի վարելահողերի 29 տոկոսը։ Այդ նշանակում է, որ այստեղ վարելահողերի գերակշռող մասին սպառնում է էրոզիայի պոտենցիալ վտանգը։ Ուրեմն Սևանի ավազանում երկրագործությունը պետք է վարել միայն հակաէրոզիոն միջոցառումների համակարգի կիրառմամբ։

Գյուղատնտեսության անհաշվենկատ վարման արդյունք է նաև արոտավայրերի հողատարումը։ Սևանի ավազանում անասնապահության հիմնական բազան լեռնային արոտավայրերն են, որոնք ունեն մեծ թեքություն և մշտապես ենթակա են ակտիվ էրոզիայի, առավել ևս, եթե զրկվում են բուսածածկից։ Արոտավայրերի բնականոն ծանրաբեռնվածությունը միավոր տարածության հաշվով կազմում է 0,7 պայմանական գլուխ խոշոր եղջերավոր անասուն։ Այդպիսի ծանրաբեռնվածության դեպքում որոշ մելիորատիվ միջոցառումների շնորհիվ հնարավոր է պահպանել արոտավայրերի արդյունավետությունը։ Մինչդեռ այժմ կրկնակի չափով գերբեռնված են ավազանի բոլոր շրջանների արոտավայրերը։ Դրա հետևանքով բուսածածկը ոտնակոխ է արվում, նվազում է բերքատվությունը, արագանում են հողատարման պրոցեսները, որը, վերջին հաշվով, հանգեցնում է հողածածկի քայքայմանը և այն զրկում բնական բերրիությունից։

Չնայած վերջին տարիներին ընդունվել են մի շարք կարևոր որոշումներ, որոնք ուղղված են էրոզիայի դեմ պայքարի միջոցառումները կատարելագործելուն, այնուամենայնիվ, գործնականում հողի պահպանման հարցում էական տեղաշարժեր չեն նկատվում, և էրոզիան դեռևս ժողովրդական տնտեսությանը հսկայական վնաս է պատճառում։ Սևանի ավազանում 100 հեկտար գյուղատնտեսական հողատարածության հաշվով ոչխարների խտությունը հասնում է 184 գլխի, 24-ով ավելի հանրապետության միջինից։ Ոչխարների գլխաքանակը գերազանցում է բնական ռեսուրսների շահավետ ու խնամքով օգտագործելու հնարավորությանը, դրանց բնական վերաճն ապահովող նորմաները։ Պետք է նկատի ունենալ նաև, որ տրորված, էրոզացված արոտների արտադրողականությունն ու կերային արժեքը խիստ ցածր է, հեկտարից չոր խոտի բերքը չի անցնում 5—7 ցենտներից։ Եթե հաշվի առնենք, որ այդ արոտները «սպասարկում են» նաև հարևան շրջանների անասունների հոտերին, ապա լիովին պարզ կդառնան ստեղծված իրավիճակի պատճառները։ Ստացվում է, որ ոչխարաբուծությունը զարգանում է էքստենսիվ ձևով, արոտների ցածր արտադրողականության և էրոզիայի բավականին մեծ վտանգի առկայության պայմաններում։

Ինչպես հանրապետությունում, այնպես էլ Սևանի ավազանում հողատարումը կանխելու համար կատարվել են առանձին աշխատանքներ, սակայն



սպասված արդյունքը չեն տվել, քանի որ խախտվել է տեխնոլոգիան, աշխատանքները կատարվել են ցածրորակ և չեն կրել մասշտաբային բնույթ։ Այդ մասին նշվել է Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի «Բնական խոտհարքների և արոտավայրերի մթերատվության բարձրացման և ռացիոնալ օգտագործման մասին» 1980 թ. որոշման մեջ, որտեղ ասվում է, որ բնական կերային հողահանդակների օգտագործման, ինչպես նաև կոլտնտեսություններում ու սովխոզներում դրանց բարելավման աշխատանքների պլանավորման և անցկացման գործում կան լուրջ թերություններ։ Բնական կերային հողահանդակների, հատկապես արոտների ոչ ռացիոնալ, անտնտեսվար օգտագործումը, մակերեսային և արմատական բարելավման կոմպլեքս միջոցառումների ձևական անցկացումը հանգեցրել են դրանց բերքատվության զգալի իջեցման, հողային բերրի ծածկույթի ոչնչացման, էրոզիոն պրոցեսների ծագման. այս բոլորի հետևանքով հանրապետության կերային բալանսում զգալիորեն նվազում է բնական խոտհարքների և արոտների բաժինը։ Մի բան պարզ է, որ լեռնային պայմաններում երկրագործության վարումը, առանց արդյունավետ հողապաշտպան միջոցառումների կիրառման, ակտիվացնում է էրոզիոն պրոցեսները։

Հողօգտագործման վիճակի բարելավման և հողային ռեսուրսների պահպանման համար կարևոր նշանակություն ունի տնտեսական լծակների համակարգի կատարելագործումը։ Մինչդեռ գյուղատնտեսության պլանավորման սիստեմում դեռևս լայնորեն չեն արտացոլվում այն պրոբլեմները, որոնք կապված են շրջապատող միջավայրի պահպանության և բնական ռեսուրսների (հողային, ջրային) ռացիոնալ օգտագործման հետ։ Ակնհայտ է դարձել համապատասխան պլանային ցուցանիշների մշակման անհրաժեշտությունը, որոնք արտացոլեն հողային, ջրային ռեսուրսների պահպանության ծախսերը և դրանց արդյունավետությունը, իսկ, վերջին հաշվով, խթանող ազդեցություն ունենան գյուղատնտեսական ձեռնարկությունների արտադրատնտեսական գործունեության բարելավման վրա։

Վերջին տարիներին գիտության մեջ արծարծվում, իսկ պրակտիկայում էլ հավանության է արժանանում հողօգտագործումը տնտեսական մեթոդներով վերահսկելու գաղափարը։ Այդպիսի մեթոդը հողի օգտագործման վարձի սահմանումն է։ Հողային ռեսուրսների վճարովի լինելը անպայմանորեն կապված չէ դրա տնտեսական գնահատման հետ։ Այդպիսի վճար մտցնելը էականորեն կխթանի դրանց արդյունավետ, խնայողաբար օգտագործումը։ Միաժամանակ այն կնպաստի հողային ռեսուրսների վերարտադրության ծախսերի հատուցմանը։

Թերևս տեղին կլինի հիշել Կ. Մարքսի հետևյալ խոսքերը. «Նույնիսկ մի ամբողջ հասարակություն, ազգ, մինչև անգամ հենց համաժամանակյա բոլոր հասարակությունները միասին վերցրած՝ հողի սեփականատերերը չեն։ Նրանք հողին տիրում են միայն, սրանից օգտվում են. և իբրև [ընտանիքի պատվական հայրեր], նրանք պետք է հողը բարելավված վիճակում ժառանգություն թողնեն հաջորդ սերունդներին» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 3, մաս II, գիրք III, 1949, էջ 314)։

Սևանի բնական համալիրի պահպանության խնդիրների լուծման կարևորությունից ելնելով, անհրաժեշտ է առավել ռացիոնալ, գիտականորեն հիմնավորված օգտագործել այդ ավազանի հողային ռեսուրսները՝ արտադրական գործունեության ընթացքում հաշվի առնելով նաև հողօգտագործումը բնութագրող էկոլոգիական գործոնի նշանակությունը, որն անընդհատ աճում է։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀՍԿԱՆ

ՆԱՏԱԼՅԱ ԳՈՆՉԱՐ-ԽԱՆՋՅԱՆ

ՎԼԱԴԻՄԻՐ ՄԱՅԱԿՈՎՍԿԻ։ Այս հնչեղ, վսեմ ու վեհապանծ անունը սովետական մարդկանց շատ սերունդների համար կապված է Հոկտեմբերյան դրոշի հովանու ներքո նոր աշխարհի ստեղծման հերոսականության, կյանքի հեղափոխման համար մղվող անձնվեր ու անզիջում պայքարի, սոցիալիստական գաղափարներով տոգորված արվեստի հզոր ու ներգործուն գեղեցկության հետ։ Պոետի անունն իսկ ասես զարմանալիորեն «հնչյունավորում» է նրա անհատականության իրոք վիթխարի, «աշխարհածավալ» մասշտաբները՝ նրա հաղորդակցումը այն ամենին, ինչով ապրում է դարաշրջանը, նրա ստեղծագործ ձգտումը աննախընթաց թափով ընդարձակելու պոեզիայի «տիրույթները». նրա պոետական



կրակի ու խոսքի ոգեշնչող ուղեցույց լույսը անմար փարոս է մեզ համար։

Իր հոդվածներից մեկում Ա. Վ. Լունաչարսկին Մայակովսկու մասին իրավացիորեն ասել է, որ նա «կոմունիզմի խոշորագույն դաշնակիցն է պոեզիայում»։ Հոգու ողջ եռանդն ու հարստությունը, տաղանդի ողջ թափը, «լեռնակոտակ ատելությունն» ու իր «լեռնակոտակ սերը» Մայակովսկին անմնացորդ, շռայլորեն ու բոլորանվեր ծառայեցրել է կյանքի կոմունիստական վերափոխմանը։ Իր ստեղծագործության օրինակով նա հաստատել է, որ պոեզիան պայքարող ուժ է, մարտական զենք և այսօրվա ու վաղվա մարդկանց՝ «ընկեր սերունդներին», որոնց հետ նա այնպես սիրով, այնպես վարակիչ զրույցի էր բռնվում, թողել է համաժողովրդական գործին մասնակցող կենդանի ժառանգություն, մի ժառանգություն, որն իր ոգով խառնվում է դեպի ապագայի «քաղաք-պարտեզը», դեպի ներդաշնակ «մարդկային համակեցությունը» տանող նոր ուղիներին, պայքարին ու հաղթանակներին։

XX դարի փոթորիկներում, կապիտալիզմի տապալման և միլիոնավոր մասսաների հեղափոխական շարժման ժամանակաշրջանում, ծնունդ առավ զարմանալի, հսկա այդ տաղանդը, որ միաձուլեց քաղաքականությունը քնարերգությանը, պոեզիայում ստեղծեց նոր որակ, հայտնագործեց նոր հորիզոններ, աշխարհներ, վերակերտեց նրա լեզուն, ռիթմերն ու հնչերանգները, հագեցրեց այն կռվի ու կառուցման հնչյունով, միլիոնների պայքարի ու ստեղծագործ աշխատանքի եռանդով, նրանց սրտերի տրոփով, մտքի թռիչքով ու ձայների հնչեղ ուժով։

«Ուզում եմ սարքել սոցիալիստական արվեստ»,— այսպես է զգացել ու ձևակերպել իր կյանքի նպատակը տասնյոթամյա Վլադիմիր Մայակովսկին։ Պատանի հասակից նա ներգրավվել է հեղափոխական ընդհատակի աշխատանքներում, շփվելով մոսկովյան բանվորների հետ, անցել է «ճարպակալածների»



դեմ ուղղված ատելության հեղափոխական դպրոցը, տարածել արգելված գրականություն, թռուցիկներ, բազմիցս ձերբակալվել ցարական պահնորդության կողմից, մոտ մեկ տարի եղել է Բուտիրյան բանտի մենախցում։ Մայակովսկու անհատականությունն ու տաղանդը ձևավորվել, կոփվել են սոցիալական հակասություններով ու պայքարով հորդուն կյանքի խառնարանում, և ապագա պոետ-հեղափոխականի՝ «ագիտատորի, բարձրագոչ ռահվիրայի» քաղաքական ու գրական ինքնակերթությունն սկզբից իսկ ընթացել է ազատությունը, հավասարությունը, արդարությունն ու մարդկայնությունը, ողջ լավը ոտնահարող կապիտալիստական աշխարհի վճռական ժխտման, ինչպես և արվեստում ամեն «հնից», «լալկանից», մանրից ու կամերայինից սահմանազատվելու նշանաբանով։ Երիտասարդ Մայակովսկին տենչում էր նորագյուտ, խոշոր ու այրող խոսքերով խոսել մարդկանց սրտերում, հասարակության մեջ կուտակված ու ահագնացող պայթուցիկ ուժի մասին, արտահայտել նոր տրամադրություններ ու գաղափարներ, բողոքի ձայն բարձրացնել ճնշող իրականության դեմ, հանուն կյանքի հեղափոխման, հանուն բարու և ազատության, հանուն մարդկանց ներդաշնակ միասնության։ Նա բանաստեղծական ասպարեզ եկավ խռովքի գոչով ու ազդարարելով. «Կորչի՜ ձեր սերը։ Կորչի՜ ձեր արվեստը։ Կորչի՜ ձեր կարգը։ Կորչի՜ ձեր կրոնը»։ Այս չորս «գոչյունը» որոտաձայն թնդում է Մայակովսկու վաղ շրջանի քնարերգության մեջ՝ իր աստվածամարտ և հակաբուրժուական շնչով, հանդուգն, սուր ու խարազանող, հաճախ հիպերբոլիկ, գրոտեսկային կերպարներով, զայրույթի ու ցավի, ատելության ու սիրո կրակով, կյանքը հանուն մարդկանց զոհելու, հանուն նրանց սխրանք գործելու տրամադրությամբ, հեղափոխության կանխազգացողությամբ և խոր հավատով նրա մաքրող ուժի նկատմամբ։ Մայակովսկու նախահոկտեմբերյան ստեղծագործության գագաթն է դառնում նրա **Վարտիքավոր ամպը** պոեմը, ուր իր իսկ՝ պոետի խոսքերով ասած, «ամրապնդվել է մոտակա հեղափոխության գիտակցումը», որտեղ նա հայտարարում է իրեն հեղափոխության «նախակարապետ»։

Где глаз людей обрывается куцый,
главой голодных орд,
в терновом венце революций
грядет шестнадцатый год.

А я у вас — его предтеча;
я — где боль, везде;
на каждой капле слезовой течи
распял себя на кресте...

И когда
приход его
мятежом оглашая,
выйдете к спасителю —
вам я
душу вытащу,
растопчу,
чтоб большая! —
и окровавленную дам, как знамя.

**Վարտիքավոր ամպի** կերպարներում ու հնչերանգներում արտահայտված բողոքի ուժն ու եռանդը միանգամայն դուրս էր ու վեր, այսպես կոչված, «ֆուտուրիզմի» շրջանակներից, չնայած վերջինս հարազատ ու համահնչուն է երիտասարդ Մայակովսկու ձգտումներին։ «Ֆուտուրիզմը», որպես դիրքորոշում ու կեցվածք, իր սահմանափակ գաղափարայնությամբ ու ձևական նորարարությամբ, նեղ էր մեծ պոետի համար։ Մայակովսկին առաջ էր անցել իր գրական շրջապատից. նրան ձգողը մեծ զգացմունքներով լի, կենսապես, գաղափարապես բովանդակալից արվեստի ոլորտն էր, ժամանակի գլխավոր միտումները։

Հայտնի է, թե ինչպես է ընկալել ու գնահատել երիտասարդ Մայակովսկուն, մասնավորապես նրա **Վարտիքավոր ամպը** պոեմը, Ա. Մ. Գորկին։ Դեռևս ծանոթ չինելով Մայակովսկու բանաստեղծություններին՝ իր նամակներից մեկում ահա թե ինչ է ասել Գորկին այն մասին, թե ինչպիսի պոետի կարիք ունի այժմ Ռուսաստանը. «Ռուսիան կարիք ունի մեծ պոետի։ Տաղանդավորները քիչ չեն, ահա նույնիսկ Իգոր Սևերյանինը շնորհալի՜ է։ Բայց պետք է մեծ պոետ, ինչպես Պուշկինը, ինչպես Միցկևիչը, ինչպես Շիլլերը, պետք է դեմոկրատ և ռոմանտիկ գրող, քանի որ մենք, Ռուսիան, դեմոկրատական և երիտասարդ երկիր ենք»։ 1915 թվականին, լսելով **Վարտիքավոր ամպը** պոեմը հեղինակի ընթերցմամբ, Գորկին հիացավ նրանով։ Մայակովսկու ոճի արտակարգ ինքնատիպությունը, կարելի է ասել՝ արտասովորությունը, չխանգարեց նրան՝ ընկալելու պոեմի ներքին պաթոսը, քանի որ Մայակովսկին ու Գորկին հասարակական նույն դիրքերում էին՝ հեղափոխության դիրքերում։ Դեմոկրատիզմի ու ռոմանտիզմի ոգով տոգորված իր ստեղծագործության մեջ Մայակովսկին օրինաչափորեն շարունակում և զարգացնում է Գորկու գիծը նախահոկտեմբերյան ժամանակաշրջանի գրական պայքարում։ «Առավել հաստատակամորեն ու ազդեցիկ թող հնչեն մարդուն մեծարող բառերը». ահա երիտասարդ բանաստեղ-

ծի այն գիտակցված խնդիրը, որի ձևակերպումը տրված է հենց իր՝ պոեմի իմաստը մեկնաբանող հոդվածում: Այս իսկ խնդիրն էր առաջադրել Գորկին ռուս գրականությանը, ի հակադրություն մարդու նկատմամբ թերահավատություն սերմանող, մարդուն արատավորող ու նսեմացնող բուրժուական դեկադենտության: Ծանոթանալով երիտասարդ Մայակովսկու բանաստեղծություններին՝ սոցիալիստական ռեալիզմի հիմնադիրն անմիջապես որսաց դրանցում իրենը, հարազատը. «Մայակովսկին ձգտում է ձուլվել ժողովրդական զանգվածներին և իր «եսն» ընկալում է իբրև պատերազմից խորապես հուզված, ցնցված ու ծառացող զանգվածի խորհրդանիշ»,— ասել է Գորկին: Երիտասարդ բանաստեղծին համեմատելով Ուոլտ Ուիթմենի հետ, նա նշել է. «Մայակովսկին ավելի ողբերգական է և, արծարծելով հասարակական խղճի, սոցիալական պատասխանատվության հարցերը, կրում է իր մեջ ցայտուն արտահայտված ռուսական ազգային դիմագիծ»: Եվ իրոք, Մայակովսկու վաղ շրջանի պոեզիայի լիրիկական հերոսի հումանիզմը շարունակում էր ռուս մեծ գրականության ավանդույթները, գրականություն, որի հույզերն ու խոհերը, կիրքն ու տառապանքը միշտ նվիրված են եղել ժողովրդին, նրա ցավին ու ճակատագրին: Մայակովսկու պոեզիայի հերոսն ըմբոստանում է անարդար իրականության դեմ, ձգտում իր հետևից տանել «հլու հնազանդներին», հավատ ներշնչում նրանց իրենց ուժերի նկատմամբ և Գորկու Դանկոյի նման պատրաստ է զոհաբերել իրեն հանուն մարդկանց փրկության ու երջանկության: Նա ակտիվ վերաբերմունք է ցուցաբերում կյանքի նկատմամբ, ուժեղ անհատականություն է, բայց ոչ անհատապաշտ, նրան ամենից հարազատ է «հազարամարդ փողոցի» տարերքը, հարազատ են նրանք, ովքեր ուժ ունեն և բռնել ու պահում են «աշխարհների շարժափոկերը»: Նրանց հետ նա ձուլվում, նրանց հետ կազմում է միասնական «մենք»:

Плевать, что нет
у Гомеров и Овидиев
людей, как мы,
от копоти в оспе.
Я знаю —
солнце померкло б, увидев
Наших душ золотые россыпи!

Жилы и мускулы — молитв верней.
Нам ли вымаливать милостей времени!
Мы —
каждый —
держим в своей пятерне
миров приводные ремни!

Նման աշխարհազգացման ու ձգտումների, ստեղծագործական նման հզոր թափի ու տաղանդի, հասարակական, քաղաքական նման փոթորկոտ խառնվածքի, ոգու ու կամքի տեր նման կենսածարավ պոետի համար, որն այնպես տոգորված էր և՛ կյանքը, և՛ արվեստը նորովի «սարքելու» տենչով, հին աշխարհը տապալած և նոր աշխարհի դրոշը՝ ազատության, հավասարության, սոցիալիզմի դրոշը բարձրացրած Հոկտեմբերյան հեղափոխությունը դարձավ, անշուշտ, նրա երազանքի իրականացումը: Մայակովսկու ինքնակենսագրության մեջ ասված է. «Իմ հեղափոխությունը: Գնացի Սմոլնի: Աշխատեցի: Ինչ որ պատահեց»: Եվ հատու, հոգու խորքից բխող պոետական պարզությամբ ասված է Լենինին նվիրված նրա հռչակավոր պոեմում.

Когда я
итóжу
то, что прожил,
И роюсь в днях —
ярчайший где,
я вспоминаю
одно и то же —
двадцать пятое,
первый день.

Հեղափոխությունը, նրա հերոսամարտերը և կյանքի ամենօրյա վերակառուցմամբ հագեցած ներկան, նրա շարժուն, լարված առօրյան, մասսաների ստեղծագործությունը— ահա այն, ինչը դարձավ պոետ-մարտիկի, քաղաքացու, հրապարակախոսի, պոետ-ագիտատորի վիթխարի թեման, նրա վեհ ներշնչանքի աղբյուրը, բանաստեղծական ու քաղաքացիական անսպառ եռանդի արժանի ներդրման ոլորտը, վսեմ, ոգեշունչ երգի և օգտակար աշխատանքի ոլորտը, որից սնվում, ուժ է առնում բանաստեղծը, որի տեղը, ըստ Մայակովսկու, «բանվորական շարքում» է:

Հոկտեմբերյան հեղափոխության տասնամյակին Մայակովսկին վերակերտել է նրա տարեգրությունը իր **Լավ** է նշանավոր պոեմում: Նա ինքը և՛ մասնակիցը, և՛ երգիչն է Հոկտեմբերի: Նա հպարտանում է, որ Ձմեռային պալատի վրա գրոհող ծովայինները արտասանում են իր խոսքերը.

«Ешь ананасы,
рябчиков жуй,
день твой последний приходит,
буржуй!»

Հեղափոխության վեհապանծ հաղթական ընթացքն է արտացոլում պոետն իր «քայլերգերում», երգում ներբողներում ու հիմներում: Իր բանաստեղծական խոսքով ժողովրդին հասնելու հաստատակամությամբ լի, նա կերտում էր իր նորարարական արվեստը, ստեղծում նոր կերպարներ, նոր ռիթմեր ու ձևեր, պոեզիան «երկնքից» իջեցնում էր երկիր, հագեցնում արդիականության ոգով, ուղղում միլիոններին, ժողովրդական զանգվածներին, ձգտելով խոսել նրանց հետ միևնույն լեզվով: Նա իրեն համարում էր հեղափոխության, ժողովրդի, սովետական նոր 150 միլիոն կերտողների կողմից «զորակոչված»: Նրանց մասին և նրանց համար է գրվել սովետական առաջին պիեսը՝ **Միստերիա-բուֆը**, որի առանցքն է երկրագունդը լվացող-մաքրող հեղափոխական ջրհեղեղը. պիես, որն ինքը՝ բանաստեղծը, անվանել է «մեր դարաշրջանի հերոսական, էպիկական, սատիրական պատկերում», և որն ստեղծելիս նա ջանացել է լինել մատչելի, որոնել ու գտել է թարմ ու համարձակ նորարարական ձևեր: Ինչպես ասել է Լունաչարսկին, «այս ստեղծագործության բովանդակությունը տրված է արդիականության բոլոր վիթխարի հուզումներով, այս առաջին անգամն է, որ բովանդակությունը մեր օրերի արվեստում համազոր է կյանքի երևույթներին»: Հոծ զանգվածների մասին և հենց նրանց համար է գրել Մայակովսկին **150 000 000** պոեմը, ժողովրդական բանահյուսության, դյուցազնավեպի ոճաձևով ու երանգավորմամբ, գովերգելով այդ զանգվածները, փառաբանելով նրանց պայքարը, ցույց տալով նրանց հերոսականության գեղեցկությունը:

В бою
славлю миллионы,
вижу миллионы,
миллионы пою.

Բանաստեղծի քաղաքացիական սխրանքն էր նրա ագիտացիոն անխոնջ աշխատանքը Ռոստայի պատուհաններում, աշխատանք, որի վիթխարի թափը զգացմունքի ողջ ուժով արտահայտված է նրա այս խոսքերում. «Ռոստայի օրերն ու գիշերները: Հարձակվում են ամեն կարգի դենիկիններ: Գրում եմ և նկարում: Պատրաստել եմ երեք հազար պլակատ և վեց հազար տեքստ»: Ռոստայում աշխատելու երկուս ու կես տարիների ընթացքում Մայակովսկին այլ տիպի բանաստեղծություններ համարյա չի գրել: Եվ միայն Ռոստայի ու Գլիքաղլուսի վերջին պատուհանների երևան գալուց հետո, 1922 թվականի սկզբին, նա գրեց **Սիրում եմ** լիրիկական պոեմը: «Ռոստայի օր ու գիշերներում» գրվել ու անմիջապես լայն ճանաչում է ստացել նրա **Անօրինակ արկած...**-ը՝ բանաստեղծին հյուր եկած արևի հետ նրա ընկերական, սրամիտ ու անկեղծ զրույցը, ուր պոետ-ագիտատորի պարտականությունը խորիմաստ, վառ ու պարտավորեցնող կերպով համեմատված է արևի պարտականության հետ:

Про то,
про это говорю,
что-де заела Роста,
а солнце:
«Ладно,
не горюй,
смотри на вещи просто!
А мне, ты думаешь,
светить
легко?
— Поди попробуй! —
А вот идешь —
взялось идти,
идешь — и светишь в оба!»

Մայակովսկին ապրում, հասակ էր առնում երկրի, ժողովրդի հետ միասին և այն ամենը, ինչ հույժ պետք էր երկրին, ամենաայրող, ամենասուր անձնական պահանջմունք էր նրա համար, իբրև պոետի: Նա, կարելի է ասել, ագիտացիայի «լիրիկական» պահանջմունք ուներ, և դրան էլ նա սկզբունքորեն ու ոգեշունչ նվիրվում էր, արհամարհելով գրական պճնամոլների իր հասցեին ուղղված «պոետական աղաղակն ու ծաղրը», նրանց երևսպաշտ ցավակցությունը Մայակովսկու իբրև թե հարկադրյալ «վատնումի» համար: Իր տաղանդը ծառայեցնելով քաղաքականությանը՝ Մայակովսկին հարստացնում էր այն, քանի որ քաղաքականությունն օտար չէր իրեն, այլ իրենն էր: Այդ մասին նա ճշմարիտ ու շիտակ ասել է Լենինին նվիրված իր առաջին բանաստեղծության մեջ.

Поэтом не быть мне бы,
если б
не это пел —
в звездах пятиконечных небо
безмерного свода РКП.

Ամեն օր, ամեն ժամ նա կամենում էր օգտակար լինել հեղափոխությանը: «Մեր ժամանակներում պոետը նա է, գրողը նա է, ով օգտակար է»— այդպիսին էր նրա համոզմունքը: Մայակովսկու համար գոյություն չուներ սև աշխատանք: «Լույս տալ միշտ, լույս տալ ամենուր»,— այդպիսին էր նրա առաջադրած լոզունգը, և Մայակովսկին հասնում էր միշտ և ամենուր, որտեղ նրա բանաստեղծա-

կան խոսքը կարող էր մարդկանց համար լույսի վերածվել։ Օրեցօր ծնվում ու տարածվում էին ռոստայական մոբիլիզացնող հարվածային նրա տողերը՝ Լենինի մտքերի պատկերավոր բացահայտմանը նպատակամետ, համաժողովրդական, երիտասարդ սովետական պետության կյանքի ամենահրատապ հարցերին արձագանքող, ուղղված համաժողովրդական լսարանին։ Ռոստայի պատուհանների համար գրվածը Մայակովսկին համարում էր իր «երկերի երկրորդ ժողովածուն»։ Երկերի այս «երկրորդ ժողովածուն» սերտորեն կապվում էր առաջինի հետ, ազդում նրա բովանդակության, ձևերի վրա։ Ագիտատորի, պլակատներ նկարողի, պատուհանների համարյա բոլոր տեքստերի հեղինակի, ճանապարհորդող, դասախոսություններով, ելույթներով հանդես եկողի, իր իսկ բանաստեղծությունների անզուգական արտասանողի աշխատանքը Մայակովսկուն ամուր կապում էր կյանքի հետ, կոնկրետ նպատակադրումների էր ծառայեցնում նրա խոսքը, հարստացնում էր այն ու կոփում, մաքրում ամեն տեսակ «մշուշայնությունից», ժողովրդականացնում նրա լեզուն, կոփում նրա ոտանավորի մետաղը։

«Կյանքը հանճարի արհեստանոցն է»,— ասել է պոետը հեղափոխության առաջնորդի՝ Լենինի մասին։ Ինքը՝ Մայակովսկին ևս իր «արհեստանոցում» յուրացնում էր այն ամենը, ինչ տեղի էր ունենում երկրի ու ժողովրդի կյանքում, յուրացնում էր պատմության կենդանի ընթացքը, անցկացնելով իր հուզագրգիռ-կրքոտ սրտի միջով, վերաձուլում, դարձնում թևավոր հնչեղ խոսք և լուծում իրոք տիտանական մի խնդիր— ստեղծում հեղափոխության բանաստեղծական էպոսը, հեղափոխության լիրիկան ու հրապարակախոսությունը։

Փառաբանելով աշխատանքի մարդկանց՝ Մայակովսկին ծաղրում, ձաղկում ու խարազանում էր այն ամենը, ինչ խանգարում էր ստեղծագործական աշխատանքին, որսում ու հարվածում էր սոցիալիստական գիտակցությանն ու կենցաղին խորթ ամեն բան. իր բանաստեղծությունների մերկացնող տողերը նա ուղղում էր բյուրոկրատների, քննադատությունը ճնշողների դեմ, անհաշտ պայքար հայտարարում ընդդեմ քաղքենիության։ Սովետական գրականության մեջ նա առաջինը համարձակ խոսակցություն սկսեց «մեր կարմրադրոշ հասարակարգին» անհարիր, բայց և միաժամանակ նրան ուղեկցող, նրանում բուն դնող թերությունների մասին։ Նա կրքոտ ու անխնա խոսեց ամեն կարգի ու տեսակի «անպետքության» մասին։ Վ. Ի. Լենինը բարձր է գնահատել 1922 թվականի մարտին «Իզվեստիա» լրագրում տպագրված նրա **Ժողովամոլները** բանաստեղծությունը, իր հոդվածներից մեկում օգտագործելով այն որպես դրական օրինակ։ Ահա թե ինչ առիթով է նա խոսել այդ մասին. «**Նահանջը վերջացած** է, իսկ այդ կապակցությամբ փոխվում է նաև մեր աշխատանքը։

Պետք է նշել, որ մինչև այժմ մեզ մոտ այդ հարցը քննարկելիս մեծ ջղայնություն է նկատվում, համարյա հիվանդագնության աստիճան. ամեն տեսակ պլաններ են կազմվում և ամեն տեսակ որոշումներ են հանվում։ Այդ առթիվ ես ուզում եմ մեջ բերել հետևյալը։ Երեկ ես պատահաբար «Իզվեստիայում» կարդացի Մայակովսկու մի բանաստեղծությունը քաղաքական թեմայով։ Ես նրա բանաստեղծական տաղանդի երկրպագուներից չեմ, թեև լիովին ընդունում եմ իմ ոչ կոմպետենտ լինելն այդ ասպարեզում։ Բայց վաղուց է ես այդպիսի հաճույք չէի զգացել քաղաքական և վարչական տեսակետից։ Իր բանաստեղծության մեջ նա սարսափելի ծաղրում է նիստերը և ծաղրուծանակի է ենթարկում կոմունիստներին, թե նրանք շարունակ նիստեր ու նորից նիստեր են անում։ Չգիտեմ, պոեզիայի տեսակետից ինչպե՞ս է, բայց քաղաքականության տեսակետից երաշխավորում եմ, որ դա միանգամայն ճիշտ է» (**ԵԼԺ**, հ. 45, էջ 16—17)։

Մայակովսկին սիրում էր ընթերցողների հետ խոսել լրագրի էջերից։ Եթե իր քնարերգության մեջ ևս նա «մեծ կտավների» պոետ էր և **Սիրում եմ** պոեմում ծաղրում էր նրանց, ովքեր քնարերգության ոլորտը սահմանափակում էին «բնակարանային փոքրիկ աշխարհիկով», ապա լրագիրը նրա համար դուռ էր ու ելք դեպի մեծ աշխարհ։ Պոլիտեխնիկական թանգարանի մեծ լսարանն արհեստանոց էր նրա համար, ուր աշխատում է արվեստագետը՝ ազատ կախելով իր կտավները, ուր նա ցուցադրում և ստուգում է իր աշխատանքը. «Իզվեստիան» էլ Մայակովսկուն կապում էր միլիոնների լսարանին, առանց որոնց կենդանի շնչառության նա չէր կարող իրեն բանաստեղծ զգալ։ Լրագրի խմբագրություն նա գալիս էր ինչպես ծառայության, համարյա ամեն օր։ Նրան հաճո էր աշխատանքում ներգրավված լինելը, դրա հրատապությունը, ուրեմն և իր պետքականությունն զգալը։ Պոետի աշխատանքը նա իմաստավորում էր իբրև պետական, իբրև ժողովրդական քաղաքացիական ծառայություն։ «Իզվեստիայի» էջերում ծնվեց ու աճեց Վլադիմիր Մայակովսկու՝ «ագիտատորի, բարձրագոչ-ռահվիրայի» կերպարը։ Բանաստեղծի կերպարն առինքնում էր



ժողովրդի սիրտը ո՛չ միայն ստեղծագործություններով, այլև իր անձով՝ անհատականությամբ։ Եվ ինքը՝ պոետը, այնպես միաձույլ էր իր ժողովրդին, որ միշտ ու ամենուր և, մասնավորապես, արտասահմանյան ուղևորությունների ժամանակ, զգում էր իրեն որպես իր ժողովրդի լիազոր ներկայացուցիչ։ Բանաստեղծությունները, որ ծնունդ էին այդ ուղևորությունների, ներթափանցված են ոչ մի տեղ, ոչ մեկի առաջ գլուխ չծռող սովետական մարդու հպարտությամբ, մարդ, որը լիովին գիտակցում էր արդարությունն այն նոր կյանքի, այն հասարակարգի, այն հզոր, միասնական ուժի, որին բոլորանվեր պատկանում է ինքը։ Մինչև օրս էլ որպես մեծ ընդհանրացում հնչում են բանաստեղծի հետևյալ խոսքերը.

Я в восторге
от Нью-Йорка города.
Но
кепчонку
не сдеру с виска.
У советских
собственная гордость:
На буржуев
смотрим свысока.

Մայակովսկու պոեզիայում ի հայտ է գալիս, վառ ու հստակ գծագրվում է նոր ժամանակի և նոր տիպի քնարական հերոսը, համաժողովրդական կյանքի, շարժման ու գործի հետ իր ողջ գոյությամբ, զգացմունքներով, հույզերով, երազանքներով ու հավատով կապված հերոսը։ Մայակովսկու ստեղծագործության մեջ ամենաանձնական, ամենաինտիմ զգացմունքը՝ սերը, ստացել է նոր ուժ ու իմաստ, ընդլայնվել է՝ միաձուլվելով այն ամենի հետ, ինչը կազմում է համընդհանուր կյանքի էությունն ու առանցքը, միաձուլվելով կոմունիզմ կառուցելու հեղափոխական ձգտումին։ Կոմունիզմը բանաստեղծի համար քաղաքական իդեալ չէր միայն։ Կոմունիզմը նրա համար այն միակ, իրոք մարդկային հիմքն էր, առանց որի նրա համար գոյություն չունեին ո՛չ գեղեցկություն, ո՛չ երջանկություն, ո՛չ սեր.

... Я ж
с небес поэзии
бросаюсь в коммунизм,
потому что
нет мне
без него любви.

Մայակովսկին ամենայն սրությամբ զգում էր մարդու ներաշխարհի ողջ բարդությունը, հակասականությունը, նրա հոգին փոթորկող զգացմունքների «քաոսը», զգում էր, թե մարդկային սրտերի վրա ինչպիսի իշխանություն ունի այն, «ինչ ստրկությունն է մեր մեջ մեխել», այն խավարն ու մանրուքը, որը կարող է սերը «տանջանք» դարձնել։ Հանուն մարդկային հոգին երկատող, նրա զգացմունքների աշխարհը պղտորող ու մթագնող անցյալի «ուրվականների» հաղթահարման, հանուն մեծ, լուսավոր սիրո հաստատման է գրվել **Այդ մասին** հոյակապ ու կրքոտ, անկեղծ պոեմը՝ որը պատկանում է XX դարի սիրային քնարերգության լավագույն էջերին։ Մայակովսկին ներդաշնակություն էր երազում զգացմունքների բարդ ոլորտում, երազում էր գիտակցականի, պայծառի, բանականի հաղթանակը իռացիոնալի ու տառապալիցի նկատմամբ, երազում կոմունիստական դիմագծի ու հոգեբանության տեր նոր մարդու մասին։ Այդ երազանքից էր գալիս սիրո ու կոմունիզմի միավորումը մի միասնական կերպարում։ Մայակովսկին այն ներկայացրել է **Սիրում եմ** պոեմում, ազնիվ, անաղարտ բարոյականության ջերմ, շողշողուն լույսով, որտեղ սերը երջանիկ զգացմունք է, ոգեշնչանք, երբ մարդու սիրտը կարծես լայնանում, ընդարձակվում է ու իր մեջ առնում այն ամենը, ինչ կատարվում է աշխարհում։

У прочих знаю сердца дом я.
Оно в груди — любому известно!
На мне ж
с ума сошла анатомия.
Сплошное сердце —
гудит повсеместно.

Մայակովսկու քնարերգության մեջ սերը պատկերված է որպես սքանչելի զգացմունք, կենսազոր մի ուժ, ոգեշնչման, խանդավառ ստեղծագործության աղբյուր, և այդ նրա նորարարական կարևորագույն հայտնագործություններից մեկն է, որի ազդեցությունն առկա է եղել այս թեմային դիմող հետագա բանաստեղծների գործերում և այսօրվա մեր մարդկանց հոգևոր, բարոյական աշխարհում։

Մայակովսկու քնարական հերոսը կյանքի նկատմամբ իր ակտիվ ստեղծագործական, շահագրգիռ վերաբերմունքով, սրտի ընդարձակման օրինակ է տալիս մեզ, վարակում է մեզ մեծ պատմական գործին մասնակցելու հպարտությամբ ու երջանկությամբ, վարակում իր զգացմունքների ողջ հարուստ գամմայով, իր բուն հայրենասիրությամբ ու ինտերնացիոնալիզմով, իր քաղաքացիական խանդավառությամբ, «լավի» ու «վատի» նկատմամբ խիստ տարբեր վերաբերմունքով, իր անողոքությամբ ամեն մի թերության և հպարտու-

թյամբ՝ սոցիալիզմի ամեն մի, նույնիսկ ամենափոքր հաջողության համար, իր հրճվանքով ու զայրույթով, իր հեգնանքով ու երգիծանքով, իր անսահման անկեղծությամբ, առնական շիտակությամբ ու պարզությամբ: Մայակովսկին պոեզիայում հաստատում է աշխարհին, լինելիությանը, հասարակությանը, մարդկանց իր ողջ սրտով ու գոյությամբ բաց անհատականության տիպարը, նաև «դարերին, պատմությանը, ողջ տիեզերքին» իր խոսքն ուղղող բանաստեղծի տիպարը:

Քնարական և էպիկական տարերքը Մայակովսկու պոեզիայում միաձուլվում է նույնքան օրգանական, որքան անձնականը ձուլվում է ընդհանուրին, առանձին մարդու «եսը»՝ միասնական ամբողջին, մարդկանց կոլեկտիվ ուժին՝ կուսակցությանը, դասակարգին, ժողովրդին: Այդ օրգանական միասնությունը, միաձուլումը իրենց լավագույն արտահայտությունն են գտել Մայակովսկու խոշորագույն բանաստեղծական կտավներում՝ **Վլադիմիր Իլյիչ Լենին** և **Լավ է** պոեմներում: Պատմության շարժման պատկերն է բանաստեղծի էպիկական թեման: Ժողովուրդ, դասակարգ, կուսակցություն, առաջնորդ— ահա անխզելիորեն իրար կապված նրա հերոսները, երկվորյակ հսկաները: Ու նաև նա, ով քնարականորեն ընդգրկված է իրադարձությունների էպիկական ընթացքի մեջ, հերոս, որ ապրում է, գործում, սիրում, տառապում և ուրախանում՝ միաձուլված պատմությունը կերտող զանգվածներին, հերոս, որ խոստովանում է. «Երջանիկ եմ ես, որ մասնիկն եմ այդ ուժի», հերոս, որ մարմնավորում է սովետական քաղաքացու ընդհանրացված տիպը և իր իսկ՝ բանաստեղծի վեհասքանչ, կենդանի կերպարը: **Լավ է** պոեմում Մայակովսկին ամբողջովին նույնացնում է իրեն ժողովրդի հետ և որպես գերագույն ինքնագնահատում հնչում են բանաստեղծի խոսքերը.

Грудью
У витринных
книжных груд.
Моя
фамилия
в поэтической рубрике.
Радуюсь я —
это мой труд
вливается
в труд
моей республики.

Իր կյանքով ու պոեզիայով Մայակովսկին տվել է հասարակական ու քաղաքացիական վարքագծի վեհ օրինակ: Իր հայրենիքի հողում նա իրեն զգում է տեր, վարպետ, արարող, կյանքը նա համարում է «գործ», «արարում», իսկ պոեզիան՝ աշխարհի վերափոխման կարևոր միջոցներից մեկը: Մայակովսկին դարձավ սովետական ողջ բազմազգ պոեզիայի համալսարանը: Ինչպես իրավամբ ասել է Ալեքսեյ Սուրկովը, «Դժվար է դատել իրոք տաղանդավոր և իրոք սովետական որևէ պոետի ստեղծագործության մասին (անկախ նրանից, թե ինչ չափով ու հանգով է գրում նա— մեղեդայի՞ն, թե՞ ինտոնացիոն-շեշտային ճառախոսական), չանդրադառնալով Մայակովսկու նորարարական փորձին: Չէ՜ որ իր ժամանակակիցների և սերունդների համար նա նվաճեց դեռևս չտեսնված, աննախընթաց նոր կենսական նյութ և նյութի հեղափոխական բնույթին համապատասխան մարմնավորեց այն նորաստեղծ ձևերով ու միջոցներով»:

Մայակովսկու նորարարական փորձը մեծ դեր է խաղացել նաև սովետահայ պոեզիայի զարգացման համար: Մայակովսկիական «դպրոցի» կողմնորոշման իր բոլորովին նոր պոետական աշխարհն է ստեղծել, ազգային պոեզիայի նոր փուլ է սկզբնավորել Եղիշե Չարենցը: Նոր իրականության գեղագիտական յուրացման ուղիների որոնումներում Չարենցը հարազատորեն ընկալեց Մայակովսկու փորձը և, ստեղծելով իր **Ամենապոեմը**՝ հայ ժողովրդի ճակատագրի այդ համայնապատկերը հեղափոխական ժամանակաշրջանում, ստեղծելով իր կոչ-ագիտացիոն բանաստեղծությունները, **Կապկազ-թամաշա** երգիծական պիեսը, իր հոյակապ լենինապատումը, տարեցտարի հարստացնելով ու հզորացնելով պոետ-քաղաքացու իր ձայնը, ձգտելով մեն մի նպատակի՝ «ժամանակի շունչը» դառնալու, հայկական պոեզիայի համար նվաճեց նոր բնագծեր, նոր բարձունքներ: Թե ինչպիսի մեծ կարևորություն է տվել Չարենցը Մայակովսկու դասերի յուրացմանը, իր հիշողություններում վկայում է Նաիրի Զարյանը՝ Մայակովսկու ավանդույթների ժառանգորդ հայ պոետներից մեկը: Ն. Զարյանը հիշում է, թե ինչպես լինելով սկսնակ բանաստեղծ, գալիս է Չարենցի մոտ, տալիս նրան իր բանաստեղծությունների տետրակը, և Չարենցը, թերթելով այն, հարցնում է.

— Այս դո՞ւ ես գրել:

Ես դառնություն զգացի բերանումս և ոչինչ չկարողացա պատասխանել: Չարենցը շարունակելով թերթել իմ տետրակը, նայեց երեսիս:

— Իսկ դու կարդացե՞լ ես Մայակովսկուն: Չե՜ս կարդացել, աչքերիցդ երևում է: Մեր օրերում, Մայակովսկի չիմանալով, հնարավոր չէ բանաստեղծ դառնալ:

Եվ հենց այդտեղ էլ արտասանեց **Վարտիքավոր ամպը:** Ապա խորհուրդ տվեց.



— Այս տետրակդ տանը պահիր և սկսիր նորից գրել: Գրիր հեղափոխության մասին:

Ինքը՝ Նաիրի Զարյանը, 1963 թ., պատասխանելով «Վոպրոսի լիտերատուրի» ամսագրի հարցերին, գրել է. «Մայակովսկուն համարում եմ մեր դարի մեծագույն պոետը: Սիրում եմ նրան: Որպես ընթերցող, Մայակովսկուն ես զգում եմ իմ բանաստեղծը, իսկ որպես բանաստեղծ, համարում եմ նրան իմ ուսուցիչը: Երազում եմ գրել այնպես, ինչպես գրել է Մայակովսկին»:

Քաղաքացիական պաթոս, հասարակական մեծ ձգտումներ, որոնց սերտորեն կապվում է պոետի զգայուն, անձնական ինտիմ աշխարհը, ակտիվ մասնակցություն համընդհանուր կյանքին, հոգու և մտքի խոր արձագանք դարի հրատապ խնդիրներին, «սրտի ընդարձակություն»— Մայակովսկու արվեստում արմատավորված այս հատկանիշները ավանդաբար փոխանցվել են Պարույր Սևակի, Գևորգ Էմինի նորարարական ոգով տոգորված պոեզիային:

Մայակովսկու ձայնին ունկնդիր, անգնահատելի դասեր քաղելով նրա դպրոցից, իրենց տաղանդը կոփել և իրենց ազգային ինքնատիպ պոետական մեծ աշխարհներն են կերտել Գալակտիոն Տաբիձեն, Գեորգի Լեոնիձեն, Սիմոն Չիկովանին, Սուլեյման Ռուստամը, Սամեդ Վուրղունը, Միրզո Թուրսուն-զադեն և շատ ու շատ ուրիշներ:

Նորարար-բանաստեղծի հերոսական փորձը արձագանքվել է նրա մարտական եղբայրակիցների՝ աշխարհի այնպիսի հեղափոխական բանաստեղծների ստեղծագործություններում, ինչպիսիք են՝ Լուի Արագոնը, Պաբլո Ներուդան, Նազիմ Հիքմեթը, Վիտեզլավ Նեզվալը, Բերտոլդ Բրեխտը, Իրժի Տաուֆերը, Էրիխ Վայներտը: «Պոետ Վլադիմիր Մայակովսկին սովորեցրել է ինձ, որ պետք է դիմել միլիոնավոր մարդկանց, նրանց, ովքեր կամենում են վերափոխել աշխարհը»,— ասել է Լուի Արագոնը: Նրան է ձայնակցում Լատինական Ամերիկայի պրոգրեսիվ գրականության ներկայացուցիչներից մեկը՝ Ժորժի Ամադուն. «Մայակովսկին սովորեցնում է մեզ բոլորիս՝ գրողներիս ու բանաստեղծներիս, թե ինչպես պետք է արվեստը դարձնել սոցիալիզմի կառուցման միջոց»: Սքանչելի է գնահատել Մայակովսկու ստեղծագործական սխրանքը Պաբլո Ներուդան. «Մայակովսկին պոեզիայի ինքնիշխան արարիչ է, որ ստեղծել է հեղափոխության ու քնքշանքի անքակտելի միասնություն... Նրա պոեզիան մեր գիտակցության մեջ մնացել է որպես բրոնզե մի ծաղկեփունջ հեղափոխության և նոր պետության ձեռքին: Այդ մետաղյա ծաղիկներն անքակտելի են, ամուր կցորդված, բայց դրանից նրանք չեն կորցրել իրենց արգասաբեր ուժը... դրանում է բանաստեղծի ճակատագրի վեհությունը»:

Անուրանալի է Գևորգ Աբովի ավանդը Մայակովսկու բանաստեղծական արվեստի լավագույն նմուշները հայ ընթերցողին մատուցելու գործում: Հատված **Վլադիմիր Իլյիչ Լենին** պոեմից, **Վարտիքավոր ամպը** պոեմը, **Բանաստեղծություն սովետական պասպորտի մասին**, **Խոսակցություն ընկեր Լենինի հետ**, **Պոմպադուր**, **Երկչոտը**, **Քաղաքացիական կռվի վերջին էջը**, **Ծնչառությունդ, մկանդ, մարմինդ մարզիր հօգուտ ռազմական գործի** և այլ բանաստեղծությունների նրա թարգմանություններում հարազատորեն հնչում է հեղափոխական պոետի բոցաշունչ խոսքը:

Մայակովսկու ողջ ստեղծագործությունն ուղղված է դեպի ապագան: «Ամբողջ ձայնով» դիմելով մեզ՝ նա քաղաքացիական ու բանաստեղծական օրինակ հպարտությամբ բարձրացնում է «կուսակցական գրքույկների, հարյուր հատորները»: Եվ մեծագույն հոգածությամբ ընդունելով այդ թանկարժեք ժառանգությունը, հարգանքով շոշափելով «երկաթյա տողերը» և հանգերի «սուրծայր նիզակները», մենք կրկին ու կրկին համոզվում ենք, թե որքա՜ն ներգործուն և ժամանակակից է Մայակովսկու պոետական զենքը: Այսօր ևս իր ժողովրդի հետ է պոետ-տրիբունը, իր սոցիալիստական հայրենիքի հետ. նա մեզ հետ է և՛ սովորական, և՛ տոնական օրերին, նա մեր կենդանի զրուցակիցն է, որի շիտակ, կրքոտ ու խորիմաստ խոսքին ծարավի ենք միշտ: Մեր և գալիքի ժամանակակիցն է նա, որովհետև նրա ստեղծագործության մեջ ելակետայինը եղել և մնում է նրա քաղաքացիական դիրքորոշումը: Կուսակցական մոտեցումը միշտ էլ օգնել է նրան՝ խորապես ըմբռնելու ժամանակի առաջատար միտումները: Որպես իսկական տաղանդ, նա երբեք չի անջրպետվել կյանքից, երբեք թույլ չի տվել իրականության ցածրարժեք գունազարդում, ստվերոտ կողմերի, երևույթների արհեստական ունձացում:

Ժամանակն իրականություն է դարձրել Վլադիմիր Մայակովսկու ամենանվիրական երազանքը. նրա պոեզիան մեզ համար աշխատանքից ու հոգսերից ազատ պահի հանգիստ չէ. այն անհրաժեշտ է մեզ ամենօրյա կյանքում ու պայքարում:

«Մեռնելով՝ դառնալ շոգեքարշներ, տողեր և էլի այլ հարատև գործեր». ահա թե որն է անմահությունը Մայակովսկու համար: Ինքը՝ Մայակովսկին, նվաճել է այդպիսի անմահությունը: Նրա պոեզիան այսօր ևս շարունակում է մեզ հետ միասին կատարել իր «հարատև գործը»:

## Գրախոսություն և քննադատություն

# ԸՆԴԴԵՄ ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԱՎԵՐԻ

«ՀԱՅԱՍՏԱՆ» հրատարակչությունը լույս է ընծայել Լ. Բայրամյանի մենագրությունը*, որը նվիրված է մեր ժողովրդի պատմության կնճռոտ մի շրջանի: Այն օգտակար ներդրում է հայկական հարցի դիվանագիտական պատմության ուսումնասիրման բնագավառում: Արխիվային նյութերի, անգլիական պառլամենտի արձանագրությունների, դիվանագիտական փաստաթղթերի ժողովածուների, ռուսերեն, հայերեն և օտար լեզուներով հրատարակված հարուստ գրականության հիման վրա հեղինակը փորձել է բնութագրել անգլիական պահպանողականների, լիբերալների վարած քաղաքականությունը հայկական հարցում, անցյալ դարի վերջին տասնամյակներին: Սա չափազանց հետաքրքրական, դեպքերով ու իրադարձություններով հարուստ, խճճված պրոբլեմներով առլեցուն շրջան է: Չնայած առկա բազմաթիվ գրքերի ու հրապարակումների, հեղինակին հաջողվել է շրջանառության մեջ դնել նոր նյութեր, ցույց տալ անգլիական քաղաքականության էությունը բացահայտող նոր փաստեր: Մեկ-երկու ուսումնասիրությամբ խնդիրը չի սպառվում: Ինչ խոսք, այս գիրքը ևս անգլիական քաղաքականության սպառիչ բնութագրությունը չի կարող լինել:

Հայկական հարցում Մեծ Բրիտանիայի վարած հայավնաս քաղաքականության մթին ծալքերը, ցավոք, մեզանում վատ են ուսումնասիրված: Սկզբնաղբյուրները տակավին չեն դարձել սպառիչ ուսումնասիրման և բացահայտման առարկա: Անգլիական պառլամենտի բանավեճերի, կապույտ գրքերի դիվանագիտական գրագրությունների թղթերը, մամուլի ու մյուս պարբերականների հարուստ նյութերը տակավին սպասում են իրենց պրպտողներին ու գնահատողներին:

Աշխատության առաջին գլխում (Արևմտյան Հայաստանի տնտեսական և քաղաքական դրությունը 1870—1890-ական թվականներին) հեղինակը ներկայացնում է արևմտահայության սոցիալ-տնտեսական, քաղաքական իրավազուրկ վիճակը: Նա անդրադառնում է հողատիրության խնդիրներին, վեր հանում թուրք փաշաների ու քուրդ բեկերի հարստահարությունների փաստերը, անդրադառնում Աբդուլ Համիդ II-ի հակահայկական քաղաքականության դառնաղետ հետևանքներին: Հեղինակը շեշտում է այն ճշմարիտ միտքը, որ սուլթանական Թուրքիայի դեմ հայ ժողովրդի լավագույն զավակների մղած ազատագրական կռիվն իր բնույթով միանգամայն օրինաչափ և առաջադիմական էր:

Աշխատության երկրորդ գլուխը նվիրված է XIX դարի վերջին Թուրքիայում և Արևմտյան Հայաստանում անգլիական իմպերիալիզմի տնտեսական և ռազմաստրատեգիական շահերի լուսաբանմանն ու բնորոշմանը: Հեղինակն այստեղ անդրադարձել է խնդրի առևտրական, ֆինանսական, կոնցեսիոն կողմերին, բացահայտել աշխարհի այդ շրջանում անգլիական իմպերիալիզմի հետապնդած նպատակները:

Երրորդ գլխում (Անգլիան և հայկական հարցը 1870-ական թվականներին) հեղինակը պատմում է 1877—1878 թթ. ռուս-թուրքական պատերազմից հետո հայկական հարցի շուրջը տեղի ունեցած անցուդարձի, Սան-Ստեֆանոյի և Բեռլինի պայմանագրերի մասին, մասնավորապես բացահայտելով այն բացասական դերը, որ խաղացին Դիզրայելին և նրա գործընկերները հայկական հարցում:

Գրքի չորրորդ գլուխը նվիրված է Բեռլինի կոնգրեսից հետո հայկական հարցի շուրջը տեղի ունեցած իրադարձություններին, տերությունների միջև ծավալված մրցավազքին: Եվ, վերջապես, վերջին՝ հինգերորդ գլուխը նվիրված է հայկական հարցում անգլիական իմպերիալիստների վարած քաղաքականությանը XIX դարի 90-ական թվականներին: Գերմանական «Գրոսս Պոլիտիկ» բազմահարուստ հրատարակության նյութերի հիման վրա հեղինակը որոշակի պատկերացում է տալիս Օսմանյան կայսրությունում տերությունների քաղաքականության հանգամանքների մասին, հատկապես անդրադառնում անգլո-գերմանական մրցակցությանը, անգլո-ռուսական հարաբերություններին:

Հեղինակին հաջողվել է մարքսիզմ-լենինիզմի կլասիկների ասույթների, բնութագրումների հիման վրա, անգլիական դիվանագիտական, քաղաքական ու կուսակցական պարագլուխների ելույթների վերլուծությամբ դիմակազերծել լիբերալների ու պահպանողականների կառավարությունների հակահայկական քաղաքականությունը, ինչպես և հայկական հարցի չարաշահմամբ եվրոպական պետությունների հետ գաղութատիրական գործարքներ կնքելու փորձը: Գրքում ցույց է տրված, թե ինչպես 1890-ական թվականներին անգլիական կառավարությունը մերթ սիրաշահել է սուլթանին, պաշտպանել նրա «աստվածային» իրավունքները արևմտահայության նկատմամբ, մերթ դատապարտել նրա արմենոցիդի քաղաքականությունը: Անգլիան մեկ ձևանում էր Օսմանյան կայսրության պաշտպան, մերթ սպառնում գահազրկել Աբդուլ-Համիդ II-ին, մերթ սիրախաղում, նպաստում նրա պահպանմանը: Մերկացնելով անգլիական կառավարության նենգ քաղաքականությունը՝ հեղինակը հիմնավորված ձևով ապացուցում է, որ սուլթանը հայ ժողովրդի նկատմամբ գենոցիդ էր կիրառում:

Լ. Բայրամյանի գիրքը այն պիտանի հրապարակումներից է, որոնք հարվածում են պատմագրության բնագավառում ինչպես թուրքական, նույնպես և արևմտաեվրոպական ու ամերիկյան բուրժուական պատմաբանների կեղծագրերին:

Հանուն այն բանի, որ հակասովետական պլաններին համապատասխան՝ Թուրքիան, նրա ռազմաստրատեգիական դիրքն ավելի արդյունավետ օգտագործվեն ՆԱՏՕ-ի ագրեսիվ շրջանակներում, թուրքական շահերի նկատմամբ չափազանց ուշադիր են դարձել թե՛ ամերիկյան, թե՛ գերմանական և թե անգլիական հեղինակները: Սրանց այսօրվա գրվածքներում շատ բան է հարդարված: Պատմագրությանը փոխարինելու է գալիս կոնյունկտուրան, ժամանակին տուրք տալը:

Գրքում ընդհանուր առմամբ լավ է տրված անգլիական քաղաքականության էության քննադատությունը, թեև առանձին դեպքերում հախուռն մոտեցումը չի նպաստել որոշ հանգամանքների ավելի ընդհանուր ու ճշգրիտ բացահայտմանը: Անգլիական քաղաքականությունը երբեք ուղիղ գծով չի ընթացել, երբեք պարզունակ չի եղել: Նրա բովանդակությունն ըմբռնելու և ճիշտ լուսաբանելու համար անհրաժեշտ է զինվել հնարավորին չափ հարուստ փաստացի տվյալներով, կարողանալ տեսնել այս կամ այն գործողության կամ հրապարակային հայտարարության հակառակ, քողարկված երեսը:

Արևմտյան Հայաստանում Անգլիայի տընտեսական շահերի վերաբերյալ հեղինակի մեկնաբանությունները չափազանցության տարրեր են պարունակում («Հայաստանի լայն շուկաներ», «հումքի հարուստ աղբյուրներ», էջ 68 և այլն): Անգլիական իմպերիալիզմի շահագրգռվածությունը նախ և առաջ ռազմաստրատեգիական, հակառուսական բնույթ ուներ ինչպես նեղուցների, նույնպես և հայկական հարցում:

Անդրադառնալով թուրք պատմաբանների նենգափոխումներին՝ Լ. Բայրամյանը հենվում է Ե. Սարգսյանի, Ռ. Սահակյանի **Հայ ժողովրդի նոր շրջանի պատմության նենգափոխումը թուրք պատմագրության մեջ** գրքի (1963) փաստերի վրա: Մինչդեռ վերջին 15—20 տարում թուրքական պետական պրոպագանդան, պատմաքաղաքական գրականությունը, մամուլը այնպիսի ավերածություն են գործում հայ-թուրքական առնչությունների «լուսաբանման», հայկական հարցի աղավաղման ասպարեզում, որ անհրաժեշտ էր նոր փաստերի, նոր աղբյուրների քննարկումը սույն գրքի էջերում:

Ընդհանրապես թուրքական պատմագրության ուսումնասիրությունը շարունակում է մնալ առաջնային անհրաժեշտության գործ: 226—229 էջերի շարադրանքից չի հասկացվում, թե ճի՞շտ էր, որ անգլիական մամուլը դատապարտում էր թուրքական վայրագությունները, թե՞ ոչ: Ինչ խոսք, որ անգլիական իմպերիալիզմը հետապնդում էր որոշակի նպատակներ: Բայց ճիշտ էր նաև, որ Եվրոպայի, ինչպես և Ռուսաստանի ու Անգլիայի առաջադեմ մարդիկ, դեմոկրատ գործիչները շատ տեղին դատապարտում էին Թուրքիայի ստեղծած դժոխքը, ի պաշտպանություն արևմտահայության: Անհրաժեշտ է, այնուամենայնիվ, տարբերություն նկատել անգլիական կառավարության պաշտոնական քաղաքականության և հասարակական-քաղաքական այն ուժերի միջև, որոնք XIX դարի 90-ական թթ. կեսերին իրոք դատապարտում էին համիդյան հակահայկական ջարդարարական քաղաքականությունը և նույնիսկ ներազդում եվրոպական մյուս երկրների հասարակական ուժերի տրամադրությունների վրա: Հեղինակն ուղղակի գրում է, թե անգլիական կառավարությունը «հրահրում էր հայկական ջարդեր» (էջ 220): Պետք են ավելի նրբին և ճշգրիտ ձևակերպումներ:

«Անգլիական քաղաքականությունն Արևմըտյան Հայաստանի նկատմամբ ոչնչով չէր

---

* *Լ. Ա. Բայրամյան*, Արևմտյան Հայաստանը անգլիական իմպերիալիզմի պլաններում *(XIX դարի վերջին քառորդում), «Հայաստան» հրատ., 1982:*

տարբերվում Հնդկաստանի նկատմամբ անգլիական քաղաքականությունից» (էջ 226): Սա հեռու է պատմական իրականությունից: Առաջին գլխում հեղինակն անդրադառնում է ագրարային հարաբերություններին, փորձում վերլուծել այդ բնագավառի բնորոշ գծերը, երևույթները: Նախ՝ կարելի է վիճարկել անգլիական քաղաքականության լուսաբանմանը նվիրված աշխատության մեջ այդ խնդրի քննարկման անհրաժեշտությունը: Սակայն հեղինակի շարադրանքից Արևելքի պատմությանը ոչ լավատեղյակ ընթերցողը չի կարող հստակ պատկերացում կազմել հողային հարցի վերաբերյալ: Հիշատակելով Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի ասույթները Արևելքում հողի մասնավոր սեփականության բացակայության մասին, ինչը և հանդիսանում էր «քաղաքական և կրոնական ամբողջ պատմության հիմքը», միաժամանակ բերում է այնպիսի օրինակներ, անում այնպիսի ձևակերպումներ, որոնք հակադրվում են նախորդ ասածներին: Օրինակ, 9-րդ էջում նա գրում է. «Թուրքիայում չկար հողի մասնավոր սեփականություն», իսկ 11-րդ էջում՝ «քուրդ ֆեոդալները նորտացրած գյուղացիներին գնում ու վաճառում էին հողի հետ»:

Չի կարելի համաձայնել հեղինակի այն մտքի հետ, թե «XIX դարի վերջին երկու տասնամյակներում ցարական Ռուսաստանի և Թուրքիայի շահերը Անգլիայի դեմ ժամանակավորապես համընկնում էին իրար» (էջ 219): Սա պարզունակ մոտեցում է: Գլխավորն այն էր, որ Ռուսաստանում հեղափոխական հուժկու շարժումների դեմ հետադիմական արշավ սանձազերծած ցարիզմը՝ Ալեքսանդր III-ն ու Նիկոլայ II-ը, միևնույն մոտեցումն էին դրսևորում Աբդուլ-Համիդ II-ի իշխանության, թուրքական տիրապետության դեմ պայքարի դրոշ պարզած ճնշված ժողովուրդների, այդ թվում՝ հայ ժողովրդի ազգային-ազատագրական շարժման նկատմամբ:

Հեղինակը հիշատակում է «անգլիական դիվանագիտության լարած որոգայթների մասին» Նելիդովի հաղորդումները Պետերբուրգ (էջ 229): Հարկ է գրել նաև Նելիդովի քաղաքական հավատամքի, նրա մյուս գործողությունների մասին:

Գրքում տեղ են գտել մի շարք անճշտություններ, ոճական անհարթություններ: Ոչ թե «Գիբբսոն» (էջ 22), այլ «Գիբոնս», ոչ թե Ս. Ատյան (էջ 26), այլ Ս. Ատենյան (Կասյան): Ոչ թե «անգլիական պատմաբան Ա. Մորուա» (էջ 80), այլ ֆրանսիացի գրող Անդրե Մորուա: Ճիշտ չէ Խրիմյանին «պարզամիտ» (էջ 104) անվանել: «Այսօր մենք կարող ենք ասել, որ Իգնատևը լրիվ չարդարացրեց հայ ժողովրդի հույսերը» (էջ 95): «Թուրքական պետությունը թեոկրատիկ բնույթի էր, սուլթանները՝ ժառանգական, որոնք օգտվում էին անսահմանափակ իրավունքներից»: «Զուլումի երեսնամյա սուլթանությունը խավարամոլության շրջան էր» (էջ 8) և այլ այս տիպի կիսատ-պռատ նախադասությունները ցավոք քիչ չեն գրքի էջերում:

Անկախ այս ամենից՝ Լ. Բայրամյանի գիրքը որոշակի ներդրում է սովետահայ պատմագիտության մեջ:

**Զ. Ս. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ**
**Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

---

# *ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆ ՊԱՀԱՆՋՄՈՒՆՔՆԵՐԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ**

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ կուսակցությունն անշեղորեն կենսագործում է ժողովրդի բարեկեցության բարձրացման, սոցիալիստական ապրելակերպի և հասարակական հարաբերությունների ողջ համակարգի զարգացման քաղաքականություն: Կարևոր միջոցառումներ են իրականացվում բնակչության նյութական և հոգևոր պահանջմունքների առավելագույն բավարարման, բնակարանային և կենցաղային պայմանների բարելավման, բժշկական սպասարկման և հանգստի կազմակերպման համար պայմանների ստեղծման նպատակով:

Վերջին տարիներին հրապարակ են եկել պահանջմունքների էությանը վերաբերող մի շարք ուսումնասիրություններ: Դրանցից մեկը գրախոսվող աշխատությունն է, որտեղ պրոբլեմը քննարկվում է իբրև տնտեսագիտական կատեգորիա: Հասարակական նյութական պահանջմունքներն արտադրության ծնունդ են, սակայն, ինչպես նշում է հեղինակը, դա չի նշանակում, թե պահանջմունքները պետք է համապատասխանեն հասարակական արտադրության մակարդակին ու կառուցվածքին, քանզի դրանց միջև եղած հակասությունն է խթանում արտադրության զարգացումը և նպաստում նոր արտադրությունների կազմավորմանը:

Գրքում քննադատաբար վերլուծվում են տնտեսագիտական գրականության մեջ հանդիպող համապատասխան բնորոշումները: Ըստ հեղինակի՝ տնտեսական պահանջմունքները կեցության նյութական գործողության ձև են՝ պայմանավորված տիրապետող սոցիալ-տնտեսական հարաբերություններով (էջ 34): Առաջնությունը տալով նյութական արտադրությանը, հեղինակը միաժամանակ շեշտում է ոչ նյութական արտադրության՝ ծառայությունների ոլորտի նշանակությունը:

Հասարակության զարգացմանը զուգընթաց փոխվում են նյութական պահանջմունքների կառուցվածքը, բովանդակությունը, դրսևորման ու բավարարման ձևերը: Պահանջմունքների աճի օրենքի գործողության շրջանակների ընդլայնումը հակասություն է առաջացնում արտադրության և սպառման միջև: Սոցիալիզմի պայմաններում այդ հակասությունն իր բնույթով անտագոնիստական չէ: Այստեղ ապահովվում է բնակչության բոլոր խավերի կենսամակարդակի բարձրացումը: Այդուհանդերձ, արտադրության և սպառման միջև եղած հակասությունն իսպառ չի վերանում:

Գրքում հանգամանորեն քննարկվում է պահանջմունքների զարգացման պլանային կարգավորման խնդիրը: Դրանց կառավարումը կոնկրետացնում, ճշգրտում է հասարակական կյանքի տարբեր օղակների, առաջին հերթին, արտադրության ֆունկցիաները:

Այստեղ կարևորվում է անհրաժեշտ ինֆորմացիայի առկայությունը, որի ապահովման պարտականությունը դրված է համապատասխան կազմակերպությունների, առաջին հերթին, վիճակագրական մարմինների վրա: Սակայն այժմ ինֆորմացիայի ապահովումը դեռևս բավականաչափ բարձր հիմքերի վրա դրված չէ: Այդ կապակցությամբ հեղինակը գտնում է, որ հարկավոր է ավելի մանրամասն դարձնել պահանջմունքների համակարգի ցուցանիշները, որպեսզի մշակվեն դրանց հաշվառման մեթոդներ, որը հնարավորություն կընձեռի ստանալու լրիվ ինֆորմացիա, ընթացիկ և մոտակա պահանջմունքների վերլուծության ու դրանց հեռանկարների կանխատեսման համար: Այնուհետև առաջարկվում է ստեղծել ինֆորմացիոն ապահովման ցանցի կոմպլեքսային ծրագիր, պահանջմունքների փոփոխությունների ուսումնասիրման, դրանց տրված չափանիշներով դասակարգման ու վերախմբավորման նպատակով:

Արտադրական և անձնական պահանջմունքների պլանավորումն ընդգրկում է հասարակության սոցիալ-տնտեսական գործունեության բոլոր կողմերը: Պահանջմունքների զարգացման պլանաչափ կարգավորումը ենթադրում է պարզել իրացվելիք ապրանքների խմբերը, դրանց համեմատումը դրամական եկամուտների և խնայողությունների հետ: Սակայն, ինչպես վկայում է փորձը, աշխատավորների դրամական եկամուտները մշտապես չեն հաշվեկշռվում համապատասխան ապրանքներով, որի հետևանքով կամ առևտրական կազմակերպություններում գոյանում են ապրանքների գերնորմատիվային մնացորդներ, կամ էլ խնայողական դրամարկղներում ավելանում են բնակչության դրամական ավանդները: Հետևաբար, ինչպես նշում է հեղինակը, բնակչության ավանդների աճը ոչ միշտ կարելի է դիտել որպես բարեկեցության ցուցանիշ և պահանջմունքների հագեցվածություն: Բնակչության կազմակերպված խնայողությունների արագ աճը կարելի է դիտել որպես դրական երևույթ այն դեպքում, երբ այն կատարվում է խոշոր գնումների նպատակով:

Բնակչության ավանդների աճի պայմաններում ապրանքների գերնորմատիվային պաշարների կուտակումը բացատրվում է նաև գիտատեխնիկական հեղափոխության արագ տեմպերով: Այն արագացնում է պահանջմունքների վերակողմնորոշումը և կրճատում երկարատև օգտագործման առարկաներից օգտվելու ժամկետը: Այս կապակցությամբ արժեքավոր է հեղինակի առաջարկությունը գործող և ծագող պահանջմունքների կողմնորոշման նորմատիվների մշակման մասին: Ընդ որում նա գտնում է, որ այդ նորմատիվները պետք է ընդգրկեն ոչ միայն տնտեսական, այլև սոցիալ-ազգային, դեմոգրաֆիկ, սեռահասակային և այլ գործոններ: Այդպիսի նորմատիվների մշակումը և կիրառումը մեծ չափերով կնպաստի պլանային աշխատանքների մակարդակի բարձրացմանն ու արտադրական ռեսուրսների արդյունավետ օգտագործմանը:

Նյութական պահանջմունքների զարգացման աստիճանի ամենաընդհանրացնող և որոշիչ ցուցանիշը ազգային եկամտի ծավալն է: Հասուն սոցիալիզմի զարգացման միտումն

---

* Шахкулян Р. О. Потребности и управление их развитием, изд. «Айастан».

այն է, որ տարեցտարի կուտակման ֆոնդի համեմատությամբ ավելանում են սպառման ֆոնդի չափերը: Ազգային եկամտի սպառման ֆոնդը աշխատավորների նյութական ու կուլտուրական պահանջմունքների բավարարման հիմնական աղբյուրն է, որը բաշխվում է ըստ աշխատանքի քանակի և որակի:

Հեղինակը ցույց է տալիս այն վիթխարի աշխատանքը, որ վերջին տարիներին կատարվել է ազգային հանրապետությունների ժողովրդական տնտեսությունների զարգացման մակարդակների մերձեցման, ինչպես նաև աշխատավարձի մեծ տարբերությունների վերացման բնագավառում: Չնայած դրան, աշխատավարձի շերտավորումը պահպանվում է և կպահպանվի, որովհետև ըստ աշխատանքի բաշխումը հասարակական արտադրության զարգացման կարևորագույն պայմաններից է:

Սոցիալիզմի օրոք բնակչության ռեալ եկամուտների կազմավորման աղբյուրներից են սպառման հասարակական ֆոնդերը, որոնք ստեղծվում են հավելյալ արդյունքի հաշվին:

Որոշ տնտեսագետներ սպառման հասարակական ֆոնդերից հատկացվող միջոցները զետեղում են անհրաժեշտ արդյունքի մեջ: Մյուսները սպառման հասարակական ֆոնդերի մեջ տեսնում են բաշխման կոմունիստական սկզբունքի սաղմեր: Հեղինակը գտնում է, որ սպառման հասարակական ֆոնդերը, որպես աշխատանքային ավանդից անկախ բաշխման ձև, հանդես են գալիս ազգային եկամտի, սպառման ֆոնդի և կուտակման ֆոնդի մի մասի վերաբաշխման կարգավորիչի դերում՝ բնակչության սոցիալական խմբերի միջև խիստ նյութական տատանումներ թույլ չտալու, այդ խմբերի և սոցիալիստական հասարակության առանձին անդամների նյութական ու կուլտուրական պահանջմունքների բավարարման մերձեցման նպատակով:

Չի կարելի համաձայնել հեղինակի այն մտքի հետ, թե դրամական խնայողությունների մշտական ավելացման միտումը, որը որոշ չափով պայմանավորված է մի շարք ապրանքների անհրաժեշտ քանակի և որակի բացակայությամբ, հանգեցնում է գների բարձրացման: Իրականում մանրածախ գների որոշ բարձրացումը բացատրվում է մեծածախ և գյուղատնտեսական մթերքների գնման գների աճով, սպառման առարկաների գների հարաբերակցության կատարելագործման և պետբյուջեի ծախսերի ու եկամուտների հաշվեկշռման անհրաժեշտությամբ:

Ռ. Հ. Ծախկույանի **Պահանջմունքները և դրանց զարգացման կառավարումը** աշխատությունն ուշագրավ հետազոտություն է և ունի տեսական ու գործնական նշանակություն:

**Վ. Ա. ՊԵՏՐՈՍՅԱՆ**
**Տնտեսագիտության թեկնածու, դոցենտ**



**Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՑԱՅԼՈՅԱՆ**
**Թողարկիչ՝ Մ. Գ. ԲՌՅՆԻԿՅԱՆ**

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

*Հանձնված է շարվածքի 10.06.83 թ.: Ստորագրված է տպագրության 12.07.83 թ.: ՎՖ՝ 06904: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15632: Պատվեր՝ 1700:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.